## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

**Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։**





ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ 1972

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание







# ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԴԻՄԱՎՈՐԵԼ ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՄԵԾ ՏՈՆԸ

Մեր հայրենիքի բոլոր ժողովուրդները, սոցիալիստական երկրների աշխատավորները, ամբողջ առաջադեմ մարդկությունը նախապատրաստվում են այս տարի հանդիսավորությամբ նշելու Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության *կազմավորման* հիսնամյակը: Դա համաժողովրդական մեծ տոն է, պատմական խոշոր նշանակություն ունեցող իրադարձություն մեր բազմազգ սոցիալիստական պետության տարեգրության մեջ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը փշրեց սոցիալական ու ազգային ճնշման շղթաները: Կործանելով «ժողովուրդների բանտը», որպիսին ցարական Ռուսաստանն էր, Հոկտեմբերն ազատագրեց նրա բոլոր ազգերին ու ազգություններին, հիմք դրեց ժողովուրդների իսկական բարեկամությանն ու համագործակցությանը:

Հետևողականորեն կենսագործելով լենինյան ազգային քաղաքականությունը, սովետական պետությունն առանձնակի ուշադրություն նվիրեց մեր երկրի ազգային ծայրամասերի ժողովուրդների կարիքներին ու հոգսերին, օգնելով նրանց՝ հաղթահարելու տնտեսության ու կուլտուրայի դարավոր հետամնացությունը, ստեղծելու նոր կյանք, նոր կենցաղ: Այդ գործում նրանց եղբայրաբար օգնեց ռուս մեծ ժողովուրդը: Սովետական իշխանության առաջին իսկ տարիներին Սովետական Ռուսաստանի և ազգային հանրապետությունների միջև աստիճանաբար ստեղծվեցին ու վարգացան սերտ կապեր, ռազմա-քաղաքական, դիվանագիտական և տնտեսական բնույթի հարցերը նրանց միջև կարգավորվում էին պայմանագրային հարաբերություններով:

Սակայն կյանքը հրամայաբար պահանջում էր համախմբել ազատագրված ժողովուրդներին միասնական մեկ ընտանիքում, միավորել նրանց նյութական ռեսուրսները, ջանքերը՝ երկրի քայքայված տնտեսությունն արագ վերականգնելու, կյանքը սոցիալիստական հիմունքներով վերափոխելու համար: Սովետական հանրապետությունների աշխատավորները քաջ գիտակցում էին այդ միավորման անհրաժեշտությունը և ձգտում պետական միավորման, դիտելով այն որպես հեղափոխության նպատակների իրականացման նախապայման, նրա նվաճումների պաշտպանություն:

Ազատագրված ժողովուրդների ուժերի միավորումը, նրանց սերտ դաշինքի հաստատումը նախապատրաստված էին մեր կուսակցության տեսական ու

պրակտիկ վիթխարի գործունեությամբ: Անհաշտ պայքար մղելով մեծապետական շովինիզմի և տեղական նացիոնալիզմի դրսևորումների դեմ, կուսակցությունն իր հետևողական վիթխարի գործունեությամբ հասավ ժողովուրդների լիակատար վստահության և փաստական իրավահավասարության, համախմբեց բոլոր ազգերին ու ազգություններին լենինյան դրոշի ներքո, կռեց ու կոփեց նրանց եղբայրական բարեկամությունն ու համագործակցությունը:

Իրավահավասար ու սուվերեն սովետական հանրապետությունների կամավոր միավորումը միասնական միութենական սոցիալիստական պետության մեջ օբյեկտիվ անհրաժեշտություն էր, թելադրված այդ հանրապետությունների զարգացման ողջ ընթացքով: Այդպիսի միավորումը լիովին համապատասխանում էր ինչպես զարգացման սոցիալիստական ուղին բռնած յուրաքանչյուր առանձին ազգի քաղաքական, տնտեսական և հոգևոր շահերին, այնպես և ամբողջությամբ վերցրած՝ սովետական բոլոր ժողովուրդների, սոցիալիզմի շահերին:

Տակավին սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին Լենինը բազմիցս անդրադարձել է սովետական ազգային հանրապետությունների միավորման, միասնական պետականության ստեղծման հարցերին, ընդգծելով, որ անհրաժեշտ է ապատագրված ժողովուրդների այնպիսի դաշինք կռել, որը հիմնված լինի նրանց փոխադարձ վստահության, եղբայրական միասնության խոր գիտակցման վրա:

«Մեծ նախաձեռնություն» հոդվածում (1919 թ. հուլիս) Վ. Ի. Լենինն ընդգծել է, որ նոր կյանքի կառուցման համար աշխատավորները «...սկզբում միավորվում են մեկ սոցիալիստական պետության մեջ, հետո Սովետական Հանրապետությունների Միության մեջ» (Երկեր, հ. 29, էջ 524): Մերժելով սովետական հանրապետությունների պետական միավորման «ավտոնոմիզացիայի» ստալինյան գաղափարը, Լենինը մշակեց նոր դաշինքի, պետական միավորման սահմանադրական սկզբունքները: «Մենք ազգերի *կամավոր* միություն ենք ուզում,— գրել է նա,— այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի նկատմամբ, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Երկեր, հ. 30, էջ 368):

Լենինյան այդ դրույթները դարձան ՍՍՀՄ կազմավորման, սովետական ազգային հանրապետությունների պետական միավորման վերաբերյալ ՌԿ(բ)Կ Կենտկոմի 1922 թ. հոկտեմբերյան պլենումի որոշման հիմքը:

1922 թ. դեկտեմբերի 30-ին կայացավ սովետների համամիութենական առաջին համագումարը, որին մասնակցում էին հիմնադիր հանրապետությունների՝ ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի, Բելոռուսիայի և ԱՍՖՍՀ-ի պատվիրակները: Համագումարը քննարկեց և հաստատեց ՍՍՀՄ կազմավորման մասին Դեկլարացիան և Պայմանագիրը: Կազմվեց բազմազգ սոցիալիստական միասնական պետությունը՝ իրավահավասար և սուվերեն սովետական հանրապետությունների կամավոր միությունը, խարսխված պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների, հասարակության քաղաքական ու տնտեսական սիստեմի միասնական հիմքի, գաղափարական և կուլտուրական կյանքի ընդհանրության վրա: Դա կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի մեծագույն հաղթանակն էր, կուսակցու-



թյան, բանվոր դասակարգի, սովետական հանրապետությունների բոլոր աշխատավորների քաղաքական իմաստության մարմնավորումը:

ՍՍՀՄ կազմավորումից անցել է կես դար: Այդ ժամանակահատվածում սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, հերոսական ու փառավոր ուղի է անցել: Հզոր և ամրակուռ է դարձել սոցիալիստական բազմազգ պետությունը, բուռն զարգացել ու ծաղկել են սոցիալիստական բոլոր ազգերը: Աննասան է սովետական հասարակության բարոյաքաղաքական միասնությունը: Այդ տարիները եղել են կուսակցության կողմից լենինյան ազգային քաղաքականության՝ ժողովուրդների հավասարության և բարեկամության քաղաքականության կիրառման արգասալի տարիներ: Դա է սոցիալիզմի անկապտելի նվաճումներից մեկը:

Սովետական Միության կեսդարյա պատմությունը ՍՄԿԿ ազգային քաղաքականության կենսական ուժի և ճշմարտացիության պերճախոս հաստատումն է, քաղաքականություն, որը հնարավորություն ընձեռեց աշխարհի ամենաբազմազգ երկրներից մեկում (ուր ապրում են ավելի քան հարյուր ազգեր ու ազգություններ) հաջողությամբ լուծելու ազգային հարցը: Սոցիալիզմի հիմքի վրա մեզանում կառուցվել է աշխատավորների միասնության նոր աշխարհ, որտեղ բոլոր ժողովուրդները շաղկապված են եղբայրական անքակտելի բարեկամությամբ:

Սովետական բազմազգ սոցիալիստական պետությունը ողջ աշխարհին գործնականում ցուցադրում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների հաղթանակը: ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրության հաստատումը, սովետական ազգային հանրապետությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի բարգավաճումը, նրանց սերտ միասնությունը համոզիչ հաստատում են ազգային հարցի լուծման մարզում լենինյան ուսմունքի՝ կուսակցության քաղաքականության կենսունակությունը:

Սովետական Միության գոյության կես դարը եղել է հերոսական մաքառումների և սխրալի աշխատանքի, հոյակապ մեծագործությունների դարաշրջան, որի գլխավոր արդյունքը *հասուն սոցիալիստական հասարակարգի* կերտումն է: Վիթխարի թռիչք է կատարվել տեխնիկա-տնտեսական և կուլտուրական հետամնացությունից պատմական առաջադիմության ամենաառաջավոր բնագծերը: Սովետական Միությունը դարձել է բարձր զարգացած ինդուստրիայի, խոշոր մեքենայացված գյուղատնտեսության, առաջավոր գիտության ու կուլտուրայի երկիր: Ստեղծվել է հզոր սոցիալիստական էկոնոմիկա: Հանրային համախառն արտադրանքն ավելացել է 41 անգամ: Երկրի առաջընթացն իր արտահայտությունն է գտել տնտեսական աճի տեմպերում, արտադրական պոտենցիալի արագ մեծացման մեջ:

Աննախընթաց վերելք են ապրել կուլտուրան, արվեստն ու գրականությունը, գիտական առաջավոր միտքը: Այժմ քաղաքի աշխատավորների 75 և գյուղի՝ 50 տոկոսն ունի ութնամյա, լրիվ միջնակարգ և բարձրագույն կրթություն: Մեր երկրում է ստեղծագործում աշխարհի բոլոր գիտական կադրերի մեկ քառորդը:

Բարձրացել են մեր հայրենիքի միջազգային հեղինակությունը, նրա որոշիչ դերը աշխարհի քաղաքական կյանքում:

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը պատմական ինքնուրույն ստեղծագործության կոչեց անցյալում կեղեքված ու լլկված ժողովուրդ-

ներին: Սոցիալիզմն այդ ազգերին օժտեց քաղաքական իրավահավասարությամբ և պետականությամբ, լիովին վերացրեց անցյալից ժառանգած տնտեսական ու կուլտուրական անհավասարությունը: Քառասունից ավելի ազգություններ միայն Հոկտեմբերից հետո գիր ու գրականություն ունեցան:

Սովետական ժողովուրդների համերաշխ մեծ ընտանիքում, նրանց փոխադարձ օգնությամբ ու համագործակցությամբ անցած տարիներին միութենական 15 հանրապետություններում բուռն զարգացան արտադրաուժերը: Առանձնապես բարձր զարգացման են հասել նախկին ռուսական կայսրության ծայրամասերը, վիթխարի գործ է արվել նրանց տնտեսական և կուլտուրական մակարդակների համահարթման համար:

Սոցիալիստական ազգերի մեծ բարեկամության և համագործակցության ակնառու արգասիքն է Սովետական Հայաստանը: Ռուս մեծ ժողովրդի և սովետական բոլոր ազգերի օգնությամբ ու փոխադարձ համագործակցությամբ, Հայաստանը դարձել է ինդուստրիալ, ծաղկող սոցիալիստական հանրապետություն: Հայ ժողովուրդն իրավամբ հպարտանում է հանրային տնտեսության, գիտության ու մշակույթի բնագավառներում ձեռք բերած իր հոյակապ նվաճումներով: Սովետական ժողովուրդների համերաշխ ընտանիքում հայոց լեռնաշխարհն ապրում է իր իսկական վերածնունդը: Անցած հիսուն տարում մեր հանրապետությունում կատարվել են սոցիալ-տնտեսական և քաղաքական արմատական հեղաբեկումներ, մեր ժողովուրդը վայելում է խաղաղ աշխատանքի բերկրանքը, կառուցման և ստեղծագործական խիզախումների երջանկությունը: ՍՍՀՄ պատմական երթում իր արժանի տեղն ունի նաև հայ ժողովուրդը:

Սովետական ժողովուրդների եղբայրական դաշինքն ու համախմբվածությունը էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման ասպարեզում մեր երկրի բոլոր հաջողությունների հիմքն են, նրա ամրության և անպարտելիության գրավականը:

Հաջողությամբ ավարտելով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման ութերորդ հնգամյա պլանը, սովետական ժողովուրդը կուսակցության ղեկավարությամբ նոր, խոշոր քայլ է կատարում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական հասարակական հարաբերությունների զարգացման, երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման մարզերում:

ՍՄԿԿ XXIV համագումարը խնդիր դրեց՝ այսուհետև ևս ամրապնդել Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, հետևողականորեն վարել սոցիալիստական բոլոր ազգերի ծաղկման և նրանց աստիճանական մերձեցման լենինյան կուրսը: Համագումարը նոր ուժով ընդգծեց, որ կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ այսուհետև ևս բոլոր աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի ու շովինիզմի վերապրուկների, ազգային սահմանափակության ու սնապարծության դրսևորումների նկատմամբ անհաշտության, եղբայրական ազգերի ու ազգությունների նկատմամբ խոր հարգանքի ոգով:

Հանուն սոցիալիզմի հաղթության՝ յուրաքանչյուր սովետական ժողովուրդ իր անգնահատելի լուման է մուծել: Տարիների նրանց հերոսական աշխատանքով և հայրենանվեր սխրանքներով է կոփվել սոցիալիստական ազգերի լենինյան դաշինքը: Բարձր գնահատելով եղբայրական ժողովուրդների հիսնամ-



յա վերընթացը, Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Անցած տարիներին կուսակցության ղեկավարությամբ նոր քայլեր արվեցին յուրաքանչյուր եղբայրական սովետական հանրապետության համակողմանի զարգացման ուղղությամբ, մեր երկրի ազգերի ու ազգությունների հետագա աստիճանական մերձեցման ուղղությամբ: Այդ մերձեցումը տեղի է ունենում ազգային առանձնահատկությունները ուշադրությամբ հաշվի առնելու, սոցիալիստական ազգային կուլտուրաները զարգացնելու պայմաններում: Այդ հարցում կուսակցության քաղաքականության էությունն այն է, որ մշտապես հաշվի առնվեն թե՛ մեր ամբողջ Միության ընդհանուր շահերը և թե նրա մեջ մտնող հանրապետություններից յուրաքանչյուրի շահերը»:

ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդները, շարունակելով ընթանալ հարազատ կուսակցության վարած լենինյան կուրսով, ողջ մարդկությանն արդար հասարակարգի ստեղծման հոյակապ օրինակ են տալիս: Հիրավի, իր կեսդարյա գոյությամբ ՍՍՀՄ ապացուցեց, որ ազգերի ու ժողովուրդների ամբարած ստեղծարար ներթաքուն կարողությունները ծաղկել կարող են միայն սոցիալիզմի պայմաններում: ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևն առանձնապես ընդգծեց զարգացման այն բարձր փուլը, որին հասել են սովետական ազգերն ու ժողովուրդները: «Սոցիալիստական շինարարության տարիներին մեր երկրում առաջացավ *մարդկանց պատմական նոր ընդհանրություն՝ սովետական ժողովուրդը:* Համատեղ աշխատանքում, սոցիալիզմի համար մղված պայքարում, նրա պաշտպանության մարտերում ծնունդ առան դասակարգերի և սոցիալական խմբերի, ազգերի ու ազգությունների նոր, ներդաշնակ հարաբերություններ՝ բարեկամության ու համագործակցության հարաբերություններ: Մեր մարդիկ կոդված են մարքս-լենինյան գաղափարախոսության, կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ նպատակների ընդհանրությամբ: Սովետական բազմազգ ժողովուրդն այդ միաձույլ համախմբվածությունը ցուցադրում է իր աշխատանքով, կոմունիստական կուսակցության քաղաքականությանը միահամուռ հավանություն տալով»:

Նախապատրաստվելով ՍՍՀՄ կազմավորման հիսնամյակի մեծ տոնին, մեր հանրապետության կուսակցական, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի ուժեղացնեն մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության գործը, ավելի արդյունավետ կիրառեն գաղափարական ներգործության բոլոր միջոցները: Զարգացնել սովետական մարդկանց հոգում միասնական բազմազգ սոցիալիստական ընտանիքի զգացում, այդ ընտանիքին պատկանելու խոր գիտակցում, ասված է «Правда» թերթի առաջնորդողում, ահա ինտերնացիոնալ դաստիարակության գլխավոր նպատակը:

Խոսելով այդ մասին, Սովետական Հայաստանի 50-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Չէ՛ որ ՍՍՀՄ-ը ոչ թե սոսկ պետական կազմավորում է, այլ սովետական բոլոր ժողովուրդների կամավոր, անխախտ սոցիալիստական դաշինք, որը դարձել է նրանց միս ու արյունը, կազմում է նրանց պետական գիտակցության ամենագլխավոր, բնորոշ գիծը: Սովետական մարդիկ մտքով ու սրտով գիտեն, որ իրենց գոյությունն ամրակուռ միասնության մեջ է, միմյանց օգնելու, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ դեպի վսեմ նպատակը, դեպի կոմունիզմ համատեղ ընթանալու պատրաստակամության մեջ: Մեր երկրի եղբայր ժողովուրդները միասին

են միշտ՝ թե՛ անեղ փորձությունների տարիներին և թե տոնախմբությունների փառավոր օրերին: Նրանք կիսում են թե՛ հաղթանակների բերկրանքը և թե անհաջողությունների դառնությունը, ապրում են ընդհանուր խոհերով, ընթանում մեկ ճանապարհով»:

Հարկավոր է աշխատավորներին լայնորեն պարզաբանել լենինյան ազգային քաղաքականության էությունը, ժողովուրդների բարեկամության սկզբունքները, խոր բացահայտել, թե սովետական ժողովուրդների կյանքում, իր քաղաքական նշանակությամբ ու սոցիալ-տնտեսական հիմունքներով, ինչ նշանակություն ունեցավ ՍՍՀՄ կազմավորումը: Պրոպագանդելով Սովետական Հայաստանի մեծագույն հաջողությունները նոր կյանքի կառուցման բարդ ոլորտներում, անհրաժեշտ է համոզիչ, կոնկրետ օրինակներով ցույց տալ, որ այն սովետական բոլոր ժողովուրդների փոխօգնության ու համագործակցության արդյունքն է:

Շատ կարևոր է պարզաբանել, թե Սովետական Միության կազմավորման, ամրապնդման և զարգացման գործում ինչպիսի ավանդ են ներդրել ու ներդնում մեր երկրի *բոլոր ազգերն ու ազգությունները* և, առաջին հերթին, ռուս ժողովուրդը, որն իր հեղափոխական եռանդի, անձնվիրության, աշխատասիրության, ինտերնացիոնալիզմի շնորհիվ իրավամբ արժանացել է մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների անկեղծ հարգանքին:

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության բնագավառում մեր հանրապետության շատ կուսակցական կազմակերպություններ կուտակել են աշխատանքի որոշակի փորձ: Այդ ավնիվ նպատակին են ծառայում միութենական հանրապետությունների, քաղաքների, շրջանների, գործարանների, սովխոզների ու կոլտնտեսությունների միջև ծավալվող ավանդական սոցիալիստական մրցությունը, արտադրական ու գիտա-տեխնիկական փորձի փոխանակումը, փոխադարձ հավաքներն ու հանդիպումները և այլն:

Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքում այժմ կարևոր է՝ ընդլայնել գաղափարական գործունեության ոլորտը և բարձրացնել նրա մակարդակը, այն հարստացնելով ներգործության նոր, ավելի արդյունավետ ձևերով: Այս գործում մեծ է մեր մամուլի, ռադիո-հեռուստատեսային հաղորդումների, դասախոսական պրոպագանդայի դերը:

Հաջողությամբ եզրափակելով 1971 թվականը՝ մեր երկիրը թևակոխեց իններորդ հնգամյակի երկրորդ տարին: Սովետական ժողովուրդների համատեղ ջանքերը, նրանց ստեղծագործական եռանդն այսօր նպատակամղված են այն բանին, որպեսզի հաջողությամբ կենսագործվեն ՍՄԿԿ XXIV համագումարի հոյակապ կանխագծումները: Համաժողովրդական այդ համատեղ պայքարում, ինչ խոսք, ավելի կայուն ու ամուր կդառնան մեր հայրենիքի ազգերի ու ազգությունների բարեկամությունը, բազմազգ սոցիալիստական պետության միասնությունը:

Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ դաստիարակչական աշխատանքը օրգանապես շաղկապել պրակտիկայի հետ, ավելի բորբոքել սոցիալիստական մրցության կրակը, աշխատավորներին դաստիարակել սոցիալիստական հայրենիքին անսահման նվիրվածության, աշխատանքային մեծագործությունների համար հպարտության և լենինյան ինտերնացիոնալիզմի ոգով:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Գ. Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հայկ. ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԱՊԻՏԱԼ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԹԱՑԻԿ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

*Կոմունիզմ կառուցող սովետական հասարակության հետագա առաջընթացի, դրա նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, երկրի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման համար իններորդ հնգամյակը նոր փուլ է նշանավորում: Հնգամյակի գլխավոր խնդիրն է՝ ապահովել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելք՝ սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի ապահովմամբ, նրա արդյունավետության բարձրացմամբ, գիտա-տեխնիկական առաջադիմության ու աշխատանքի արտադրողականության աճի արագացմամբ: Այդ առումով կապիտալ շինարարության տեմպերը որոշիչ նշանակություն ունեն ողջ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, երկրի տնտեսական պոտենցիալի և ազգային եկամտի աճի, նրա պաշտպանունակության և սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման գործում:*

*Կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվների համաձայն, անհրաժեշտ է բարելավել կապիտալ շինարարությունը՝ դրա արդյունավետության բարձրացմամբ, շինարարության ժամկետների կրճատմամբ, կապիտալ շինարարության ընդհանուր ծավալում՝ շինմոնտաժային աշխատանքների համամասնության նվազմամբ: Ուստի, կապիտալ շինարարության կարևոր խնդիրն է՝ ներդրված յուրաքանչյուր ռուբլուց արտադրանքի առավելագույն աճ ստանալ:*

*Անցյալ հնգամյակում կապիտալ շինարարության մեծ ծրագիր է իրագործված Հայաստանում: Ֆինանսավորման բոլոր աղբյուրներով՝ կապիտալ շինարարության մեջ ներդրվել է 3 մլրդ 300 մլն ռուբլի, որը 1 մլրդ 200 մլն-ով կամ 59 տոկոսով ավելի է 1961—1965 թթ. ներդրվածից: Վերոհիշյալ ներդրումների արդյունավետ օգտագործման շնորհիվ 1965—1970 թթ. հանրապետությունում գործադրվել են 2 մլրդ 600 մլն-ից ավելի արժողությամբ հիմնական ֆոնդեր կամ 64 տոկոսով ավելի, քան նախորդ հնգամյակում: Շահագործման են հանձնվել 110 նոր, խոշոր պետական արդյունաբերական ձեռ-*

նարկություններ և գործող ձեռնարկությունների առանձին արտադրամասեր: Լայն թափ է ստացել բնակարանային շինարարությունը կենտրոնացած ֆոնդի հաշվին, հնգամյակի ընթացքում կառուցվել է 3,8 մլն քմ բնակելի տարածություն, որը 600 հազարով ավելի է, քան նախորդ հնգամյակում:

Մեծ ծավալով է զարգացել նաև կոմունալ շինարարությունը: Վերջին հինգ տարիներին Երևանի, Լենինականի, Կիրովականի, Էջմիածնի, Աբովյանի և ուրիշ վայրերի համար կառուցվել և շահագործման են հանձնվել նոր ջրատարներ, մեկ վայրկյանում մոտ 2000 լիտր ընդհանուր հզորությամբ, որի շնորհիվ քաղաքային բնակչության՝ շնչին ընկնող օրվա ջրօգտագործումը 192 լիտրից (1965 թ.) հասել է 253 լիտրի (1970 թ.):

Ութերորդ հնգամյակը նշանավորվեց գյուղատնտեսության ինտենսիվացման հետագա վերելքով, դրա նյութա-տեխնիկական բազայի ամրապնդմամբ: Հաջողությամբ իրագործվեց գյուղատնտեսության կապիտալ շինարարության մեծ ծրագիրը: Այդ ժամանակահատվածում կառուցվել և շահագործման են հանձնվել Ապարանի, Մանթաշի ջրամբարները, Մխչյանի ջրապոմպային կայանը և այլ օբյեկտներ: Շատ բան է արված մսի, կաթի, ձվի արտադրությունն ավելացնելու համար: Ավարտվել է Սովետաշենի թռչնաբուծական ֆաբրիկայի առաջին հերթի շինարարությունը՝ տարեկան 1000 տոննա միս արտադրելու կարողությամբ: Լրիվ թափով է ընթանում այդ ֆաբրիկայի երկրորդ հերթի, ինչպես նաև Բարձրաշենի և Սևանի թռչնաբուծական ֆաբրիկաների շինարարությունը: Բավականաչափ ընդարձակված է թռչնամսի արտադրությունը Լենինականի, Ղափանի և Սպիտակի ֆաբրիկաներում: Սովետաշենում սկսված է խոզաբուծական ֆաբրիկայի կառուցումը:

Հաջողությամբ է իրագործվել լուսավորության, առողջապահության, գիտության և կուլտուրայի օբյեկտների շինարարության ծրագիրը:

ՍՍՀՄ ժողովուրդների հետ միասին, Հայաստանի աշխատավորները բուռն ոգևորությամբ ձեռնամուխ են եղել ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած կոմունիստական շինարարության վիթխարի ծրագրի կենսագործմանը:

1971—1975 թթ. հնգամյա պլանով խոշոր միջոցառումներ են նախատեսված հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման նպատակով: Այստեղ արդյունաբերական արտադրանքի ծավալը հնգամյակի վերջում կընդարձակվի ըստ պլանի և 1970 թ. համեմատությամբ, կաճի 1,64 անգամ: Զարգացման բարձր տեմպեր են նախատեսված նաև գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի, առողջապահության, լուսավորության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի համար:

Հանրապետության տնտեսության բուռն զարգացման չափանիշներից է նոր հնգամյակի կապիտալ ներդրումների հսկայական մասշտաբը, որի ծավալը նախատեսվում է 4275,0 մլն ռուբլի կամ 43,4 տոկոսով ավելի, քան նախորդ հնգամյակում:

Կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի 71 տոկոսից ավելին կհատկացվի արդյունաբերությանը, որի արտադրանքի աճի հիմնական մասը պետք է ստացվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին:

Արդյունաբերության կապիտալ ներդրումները կօգտագործվեն արտադրության կառուցվածքի, միջճյուղային և ներճյուղային համամասնության կատարելագործման, արտադրության մասնագիտացման և կոոպերացման ընդլայնման համար:



Ավելի արագ տեմպերով են զարգանալու էլեկտրաէներգետիկան, մեքենաշինությունը, քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան: Հաշվումները ցույց են տալիս, որ, ժողովրդական տնտեսության զարգացման համապատասխան, հանրապետությունում էլեկտրաէներգիայի ընդհանուր օգտագործումը 1975 թ. կկազմի 10,5 մլրդ կվտ-ժամ, որը 1,57 անգամ գերազանցում է 1970 թ.: էներգիայի այդ պահանջը կբավարարվի գործող ջերմակայաններում նոր հզորությունների գործարկման, հիդրոկայանների կառուցման, ինչպես նաև ատոմային էլեկտրակայանի գործարկման հաշվին: Այս հնգամյակում էներգետիկայի զարգացման համար կապիտալ ներդրումների ծավալը կկազմի մոտ 480 մլն ռուբլի: Այդ միջոցները կօգտագործվեն 1 մլն 836 հազար կվտ նոր հզորություններ շահագործման հանձնելու համար, այդ թվում՝ Հրազդանի «ՊՇԷԿ»-ում՝ 800 հազար կվտ, Կիրովականի ջերմաէլեկտրակայանում՝ 50, Շամբի հիդրոէլեկտրակայանում՝ 171 և ատոմային կայանում՝ 815 հազար կվտ:

Այդ օբյեկտների շինարարությունն ընթանում է լրիվ թափով: Ավարտված են Տաթևի հիդրոկայանի շինարարական աշխատանքները, իսկ շինարարների կոլեկտիվն սկսել է Շամբի հիդրոկայանի կառուցումը: Միաձույլ կոլեկտիվ է կազմավորվել հանրապետական ատոմային էլեկտրակայանի շինարարությունում: Արդեն վեր է խոյացել մետաղյա կոնստրուկցիաների և ագրեգատների մոնտաժման ու հավաքման կառույցի համալիրը: Սկսված է ռեակտորի բաժանմունքի և ուրիշ հիմնական ծառայությունների շինարարությունն ու երկաթ-բետոնե կոնստրուկցիաների մոնտաժը:

Արդյունաբերական շինարարության հետ մեկտեղ, կառուցվում են նաև բնակելի շենքեր: Ընթացիկ տարում շահագործման կհանձնվի մոտ 5,0 հազար քմ բնակելի տարածություն:

Հնգամյակի ընթացքում կկառուցվեն 1500 կմ 35 կվ և բարձր լարման էլեկտրահաղորդման գծեր և 1 մլն 700 հազար կվտ տրանսֆորմատորային հզորություններ: Արփա—Սևան թունելի շինարարությանը հատկացվում է 25,2 մլն ռուբլի, որի աշխատանքները նախատեսվում է ավարտել 1973 թ. վերջին:

Արդյունաբերական ձեռնարկությունների և կոմունալ-կենցաղային օբյեկտների ջերմամատակարարման համար Երևանում, Կիրովականում, Հրազդանում նախատեսվում է կառուցել 20 կմ ջերմային մագիստրալ:

Գունավոր մետալուրգիայի զարգացման նպատակով հինգ տարում նախատեսվում են 313,0 մլն ռուբլի կապիտալ ներդրումներ, այդ թվում՝ 211,0 մլն-ը շինմոնտաժային աշխատանքների համար: Այդ գումարները կօգտագործվեն Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատի ընդարձակման, Զոդի ոսկու հանքավայրի կոմբինատի և Արարատի ոսկու հանույթի ֆաբրիկայի շինարարական աշխատանքներն ավարտելու համար:

Քանաքեռի ալյումինի գործարանում էլեկտրոլիտիկ կոնդենսատորների համար ֆոլգայի արտադրության կարողությունների յուրացմանը զուգընթաց, կավարտվեն արդյունաբերական ձեռնարկությունների և բնակ-կենցաղային շենքերի ու կառույցների նպատակով ալյումինե պրոֆիլային գլանվածքի նոր ցարուրքների ստեղծման աշխատանքները:

Զգալի միջոցներ են նախատեսված Ալավերդու պղնձաքիմիական և Ղա-

փանի պղնձահանքային կոմբինատների տեխնիկական զինվածության և ար-
տադրության ընդլայնման նպատակով։
Ավարտելով Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի ցեմենտի արտա-
դրության համալիրի հիմնական աշխատանքները (որը տարեկան կթողարկի
1 մլն 200 հազար տոննա ցեմենտ), հնգամյակի հետագա տարիներին հիմնա-
կան ուշադրությունը կբևեռվի քիմիական արտադրամասերի և կավահողի ար-
տադրության շինարարության աշխատանքների վրա։
Քսան մլն ռուբլուց ավելի կապիտալ ներդրումներ կարվեն հանրապետու-
թյան սև մետալուրգիայի առաջնեկի՝ Երևանի զուտ երկաթի փորձնա-արդյու-
նաբերական գործարանի և երկաթի հանքավայրի Հրազդանի հարստացուցիչ
ֆաբրիկայի շինարարության ավարտման համար։ Այդ օբյեկտների շահագոր-
ծումը հնարավորություն կընձեռի հետագայում վերամշակելու, այսպես կոչ-
ված, զուտ երկաթի ստացման տեխնոլոգիան, որը շատ կարևոր նյութ է էլեկ-
տրատեխնիկայի, մեքենաշինության և արդյունաբերության այլ ճյուղերի հա-
մար ու միաժամանակ կհանդիսանա հանրապետության ընդերքում եղած,
իրենց բաղադրությամբ յուրօրինակ երկաթի հանքաքարերի օգտագործման
սկիզբը։
Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է ավարտել Իջևանի «բենտոնի-
տի» կոմբինատի շինարարությունը՝ տարեկան մինչև 1,1 մլն տոննա հանքի
հանույթի և 700 հազար տոննա բենտոնիտի փոշու արտադրանքի հզորու-
թյամբ։ Ներկայումս կատարվում է հիմնական տեխնոլոգիական սարքավո-
րումների և օժանդակ ծառայությունների օբյեկտների մոնտաժումը։
Նոր հնգամյակում կզարգանա հանրապետության քիմիական արդյունա-
բերությունը, որի արտադրանքը կաճի 1,47 անգամ։ Նշված աճը կիրականաց-
վի ի հաշիվ գոյություն ունեցող և գործարկվող կարողությունների լրիվ օգ-
տագործման, նոր տեխնիկայի ներդրման, մի շարք ձեռնարկությունների վե-
րակառուցման։ Այդ նպատակների համար նախատեսվում են 245 մլն ռուբ-
լուց ավելի կապիտալ ներդրումներ։ Նախատեսվում է կառուցել այնպիսի նոր
օբյեկտներ, ինչպիսիք են՝ Ս. Մ. Կիրովի անվան կոմբինատի Մասիսի համա-
լիրը, Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի երկրորդ հերթը, Երե-
վանի քիմիական ռեակտիվների գործարանի սորբինային թթվի արտադրու-
թյան համալիրը, սիգարետների ֆիլտրերի համար ացետատային մանրաթելի
արտադրությունը՝ «Պոլիվինիլացետատ» և քիմիական մանրաթելի գործարան-
ներում։
Այս հնգամյակում նշանակալի չափով կավելանա հանքային պարարտա-
նյութերի թողարկումը Կիրովականի քիմիական կոմբինատում։ 1971 թ. շահա-
գործման կհանձնվի ամոնիակային սելիտրայի հատիկավորման կայանքը,
որով հնարավոր կլինի նվազեցնել կորուստները փոխադրման և օգտագործ-
ման ժամանակ։
Առաջիկայում կատարվելու են կապիտալ ներդրումների մեծ ծավալի
աշխատանքներ Ս. Մ. Կիրովի անվան կոմբինատի, ռետինատեխնիկական
իրերի, ավտոդողերի և այլ գործարանների արտադրությունների վերակառուց-
ման և ընդլայնման նպատակով։
Ինչպես նախորդ տարիներին, նոր հնգամյա պլանը նախատեսում է մեքե-
նաշինության ավելի արագ զարգացում։ Մեքենաշինության և մետաղամշակ-
ման արտադրանքի թողարկումը հանրապետությունում կավելանա 1,9 անգամ։



Ընդ որում, առաջին հերթին կզարգանան սարքաշինությունն ու ավտոմատաց-ման միջոցների արտադրությունը և այլ ճյուղեր։

Այսուհետև հանրապետության փոքր քաղաքներում ու շրջաններում կկազ-մակերպվեն մեքենաշինության գործող ձեռնարկությունների մասնաճյուղեր ու նոր գործարաններ, որոնցով հնարավոր կլինի լավ օգտագործել աշխատան-քային ռեսուրսները և ընդլայնել ձեռնարկությունների մասնագիտացումը։

Մեքենաշինության զարգացման համար հնգամյակում կատարվելու են 285 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ կամ նախորդ հնգամյակից 32 տոկո-սով ավելի։ Այդ գումարներով կկառուցվեն Լենինականի դարբնոցա-մամլիչա-յին ավտոմատների, արթիկի՝ ապակու արտադրության համար սարքեր արտա-դրող, Աբովյանի շինարարական-վերջնամշակման, նմանապես և մի քանի կարևոր և անհրաժեշտ գործարանները։ Այս ամենից բացի, նոր հնգամյա-կում հիմնավորապես կվերակառուցվեն Երևանի ավտոմոբիլի, Լենինականի միկրոէլեկտրաշարժիչների, Արտաշատի փորձա-գործիքային, Չարենցավանի «Ցենտրոլիտ», Հոկտեմբերյանի գազի սարքերի գործարանները։

Հնգամյակում զգալի աճ է նախատեսվում խոշոր էլեկտրամեքենաների, փոքր հզորության էլեկտրաշարժիչների, ուժային տրանսֆորմատորների, կենտրոնախույս պոմպերի, կոմպրեսորների, ալմաստե գործիքների, ճշգրիտ մետաղակտրիչ հաստոցների, «Երազ» ավտոմեքենաների և ուրիշ արտա-դրանքների թողարկման համար։

Անտառային և փայտամշակման արդյունաբերության զարգացման նպա-տակով նախատեսված 27,0 մլն ռուբլու կապիտալ ներդրումները կօգտագործ-վեն Կիրովականի, Հոկտեմբերյանի, Վարդենիսի և Արտաշատի կահույքի նոր ֆաբրիկաների շինարարության համար։ Հանրապետությունում կահույքի ար-դյունաբերությունը հնգամյակի վերջում տարեկան կթողարկի 41,0 մլն ռուբ-լու արտադրանք։

Գյուղատնտեսության հետագա զարգացման համար պլանավորված պե-տական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը հնգամյակում կազ-մում է 844 մլն ռուբլի (աճը նախորդ հնգամյակի համեմատ՝ 78 տոկոս)։ Ար-տադրական շինարարության համար նախատեսվում է 752,0 մլն ռուբլի կամ ընդհանուր ծավալի 89 տոկոսը։ Այդ միջոցներից 260,0 մլն կտրամադրվի ջրատնտեսական շինարարությանը։ Ծրագրված է ավարտել Արզնի—Շամիրամ ոռոգիչ սիստեմի երկրորդ հերթը, Որոտանի և Քասախի ոռոգիչ սիստեմները, Ախուրյանի աջափնյա ջրանցքը, Կառնուտի ջրամբարը, Թալինի ոռոգիչ սիս-տեմի երկրորդ հերթը և այլ օբյեկտներ։ Նոր ջրամբարներ կկառուցվեն Ազատ, Ախուրյան, Ջողեզ, Թավուշ գետերի վրա։

Պլանավորված է արտադրական շինարարության համար գյուղատնտեսու-թյան մինիստրությանը տրամադրել 400 մլն ռուբլուց ավելի, այդ թվում՝ 176 մլն շինմոնտաժային աշխատանքների համար, որը համապատասխանաբար կազմում է նախորդ հնգամյակի ծավալի 215 և 201 տոկոսը։ Այդ միջոցների զգալի մասը (117 մլն ռուբլի) կծախսվի անասնապահական կոմպլեքսների և թռչնաբուծական ֆաբրիկաների կառուցման նպատակով։

Ոչ արտադրական շինարարության նպատակների համար նախատեսվում է 93,0 մլն ռուբլի, որից 57 մլն կօգտագործվի սովխոզներում բնակարանա-յին շինարարության համար։ Կոլտնտեսությունների միջոցների հաշվին հընգ-ամյակում կապիտալ շինարարության պլանը կազմում է 180 մլն ռուբլի, այդ

թվում՝ 115 մլն շինմոնտաժային աշխատանքների համար, այսինքն՝ տարեկան միջին հաշվով 23 մլն ռուբլի. ընդ որում, նյութա-տեխնիկական մատակարարումը կատարվելու է պետական ռեսուրսներից։

Նոր հնգամյակում կծավալվի թռչնաբուծական ֆաբրիկաների շինարարությունը. շահագործման կհանձնվեն Սովետաշենի, Սևանի, Բարձրաշենի թռչնաբուծական ֆաբրիկաները։ Նախատեսվում է կառուցել խոզագիրացման վեց ֆաբրիկաներ՝ յուրաքանչյուրը 6 հազար գլխաքանակով, ինչպես նաև խոզի մսի արտադրության խոշոր կոմպլեքս՝ Թալինում։

Նախատեսվում է մի ամբողջ շարք միջոցառումներ գյուղատնտեսական հիմնարկությունների և ուսումնական հաստատությունների նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման և զարգացման համար։

Ընթացիկ հնգամյակում թեթև, սննդի և մսի-կաթի արդյունաբերությունը, բնակչության պահանջմունքները բավարարելու համար, կստանա երկու անգամ ավելի կապիտալ ներդրումներ, քան նախկին հնգամյակում։ Ծրագրված է նոր հնգամյակում թեթև արդյունաբերության արտադրանքի աճ ի հաշիվ եղած կարողությունների արդյունավետ օգտագործման, տեխնիկական վերազինման և մի շարք նոր ձեռնարկությունների կառուցման ու եղածների ընդլայնման։

Թեթև արդյունաբերության զարգացմանը 1971—1975 թթ. կտրամադրվի 101,5 մլն ռուբլի, այդ թվում՝ արտադրական նշանակություն ունեցող օբյեկտների շինարարության համար 77,0 մլն։ Կավարտվի մի շարք օբյեկտների՝ Երևանի № 1 տրիկոտաժի ֆաբրիկայի, Հոկտեմբերյանի ֆուրնիտուրային գործարանի, «Արագած» գործվածքային, Կիրովականի բամբակամանվածքային ֆաբրիկաների և այլ օբյեկտների վերակառուցումը։ 1972 թ. Երևանում կսկսվի կաշվի-գալանտերեայի ֆաբրիկայի շինարարությունը և № 1 կարի ֆաբրիկայի վերակառուցումը։

Սննդարդյունաբերությունն այս հնգամյակում կստանա 120,0 մլն ռուբլի կապիտալ ներդրումներ (ֆինանսավորման բոլոր աղբյուրներով)։

1971—1975 թթ. ծրագրված է կառուցել և շահագործման հանձնել ֆիլտրող ծխափողերի ֆաբրիկա՝ Արտաշատում, գարեջրի գործարան՝ Աբովյանում, պահածոների գործարաններ՝ Ախթալայում, Արարատում՝ յուրաքանչյուրը 50 մլն պայմանական տուփ հզորությամբ, գինու գործարաններ՝ Փարաքարում, Իջևանում և № 39 սովխոզում, հանքային ջրերի լցման գործարան Հանքավանում, տարեկան 1 մլն դալ գարեջրի և 1 մլն դալ կարողության ոչ ոգելից խմիչքների արտադրության գարեջրի գործարան Արտաշատում, հացի գործարաններ Հոկտեմբերյանում և Լենինականում, յուրաքանչյուրը օրական 45 տոննա հացաբուլկեղենի արտադրության կարողությամբ։

Հնգամյակի ընթացքում մսի և կաթի արդյունաբերությանը կհատկացվեն 55 մլն ռուբլի կապիտալ ներդրումներ, որից 50 մլն արտադրական շինարարության համար։ Պլանավորված է վերազինել պանրի արդյունաբերության տեխնիկան՝ հեռավոր շրջաններում պանրի նոր գործարաններ ստեղծելու միջոցով, ընդլայնել և կառուցել մսի կիսաֆաբրիկատների վերամշակման և երշիկեղենի նոր արտադրամասեր, ինչպես նաև անասնամորթի օբյեկտներ Կամոյում և Սիսիանում։

Նախատեսվում է ավարտել շինարարությունը և շահագործման հանձնել հերթափոխում 200 տոննա կաթի վերամշակման և 20 տոննա պաղպաղակի արտադրության կարողությամբ կաթի կոմբինատ Երևանում, պանրի գործա-



րաններ՝ Մարտունիում, Կամոյում, Արթիկում, Մուսայելյանում, Շամշադինում և Եղեգնաձորում։

Հետագայում կզարգանա հանրապետության արդյունաբերության նոր ճյուղը՝ բուժական արդյունաբերությունը։ Նախատեսված կապիտալ ներդրումները հիմնականում կօգտագործվեն Երևանի վիտամինների գործարանի շինարարության ավարտման և քիմիա-դեղագործական գործարանի դեղորայքի միջոցների արտադրության ընդլայնման նպատակով։

Նախատեսվում է ժողովրդական սպառման ապրանքների արդյունաբերության ավելի արագ աճ։ Իններորդ հնգամյակում բարձր տեմպերով կզարգանա հանրապետական և տեղական ենթակայության արդյունաբերությունը, որի հիմնական խնդիրն է՝ ժողովրդական սպառման ապրանքների, հուշանվերների և տնտեսական կենցաղային առարկաների արտադրությունը։ Միայն տեղական արդյունաբերության մինիստրության գործող ձեռնարկությունների ընդլայնման և նորերի կառուցման համար նախատեսված են 28,0 մլն ռուբլի կապիտալ ներդրումներ։

Ծրագրված է ընդլայնել և վերակառուցել հուշանվերների փորձնական գործարանը Երևանում, կենցաղային մետաղաիրերինը՝ Էջմիածնում, Երևանի հախճապակու գործարանը, հեծանվինը՝ Լենինականում, բրուտակերամիկական իրերինը՝ Արտաշատում, Կալինինոյի էմալապատ ամանեղենինը և այլ օբյեկտներ։ Նախատեսվում է կառուցել մետաղյա ամանեղենի գործարան Ջրվեժում, գործիքաշինական՝ Լուսակերտում, երաժշտական գործիքների ֆաբրիկա, կենցաղային ապակու գործարան և այլն։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան նախատեսվում է տրանսպորտի հետագա զարգացում՝ ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքներն անխափան և ժամանակին բավարարելու, բեռների և ուղևորների փոխադրումներն արագացնելու, ինչպես նաև տրանսպորտի թողունակության ու փոխադրունակության ռեզերվներ ստեղծելու համար։

1971—1975 թթ. կկառուցվեն և շահագործման կհանձնվեն ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության ավտոտրանսպորտային 16 ձեռնարկություններ՝ 3750 մեքենատեղով։ Կավարտվի Կիրովականի ավտովերանորոգման գործարանը, կսկսվի բեռնատար ավտոմեքենաների վերանորոգման գործարանի շինարարությունը Աբովյանում։

Նոր հնգամյակի ընթացքում ծրագրված է կառուցել և վերակառուցել 332 կմ ավտոմոբիլային ճանապարհ։ Այդ նախագծումների իրականացման համար հնգամյա պլանով նախատեսված են 166 մլն ռուբլի կապիտալ ներդրումներ։

Խոշոր միջոցառումներ կիրագործվեն երկաթուղային ցանցի զարգացման նպատակով։ 1972 թ. կավարտվի 34 կմ երկարությամբ Աղստաֆա—Իջևան երկաթուղու շինարարությունը։ 1971 թ. սկսվել են 64 կմ երկարություն ունեցող Իջևան—Հրազդան երկաթուղային գծի շինարարական աշխատանքները, որի նախահաշվային արժեքն է՝ 152 մլն ռուբլի։ Այս կառուցումը, անշուշտ, էական նշանակություն ունի երկրի համար։ Շարունակվում է Սևան—Շորժա—Զոդ երկաթգծի կառուցումը։ Նշված 112 կիլոմետր երկարություն ունեցող երկաթուղային ճանապարհի շինարարության ավարտը հարմարեցվում է Զոդի ոսկու հանքի կոմբինատի շինարարության ավարտին։

Օդային տրանսպորտի ցանցի զարգացման համար տրամադրվում է 3 մլն ռուբլի։ Նախատեսվում է կառուցել օդանավակայանի շենք Մարտունիում, ավարտել Օձունի օդանավակայանի շենքի շինարարությունը։ Կգործադրվեն նոր, ավելի ձեռնտու գազատուրբինային շարժիչներով ինքնաթիռներ։

1971—1975 թթ. կգործարկվեն կապի նոր միջքաղաքային գծեր, կավելանան ռադիոռելեական գծերը, կընդլայնվի հեռախոսային ցանցը և կմեծանա հեռախոսային կայանների տարողությունը։ Կապի օբյեկտների շինարարության համար նախատեսվում են 50,7 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ։

ՍՄԿԿ XXIV համագումարը մեծ ուշադրություն նվիրեց հատկապես սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման հարցերին։ Այդ իսկ նկատառումով, հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանում հատուկ տեղ են գրավում բնակարանային, կոմունալ շինարարության, ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրության ընդլայնման, առևտրի բարելավման և կենցաղային սպասարկման հարցերը։

Եթե ութերորդ հնգամյակում հանրապետությունում կառուցվել է 4818 հազար քմ ընդհանուր բնակելի տարածություն՝ ֆինանսավորման բոլոր աղբյուրներով, ապա իններորդ հնգամյակում պլանավորված է 5819 հազար քմ։

Կոմունալ շինարարության համար 1971—1975 թթ. նախատեսված պետական կապիտալ ներդրումների ծավալը կազմում է 173 մլն ռուբլի։ Ընթացիկ հնգամյակում կոմունալ շինարարության բնագավառի գլխավոր խնդիրներն են՝ բնակչության ջրամատակարարման հետագա բարելավումը, հանրապետության քաղաքների և շրջկենտրոնների կոյուղիների ընդլայնումը, մաքրիչ կառուցվածքների միջոցով կեղտաջրերի առավելագույն արտամղումը։

Առաջադրված խնդիրների լուծման համար նախատեսվում է կառուցել և 1973 թ. ավարտել՝ Ապարանի ջրատարը և նույն թվականին սկսել Արարատյան դաշտավայրի ստորերկրյա ջրերը Երևան բերելու համար ջրատարի կառուցումը, որոնց ընդհանուր հզորությունը վայրկյանում 5000 լիտր է։ Նախատեսվում է 1973 թ. ավարտել Հոկտեմբերյանի, Ալավերդու և Լենինականի, իսկ 1974-ին՝ Նոյեմբերյանի և նմանապես այլ կարևոր ջրատարների շինարարությունը։ Բացի դա, ծրագրված է 1973—1975 թթ. ջրատարներ կառուցել Ախուրյանում, Ղափանում և Արթիկում։

1975 թ. վերջում քաղաքային բնակչության մեկ շնչին ընկնող ջրի օգտագործումը կհասնի օրական 300 լիտրի, 1970 թ. 253-ի փոխարեն։

Ապրանքաշրջանառության աճի և դրա կառուցվածքի փոփոխման առումով բարելավվում է բնակչության առևտրական սպասարկումը։ Այս նպատակով կատարվող կապիտալ ներդրումների ծավալը կազմում է 62 մլն ռուբլի։

Կենցաղային սպասարկման արագ զարգացող նյութա-տեխնիկական բազան հնարավորություն է ընձեռում աշխատավորների պահանջարկը բավարարել առավել լիակատար, կրճատել պատվերների կատարման ժամկետները, ընդլայնել մատուցող ծառայությունների ոլորտը, բարձրացնել սպասարկման որակը և կուլտուրան։ Այս նպատակին հատկացվում է 46 մլն ռուբլի։

Առողջապահության բնագավառի համար նախատեսված կապիտալ ներդրումները կօգտագործվեն մասնագիտացված և բազմապրոֆիլ խոշոր հիվանդանոցների, պոլիկլինիկաների, դիսպանսերների, ծննդատների, շտապ օգնության կայանների շինարարության համար։ Հիվանդանոց-կլինիկական հիմնարկությունների ցանցի զարգացման ծրագրված պլանի իրականացման համար 1971—1975 թթ. ընթացքում նախատեսվում է ծախսել 59 մլն ռուբլի։



Իններորդ հնգամյակում ծրագրված է բազմակողմանի զարգացնել ժողովրդական կրթությունը և սոցիալիստական կուլտուրան։ Միայն պետական կապիտալ ներդրումների հաշվին հանրապետությունում կառուցվելու են դպրոցական շենքեր՝ 161 հազար աշակերտական տեղով, ութերորդ հնգամյակի 143 հազարի փոխարեն։ Բացի այդ, կոլտնտեսությունների միջոցներով կկառուցվեն ևս 33 հազար աշակերտական տեղով դպրոցական շենքեր։

Հնգամյա պլանով նախատեսված են մանկական նախադպրոցական հիմնարկությունների աճի ու ընդլայնման արագ տեմպեր։ Գործել կսկսեն նախադպրոցական հիմնարկություններ՝ 41 հազար տեղով, որոնցից պետական ներդրումների հաշվին՝ 31 հազար։ Զգալի միջոցներ են նախատեսվում պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների շինարարության նպատակով։

Մեծ գումարներ են հատկացվելու բարձրագույն և միջնակարգ մասնագիտացված ուսումնական հաստատությունների նյութա-տեխնիկական բազայի ընդարձակմանն ու բարելավմանը։

Զգալի չափով կընդլայնվի, հատկապես գյուղական վայրերում, ակումբային հիմնարկությունների ցանցը։ 1975 թ. բոլոր բնակավայրերը կապահովվեն բարեկարգ ակումբներով։ Ժողովրդատնտեսական պլանով նախատեսվում է զգալի միջոցներ կինոթատրոնների, պոլիգրաֆիական ժամանակակից ձեռնարկությունների շինարարության, ռադիոյի և հեռուստատեսության ցանցի զարգացման համար։

Այս ամենից ցայտուն երևում է, թե նոր հնգամյակում ինչպիսի թափ է առնում մեր հանրապետության կապիտալ շինարարությունը։ Ինքնին հասկանալի է, որ անհրաժեշտ կլինի ունենալ կառուցողական հզոր բազա։ Հարկավոր է շինանյութերի արտադրությունը հասցնել շինարարական կազմակերպությունների պահանջները լիակատար բավարարելու մակարդակին։

Նոր հնգամյակում շինարարության ինդուստրացման մակարդակի բարձրացումը նախատեսվում է ապահովել, առաջին հերթին, շինարարական կոնստրուկցիաների և դետալների նախապատրաստման աստիճանը բարձրացնելու, լրիվ հավաքովի շինարարության պրակտիկան ընդլայնելու միջոցով։ Շինարարության հիմնական շինանյութը կլինի հավաքովի երկաթ-բետոնը։

Ծրագրվում է կառուցել տնաշինական կոմբինատներ Աբովյանում և Էջմիածնում ու 1975 թ. սկսել տնաշինական ձեռնարկությունների շինարարություն Երևանում և Արտաշատում։

Շինարարական ինդուստրիայի զարգացման նշված ծրագրի կատարման համար տրամադրվում են 98,0 մլն ռուբլի կապիտալ ներդրումներ։

Մեր լայնատարած երկրով ծավալվել է սոցիալիստական մրցությունը՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված մեծ խնդիրները ժամկետից շուտ լուծելու համար։ Հանրապետության աշխատավորները, մտնելով այդ համաժողովրդական մրցության մեջ, պատվով կկատարեն իրենց պարտավորությունները և կհասնեն նոր հաջողությունների իններորդ հնգամյակի պլանների կատարման գործում։







Կուսակցական ուսուցման սիստեմի ունկնդիրների համար

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽԹԱՆՄԱՆ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄԸ՝ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ԵՂԱՆԱԿՆԵՐԻՑ ՄԵԿՆ Է*

Ֆ. ՎԵՍԵԼԿՈՎ

Կատարելագործելով ժողովրդական տնտեսության կառավարումը, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն ամուր վարում է այն կուրսը, որը կենտրոնական օրգանների դիրեկտիվ խնդիրները ճիշտ զուգակցում է ապրանքա-դրամային հարաբերությունների, տնտեսական լծակների օգտագործման հետ՝ արտադրության վրա ներազդելու համար։ Հաշվի առնելով այդ դրույթները, տնտեսական օրենքների առավել խորիմացությամբ և գործադրմամբ, տնտեսավարման փորձի ու մեր հասարակության զարգացման հեռանկարների ուսումնասիրմամբ միայն հնարավոր է հետևողականորեն զարգացնել սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման սիստեմը, որի կարևորագույն օղակներից մեկը արտադրության խթանումն է։

Այստեղից բխում է արտադրության տնտեսական խթանման թեորիայի հարցերի, այն փոփոխությունների այժմեականությունը, որոնք տեղի ունեցան տնտեսական ռեֆորմի տարիներին, դրա կազմակերպման ընթացքում, ինչպես նաև կուսակցության XXIV համագումարի որոշումներից բխող՝ տնտեսական խթանման սիստեմների կատարելագործման հիմնական եղանակների այժմեականությունը։

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՇԱՀԵՐԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽԹԱՆՆԵՐԸ

Արտադրության տնտեսական խթանումը սերտ կապված է արտադրության բարձրացման գործում աշխատավորներին նյութապես շահագրգռելու լենինյան սկզբունքի— սոցիալիստական տնտեսավարման կարևորագույն սկզբունքներից մեկի, օգտագործման հետ։ Նոր հասարակության կառավար-

* Տպագրվում է որոշ հապավումներով— Խմբ.։



ման պլանը մշակելիս, Վ. Ի. Լենինը մատնանշել է, որ սոցիալիզմը պետք է կառուցել «Ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ հեղափոխության ստեղծած խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա... այլ կերպ դուք չեք մոտենա կոմունիզմին, այլ կերպ դուք տասնյակ ու տասնյակ միլիոնավոր մարդկանց չեք մոտեցնի կոմունիզմին» (Երկեր, հ. 33, էջ 46—47)։

Աշխատավորների նյութական շահագրգռություն, աշխատանքի նյութական խթանում, արտադրության տնտեսական խթանում հասկացություններն ըմբռնելու համար անհրաժեշտ է բացահայտել տնտեսական շահերի էությունն ու դերը։

Հանրահայտ է Ֆ. Էնգելսի դրույթը. «Յուրաքանչյուր տվյալ հասարակության տնտեսական հարաբերությունները դրսևորվում են, ամենից առաջ, իբրև շահեր» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 18, стр. 271)։ Լենինը գրել է. շահերն են առաջ մղում ժողովուրդների կյանքը (տե՛ս Երկեր, հ. 38, էջ 99)։ Այդ նշանակում է, որ տնտեսական շահերն արտադրահարաբերությունների արտահայտություն, օբյեկտիվ ռեալություն են, վճռական դեր են կատարում արտադրության զարգացման ոլորտում, ուստի, անհրաժեշտ է ճանաչել դրանք, նկատի առնել և հմտորեն օգտագործել սոցիալիստական տնտեսության կառավարման ընթացքում։

Հարկ է զանազանել, ամբողջովին վերցրած, հասարակության, տարբեր արտադրակոլեկտիվների և առանձին աշխատողների տնտեսական շահերը։ Արտադրամիջոցների հասարակական սեփականության վրա հիմնված և մարդու կողմից մարդու շահագործումից զերծ սոցիալիստական հասարակարգում կան բոլոր հնարավորությունները հասարակական, կոլեկտիվ և անհատական շահերի զարգացման համար։

Ինչպես ցույց է տալիս իրականությունը, հասարակության, ձեռնարկությունների և աշխատողների շահերի զուգակցումն ապահովվում է ոչ ինքնաբերաբար։ Այն ձեռք է բերվում սովետական պետության և տնտեսության կառավարման նրա օրգանների տնտեսական-կազմակերպական գիտակցված գործունեության պրոցեսում՝ բազմապիսի տնտեսական ազդակների և խթանների (աշխատավարձի, պարգևների, գների, շահույթի, վարկի և այլն) սահմանմամբ ու պրակտիկ գործադրմամբ, ինչպես նաև աշխատավորների սոցիալիստական դաստիարակությամբ՝ արտադրական կարգապահության ամրապնդմամբ, առաջավոր կոլեկտիվների և աշխատավորների բարոյական խթանման տարբեր ձևերի օգտագործմամբ։ Տնտեսական նոր, առավել բարդացող խնդիրների լուծումները պահանջում են որոշակի ժամանակ, անհրաժեշտ հետազոտություններ, երբեմն նաև՝ փորձնական ստուգումներ։

Հասարակությունը, պետությունը շահագրգռված են, որպեսզի ձեռնարկություններն ունենան օպտիմալ, հաստատուն պլաններ, արտադրության մեջ արագ ներդնեն նոր տեխնիկան, թողարկեն բնակչությանն անհրաժեշտ արտադրանք, արտադրության արդյունավետության իրական աճի հաշվին ավելացնեն շահույթը։ Ձեռնարկություններն այսօր միշտ չէ, որ լուծում են այդ խնդիրները։

Ուստի, հասարակության, ձեռնարկությունների և աշխատողների շահերի զուգակցումն ապահովելու համար անհրաժեշտ է ճիշտ կազմակերպել արտադրության տնտեսական խթանումը։ Ինչպե՞ս անել այդ։

Տնտեսական շահերը ներհատուկ են մարդկանց, արտադրության մասնակիցներին, հասարակության անդամներին։ Ինչո՞վ են շահագրգռված նրանք։ Ամենից առաջ, իրենց կենսական պահանջմունքների բավարարմամբ։ Էնգելսը գրել է. «...մարդիկ, ամենից առաջ, պետք է ուտեն, խմեն, ունենան բնակարան և հագնվեն, ապա միայն ի վիճակի կլինեն զբաղվելու քաղաքականությամբ, գիտությամբ, արվեստով, կրոնով և այլն...» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 19, стр. 350)։

Սոցիալիստական հասարակության անդամների նյութական և կուլտու-

*Այսպիսով, աշխատողների նյութական խթանումը՝ աշխատանքային եկամուտների բաշխումն է, իսկ ձեռնարկությունների տնտեսական խթանումը՝ արտադրաեկամուտների և ռեսուրսների։ Բայց կյանքը բարդ է ու բազմակողմանի. դրա համար էլ, բնական է, որ այս և այն խթանների միջև խիստ սահման չկա։ Կան յուրատեսակ միջնակա ձևեր, օրինակ, նյութական խթանման ֆոնդը։ Այդ ֆոնդն առնչվում է, մի կողմից՝ ըստ աշխատանքի բաշխման հետ ու ներկայումս կազմում է աշխատավարձի մոտ 9—10 տոկոսը, մյուս կողմից՝ ձեռնարկությունների եկամուտների բաշխման, քանի որ դրա ստեղծման աղբյուրը շահույթն է։*

*Սոցիալիզմի պայմաններում աշխատանքի նկատմամբ նյութական խթանները զուգակցվում են լավագույն կոլեկտիվների ու աշխատողների խրախուսման բարոյական ձևերի հետ։ «Կատարելագործելով նյութական շահագրգռության ձևերը,— ասված է՝ ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում՝ Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ,— անհրաժեշտ է համակողմանի բարձրացնել բարոյական խթանների նշանակությունը, աշխատանքի առաջավորներին շրջապատել հարգ ու փառքով, տարածել նրանց արժեքավոր փորձը»։*

*Ժողովրդական տնտեսության մեջ կիրառվում են արտադրության առաջավորների նյութական խրախուսման այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ շքանշաններով, մեդալներով և պատվոգրերով պարգևատրելը, սոցիալիստական մրցությունում հաղթողների մեծարումը, կոմունիստական աշխատանքի հարվածայինի, իր մասնագիտության մեջ լավագույնի, արտադրության վետերանի, գործարանային պարգևի դափնեկրի պատվավոր կոչումների շնորհումը, լավագույնների անունները պատվոտախտակներում կամ գրքում գրառելը, շնորհակալություն հայտնելը և այլն։ Աշխատանքի նկատմամբ բարոյական խթանների զարգացման համար կարևոր է ավելի լայնորեն օգտագործել խրախուսման հիշյալ բոլոր ձևերը, ինչպես և յուրաքանչյուր կոլեկտիվում ստեղծել աշխատանքի համար բարենպաստ, ստեղծագործական պայմաններ։*

*Նյութական խթանների ճիշտ օգտագործումը ծառայում է նաև աշխատանքի հանդեպ բարոյական խթանների ամրապնդմանը, այսինքն՝ նյութական խթաններն օգնում են ո՛չ միայն արտադրության զարգացմանը, այլև սոցիալիստական գիտակցականության դաստիարակմանը, ընկերական փոխօգնությանը։*

*Խթանման արդյունավետությունը շատ բանով կախված է միջոցների այն գումարի մեծությունից, որը տրամադրվում է աշխատավորների նյութական խրախուսմանը։ Էնգելսը գրել է, որ «Բաշխման եղանակն էապես կախված է այն բանից, թե որքան արտադրանք է բաշխման ենթակա, և որ այդ քանակը, իհարկե, փոխվում է արտադրության առաջընթացի և հասարակության կազմակերպման համեմատ»* (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 37, стр. 370)։

*Ծանր արդյունաբերության վրա հիմնված սոցիալիստական արտադրության զարգացման բարձր տեմպերը, սպառապրանքների թողարկի արագ աճը, ժողովրդի բարօրության անշեղ բարձրացումը և աշխատավորների ռեալ աշխատավարձը պայմաններ են ստեղծում մեր երկրում այժմ գործող խթանների նոր ձևերի կիրառման և ընդլայնման, նյութական շահագրգռության ուժեղացման համար։*

*Բանվորների և ծառայողների միջին ամսական աշխատավարձը ժողովրդական տնտեսության մեջ 1965 թ. 96,5 ռուբլուց 1970 թ. բարձրացավ մինչև 122 ռուբ., այսինքն՝ 26,4 տոկոսով։ Նոր հնգամյակում այն կավելանա դարձյալ 20—22 տոկոսով։ 1966—1970 թթ. այսինքն՝ ռեֆորմի տարիներին, միջին աշխատավարձի աճի ավելի քան քառորդն արդյունաբերության մեջ ձեռք է բերվել նյութական խրախուսման ֆոնդերի հաշվին։ 1970 թ. արդյունաբերական ձեռնարկություններն այդ ֆոնդերին են հատկացրել 4 մլրդ ռուբլի։*

*Սակայն աշխատանքի արդյունավետ խթանման համար բավական չէ միայն աշխատավարձի բարձրացմանը հատկացնել պետական խոշոր ռեսուրսներ։ Անհրաժեշտ է ճիշտ օգտագործել տնտեսական խթանման մեխանիզմը,*



*հաշվի առնելով ժողովրդական տնտեսության զարգացման ժամանակակից պայմանները։*

*Հարկավոր է առավելապես զուգակցել աշխատանքի հիմնական և լրացուցիչ վարձատրման, խրախուսման անհատական և կոլեկտիվ ձևերը։ Հիմնական աշխատավարձն արդյունաբերության ոլորտում կազմում է աշխատողների վարձատրման ութսունհինգ տոկոսը, որը կարևոր դեր է խաղում արտադրության ծավալների մեծացման և արդյունավետության խթանման գործում։*

*Տարիֆային սիստեմն անմիջաբար շահագրգռում է բանվորներին աշխատանքի իրական արտադրողականության, իսկ որոշ դեպքերում նաև՝ արտադրանքի որակի և այլ ցուցանիշների բարձրացմամբ։ Որքան էլ լավ կառուցված լինի դրամական պարգևների սիստեմը, այն ցանկալի արդյունք չի տա, եթե հիմնական վարձատրումը չի արտացոլում աշխատանքի իրական ծախքերը։ Արդյունավետության աճն ապահովելու համար անհրաժեշտ է պահպանել առաջներում ձեռք բերված արտադրության զարգացման ծավալներն ու մակարդակը, իսկ դա չի կարելի անել առանց աշխատանքի հիմնական վարձատրման, որը ծախսվում է, անշուշտ, նախապես ձեռք բերված արտադրության ցուցանիշների պահպանման վրա։ Արդյունավետության աճը պահանջում է ո՛չ միայն արտադրացուցանիշների բարելավում, այլև մի շարք պայմանների ապահովում։ Օրինակ, որակավորված կադրերի պատրաստումը, բանվորական ուժի վերաբաշխումը՝ ըստ երկրի շրջանների, տնտեսության ճյուղերի, մասնագիտության։ Այդ խնդիրների լուծումը նույնպես խթանվում է տարիֆների, դրույքների և դրանց հավելումների օգնությամբ։*

*ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թթ. հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նախատեսվում է՝ «բարձրացնել տարիֆային սիստեմի դերը, ուժեղացնել աշխատավորների շահագրգռությունն աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրածախքերի իջեցման և արտադրության որակի բարելավման համար»։*

*Իններորդ հնգամյակի խնդիրներն են՝ բարձրացնել բանվորների և ծառայողների նվազագույն աշխատավարձը մինչև ամսական 70 ռուբ., միաժամանակ ավելացնել տարիֆային և միջին վարձատրության կատեգորիայի աշխատողների պաշտոնային դրույքները, բարելավել աշխատանքի վարձատրման հարաբերակցությունն ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի և աշխատողների կատեգորիաների՝ հաշվի առնելով նրանց աշխատանքի պայմաններն ու որակավորումը։ Տնտեսական առումով հեռանկարային շրջանները կադրերով պատշաճ չափով ապահովելու նպատակով նախատեսվում է այդ շրջաններում բարձրացնել աշխատողների աշխատանքի վճարումները՝ աշխատավարձի հատուկ գործակիցների միջոցով։*

*Բայց խնդիրը չի սահմանափակվում միայն տարիֆների և դրույքների ու դրանց հարաբերակցության մակարդակների փոփոխությամբ։ Նոր հնգամյակում աշխատանքի արտադրողականության աճի կարևորագույն ռեզերվը գործավարձային բանվորների շրջանում առաջավոր, տեխնիկապես հիմնավորված նորմերի ներդրման խթանների ստեղծումն է։ Առաջիկայում ժողովրդական տնտեսության մեջ լայնորեն կծավալվի մի շարք ձեռնարկությունների, մասնավորապես, Յարոսլավլի էլեկտրամեքենաշինական գործարանի փորձը, ուր հաջողությամբ կիրառվում է աշխատանքի վարձատրման սիստեմը՝ արտադրանորմերից ավելի, լարունությունից կախված արտադրվող արդյունքի համար։*

*Հասարակական արտադրության արդյունավետության աճի համակողմանի խթանման համար հարկավոր է խթանել ո՛չ միայն անհատական, այլև արտադրամասերի, միավորումների կոլեկտիվ աշխատանքի արդյունքները, ո՛չ միայն արտադրանքի մշակումը, այլև դրա հաջող իրացումը շուկայում, ո՛չ միայն կենդանի աշխատանքի արտադրողականության աճը, այլև արտադրության արդյունավետության բարձրացման այլ ուղիներ՝ նյութական ծախքերի տնտեսումը, սարքավորումների լավագույն օգտագործումը, նոր տեխնիկայի ներդրումը, արուրքի որակի բարձրացումը և այլն։ Այդ խնդիրների լուծմանն*

մար, որոնցում ֆոնդաստեղծման ցուցանիշները ժամանակավորապես վատանում են նոր տեխնիկայի ներդրման կապակցությամբ)։

Խրախուսումն առաջ զգալի չափով պայմանավորված էր արտադրանքի իրացման ցուցանիշների և շահույթի աճով՝ անցյալ տարվա համեմատ։ Այդ պայմաններում ձեռնարկությունները շահագրգռված չէին արտադրության ռեզերվների առավելաչափ և խիստ արագ մոբիլիզացմամբ, երկյուղելով այն բանից, որ աշխատանքի բարելավման մեկ տարվա թռիչքը կհանգեցնի կոլեկտիվների խրախուսման չափերի իջեցման։ Այժմ այդ թերությունը վերացվում է։ Խրախուսման ֆոնդերի չափերը որոշվում են ո՛չ միայն ցուցանիշների աճով, այլև հնգամյակի առաջադրանքների կատարմամբ։ Եթե հանրագումարի հաշվումները և տարեկան պլաններում նախատեսված արտադրության և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը գերազանցում են հնգամյա պլանի համապատասխան ցուցանիշները, ապա դրա հետ կապված ձեռնարկությունների խրախուսման ֆոնդերն ավելանում են։ Նման կարգը կխթանի կոլեկտիվներին առավել լարուն տարեկան պլաններ նախատեսելու, քանի որ աշխատողները համոզված կլինեն, որ իրենց արտադրական ամեն հաջողություն կվարձատրվի հաստատուն նորմատիվով և խրախուսման չափերը չեն պակասի։

ՍՄԿԿ XXIV համագումարում նշվեց այն հնարավորությունների ընձեռման մասին, որոնց շնորհիվ արտադրանքի նոր նմուշներ թողարկող ձեռնարկությունները բառացիորեն սլանային գիտա-տեխնիկական նորությունների ետևից և ոչ թե խույս տային դրանից, ինչպես այդ հաճախ այսօր լինում է։

Ներկայումս լուծվում է այն կոլեկտիվներին արտոնություն տալու խնդիրը, որոնք իրոք պայքարում են հանուն տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործման ժամանակակից պահանջները բավարարող արտադրանքի թողարկման։ Դրա համար էլ խրախուսվում են իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով հայրենական ու արտասահմանյան տեխնիկայի բարձր նվաճումներին համապատասխան նոր արտադրանք թողարկող ձեռնարկությունները։ Նոր արտադրանքի արտադրության տեսակարար կշռի բարձրացման դեպքում այդ ձեռնարկություններն իրավունք են ստանում լրացուցիչ հատկացումներ անել խրախուսման ֆոնդերում։

Հայտնի է, որ նոր տեխնիկայի յուրացման ֆոնդերի չափերը, որպես կանոն, չեն բավարարում գլխավոր ֆունկցիայի կատարմանը— նոր տեխնիկայի յուրացման ժամանակաշրջանում ձեռնարկությունների մեծ ծախքերի փոխհատուցմանը։ Այժմ որոշվել է բարձրացնել այդ ֆոնդերի գոյացման նորմատիվները։ Խնդիրն այն է, որ դրանք նոր տեխնիկայի հիման վրա ապահովեն ծախքերի լրիվ հատուցումը, ներառյալ առաջին տարվա (իսկ առանձին դեպքերում նաև երկրորդ տարվա) նոր արդյունքի սերիական կամ մասսայական արտադրության ավելացման ծախքերը։

Արտադրության զարգացման արդյունավետության ֆոնդի ավելացման համար բավական մեծ նշանակություն ունի նաև դրա ստեղծման փոփոխումն ու զարգացումը։ Այժմ շահույթից այդ ֆոնդին հատկացումները կատարվում են ըստ նորմատիվների, շահույթի բաժնից անմիջաբար հաշվարկներով։

«Вопросы экономики», № 11, 1971.





Ա. Ս. ԼԱԼԱՅԱՆ

Իրավաբանական գիտությունների թեկնածու

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIV համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց պետական կառավարման հարցերին։ Կուսակցության տնտեսական քաղաքականության գլխավոր հարցերից մեկն այժմ տնտեսության կառավարման սիստեմի կատարելագործումն է։

Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXIV համագումարում ասաց. «Խոսքը, ըստ էության, այն մասին է, թե մենք ինչպես ավելի լավ կազմակերպենք հասարակության գործունեությունը, տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնելու ուղղությամբ, ապահովենք առկա հնարավորությունների առավել լիակատար օգտագործումը, հարյուր հազարավոր կոլեկտիվները, տասնյակ, միլիոնավոր աշխատավորներին ավելի սերտորեն միավորենք կուսակցական քաղաքականության գլխավոր նպատակների շուրջը»։

Այստեղ խոսքը կառավարման մասին է լայն իմաստով, այսինքն՝ տնտեսական ու սոցիալական կյանքի նկատմամբ հասարակության ղեկավար մարմինների համակողմանի ներգործության, այլ ոչ թե նեղ, միայն պետական մարմինների, այդ թվում՝ ժողովրդական տնտեսության պետական մեխանիզմ կազմող մարմինների գործունեության առումով։

Լայն իմաստով կառավարումը պահանջում է առավել մեծ ուշադրություն նվիրել նրա կատարելագործմանը։ Հետևաբար, պատահական չէ, որ կուսակցության XXIV համագումարը հիմնովին քննարկեց կառավարման և, հատկապես, ժողովրդական տնտեսության կառավարման հարցերը։

Համագումարը ո՛չ միայն ընդգծեց կառավարման հետագա կատարելագործման անհրաժեշտությունը, այլև ցույց տվեց դրա իրագործման եղանակները։

Ժողովրդական տնտեսության վիթխարի մասշտաբները, ինչպես նաև գիտատեխնիկական հեղափոխությունը հրամայաբար պահանջում են կատարելագործել կառավարման կազմակերպական ձևերը, որոնք իրենց հերթին որոշիչ միջոցներ են տնտեսության արագ զարգացման համար։ Սակայն տըն-

տեսության կառավարման ձևերի ու մեթոդների կատարելագործումը պայմանավորված է անհրաժեշտ և ռեալ հնարավորություններով։ Դա վերաբերում է ինչպես մարդկային, այնպես և գործի տեխնիկական կողմին։

Այդ հնարավորությունները մարմնավորվում են աշխատավոր հոծ զանգվածների գիտելիքների և պրոֆեսիոնալ պատրաստության մակարդակի բարձրացման, կառավարման գիտության և էլեկտրոնա-հաշվողական տեխնիկայի արագ զարգացման մեջ։

Տնտեսության կառավարման կատարելագործումը, իր հերթին, պահանջում է մեծ ուշադրություն նվիրել ապարատի աշխատողների և, ընդհանրապես, աշխատավորների տնտեսագիտական կրթության բարելավմանը։ Այժմ տնտեսագիտական պատրաստությունը դառնում է տնտեսավարման գիտական մակարդակի բարձրացման, արտադրության կառավարման, ժողովրդական տնտեսության զարգացման՝ ՍՄԿԿ XXIV համագումարի նախատեսած ծրագրի իրականացման գործում աշխատավորների նախաձեռնությունը և ակտիվությունը բարձրացնելու կարևոր պայման։

Ուրեմն ներկա ժամանակաշրջանում առավել մեծ պահանջ է ներկայացվում կառավարման ապարատի աշխատողներին։ Խնդիր է դրվում հետևողականորեն ընդլայնել ու բարելավել կառավարչական կադրերի պատրաստման և վերապատրաստման սիստեմը, ներառյալ ղեկավար կադրերը։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում նշվում է. «...ժողովրդական տնտեսության պլանավորումը և կառավարումը կատարելագործելու նպատակով ապահովել տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդների լայն կիրառում, էլեկտրոնային-հաշվողական և կազմակերպական տեխնիկայի ու կապի միջոցների օգտագործում...»։ Ժամանակակից տեխնիկան հնարավորություն է ընձեռում մեքենային հանձնելու կառավարման առումով աշխատատար, ոչ ստեղծարար գործողությունների վիթխարի մասսա, մարդկանց թողնելով որոշումների կայացման, դրանց կատարման, կառավարման պրոցեսների վերահսկողության կազմակերպման ֆունկցիաները։

Արտադրության հետագա աճին զուգընթաց մեծանում են նրա պլանավորման և կառավարման դժվարությունները, որոնք զգալի չափով կախված են արտադրությունից ստացվող մշակման ենթակա ինֆորմացիայի ծավալից։ Մինչ, ինֆորմացիայի ծավալի մեծացումը պահանջում է մարդկային լրացուցիչ ռեզերվներ։ Ահա թե ինչու այժմ համապետական նշանակություն են ստանում ժողովրդական տնտեսության կառավարման այլևայլ ճյուղերում էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկայի, կառավարման և պլանավորման գիտական նոր մեթոդների ստեղծման ու կիրառության խնդիրները։ Վերջապես, տնտեսության կառավարման կատարելագործման հարցն ունի և իր քաղաքական կողմը։

Արտադրության կառավարումը, դա միլիոնավոր մարդկանց, կոլեկտիվների կառավարումն է, նրանց աշխատանքի կազմակերպումը, միաժամանակ՝ աշխատողների արտադրական և քաղաքական ակտիվության բարձրացումը։

Շատ կարևոր է նաև հարցի քաղաքական կողմը,— ասված է ՍՄԿԿ համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։— Տնտեսական մեխանիզմի անխափան աշխատանքն օգնում է լավ, գործարար իրադրություն ստեղծելու երկրում, նպաստում ժողովրդական հոծ զանգվածների աշխատանքային խանդավառությանը, խթանում է աշխատավորների նախաձեռնու-



թյան աճը, քանի որ մարդիկ տեսնում են, որ իրենց աշխատանքը պատշաճ պտուղներ է տալիս, ծառայում ժողովրդի բարօրությանը, ամբողջ հասարակության բարօրությանը։ Եվ, մյուս կողմից, ոչ մի բան այնպես չի վնասում մարդկանց, ինչպես առանձին աշխատողների չմտածված որոշումները, քյալագյոզության կամ բյուրոկրատիզմի փաստերը, որոնք հանգեցնում են աշխատանքի, հասարակական հարստության, ստեղծված արժեքների անտեղի վատնման։

Կուսակցության XXIV համագումարը հատկապես ընդգծեց տնտեսության կառավարման սիստեմի կատարելագործման հարցի քաղաքական կողմի կարևորությունը։

Կուսակցության տնտեսական քաղաքականության կենսագործման մեջ կառավարման ծառայական դերն արտահայտվում է նրանով, որ գործնականում ապահովվում են տնտեսական ոլորտի հասարակական կապերի միասնությունը, դրանց օրգանական զուգակցումը հանրային զարգացման շահերին, հասարակական արտադրության բոլոր տեղամասերի (կոլեկտիվ և անհատական) գործունեության համադասությունը։ Այլ կերպ ասած, կառավարումն է նպաստում այնպիսի ռեժիմի ստեղծմանը, որի շրջանակներում հնարավոր է լինում սոցիալիստական էկոնոմիկայի բոլոր օղակների պլանաչափ գործունեությունը, դրանց միասնական կազմակերպական համակարգում միավորումը և ամբողջությամբ հասարակությանը ծառայեցնելը։

Սոցիալիստական տնտեսության ղեկավարման բնագավառում պետական կառավարման բարելավումն ու կատարելագործումը կուսակցության գործունեության բաղկացուցիչ մասն են կազմում։ Ժողովրդական տնտեսության կառավարման արդյունավետության բարձրացման համար կարևոր նշանակություն ունի պետական կառավարման ապարատի կառուցվածքի բարելավումը, որը կոմունիստական շինարարության խնդիրների հաջող լուծման հիմնական երաշխիքներից ու պայմաններից մեկն է։ Դա անմիջականորեն վերաբերում է ինչպես տնտեսության պետական կառավարման ապարատի ավելորդ օղակների վերացմանը, նմանապես և տնտեսական կառավարման առանձին օղակների միավորմանը՝ խոշորացմամբ։

Տնտեսության պետական կառավարման մարմինների համակարգում դեռևս պահպանվում են ավելորդ և միջանկյալ օղակներ, որոնք կառավարման գործի վրա բացասական ներգործություն են ունենում և մեծացնում են վարչա-կառավարչական ծախսերը։ Պրակտիկան ցույց է տալիս, որ տնտեսական և, ընդհանրապես, մինիստրություններում և գերատեսչություններում, կառավարման գործն առավել ապակենտրոնացված է նրանց գլխավոր վարչությունների, բաժինների և այլ օղակների առկայության պատճառով։

Պետական կառավարման ապարատի և վարչա-կառավարչական անձնակազմի աճին, ինչպես նաև կառավարման հարցերի ոչ օպերատիվ լուծմանը նպաստում է նաև անհարկի հաստիքների ստեղծումը կենտրոնական և տեղական մարմինների ապարատում։ Կառավարման ապարատի ուռճացումը, ավելորդ օղակների պահպանումը և, մանավանդ, մասնագետների հաշվին կառավարչական հաստիքների ավելացումը և, ընդհանրապես, ապարատի մանրացումը բազմաթիվ միկրոօղակների, ոչ միայն ավելացնում են վարչա-կառավարչական ծախսերը, այլև որոշ դեպքերում թուլացնում են ստորին օղակների ղեկավարությունը, ձգձգում կարևոր հարցերի

լուծումը, արմատավորում թղթաբանություն և բյուրոկրատիզմ։ Ահա թե ինչու կուսակցության XXIV համագումարն առաջնահերթ համարեց ժողովրդական տնտեսության կառավարման օղակների կատարելագործումն ու պարզեցումը։

Տեխնիկական պրոգրեսի, աշխատանքի արտադրողականության ռացիոնալացման նպատակով արդյունավետ միջոցառումների կենսագործումը պահանջում է ձեռնարկությունների համակենտրոնացում, մասնագիտացում և խելացի կոոպերացում։ Այդ նշանակում է, որ արտադրության կազմակերպական կատարելագործման համար անհրաժեշտ է ավելի արագացնել մեծ արտադրամիավորումների և խոշոր կոմբինատների ստեղծումը։ «Կուտակված փորձը ցույց է տալիս,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— որ միայն խոշոր միավորումներն են ի վիճակի կենտրոնացնելու բավարար թվով որակյալ մասնագետներ, ապահովելու տեխնիկական արագ առաջընթացը, ավելի լավ ու լիովին օգտագործելու բոլոր ռեսուրսները։ Միավորումներ և կոմբինատներ ստեղծելու կուրսը պետք է վարել ավելի վճռականորեն. հեռանկարային առումով դրանք պետք է դառնան հանրային արտադրության հիմնական տնտհաշվարկային օղակները»։

Արտադրամիավորումների ստեղծումը կառավարման սիստեմի կատարելագործման կարևոր տարր է։ Խոշոր միավորումների փորձի ուսումնասիրությունից երևում է, որ այն նպաստում է գիտությունը մոտեցնելու արտադրությանը, առավել արագ արմատավորելու գիտա-տեխնիկական նվաճումները ժողովրդական տնտեսության մեջ։ Այն հնարավորություն է տալիս ավելի լրիվ չափով իրականացնելու տնտեսական ռեֆորմի պահանջները, արագացնելու գիտա-տեխնիկական պրոգրեսը, զգալիորեն բարձրացնելու արտադրության արդյունավետությունը։

Միավորումների ստեղծումն իր հերթին մեծ ազդակ է վարչա-կառավարչական ծախսերը պակասեցնելու, վերացնելու բազմաօղակայնությունը և պետական ապարատի ավելորդ օղակները, ինչպես նաև արդյունաբերության կառավարման մեջ ավելի լայն մասշտաբներով արմատավորելու կառավարման երկօղակ և եռօղակ սիստեմը։ Արտադրամիավորումների ստեղծումը, վերջին հաշվով, կարևոր միջոց է տնտեսական ղեկավարության մակարդակն ավելի բարձրացնելու համար։

ՍՍՀՄ-ում արդյունաբերության կառավարման կազմակերպման ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ներկա ժամանակաշրջանում ճյուղային համակարգի շրջանակներում առաջացել են մեծ քանակությամբ կառավարման կազմակերպական սխեմաներ։ Կառավարման երկօղակ և եռօղակ համակարգին զուգընթաց, հանդիպում ենք հինգօղակ և վեցօղակ համակարգի։ Ընդ որում, հաճախակի միևնույն ճյուղում հանդիպում են կառավարման բոլորովին տարբեր ձևեր, որոնք զանազանվում են իրենց օղակների քանակով։

Պետական արդյունաբերական միավորումները ներկայումս խոշոր մասշտաբի միասնական արտադրա-տեխնիկական կոմպլեքսային բնույթ են կրում, որոնք կոչված են իրականացնելու արդյունաբերության որոշակի ենթաճյուղի ամբողջ կամ արտադրանքի գերակշռող մասի արտադրության անմիջական ղեկավարության կազմակերպումը։

Ներկայումս ՍՍՀՄ արդյունաբերության մեջ գործում են մոտ 1400 տարբեր տիպի միավորումներ, որոնց կազմի մեջ են մտնում ավելի քան 14 հազար ձեռնարկություններ՝ 7,7 միլիոն աշխատողներով։ Կյանքը թելադրում է



արագացնել արդյունաբերական ձեռնարկությունների միավորումների ստեղծումը, մանավանդ որ այդ ձեռնարկությունների ընդհանուր թվի ավելի քան կեսը կազմում են այնպիսիք, որոնցում աշխատում են 200 բանվորից պակաս և թողարկում են արդյունաբերական արտադրանքի 11 տոկոսը։

Հայկական ՍՍՀ-ում արդյունաբերական ձեռնարկությունների մոտ 50 տոկոսն ունեն 100-ական բանվորից էլ պակաս և թողարկում են արդյունաբերական արտադրանքի 7 տոկոսը, իսկ 1000 և ավելի աշխատողներ ունեցող ձեռնարկությունները կազմում են 8 տոկոս, բայց տալիս են արդյունաբերական արտադրանքի ավելի քան 50 տոկոսը (տե՛ս «Լենինյան ուղիով», № 5, 1971, էջ 17)։

Խոշոր միավորումների ստեղծման շնորհիվ մինիստրությունները, փաստորեն, իրենց ուշադրությունը կկենտրոնացնեն ճյուղի զարգացման արմատական, սկզբունքային հարցերի վրա։ «Այդ բնույթի առաջին խնդիրը,— նշում է Ա. Ն. Կոսիգինը,— ճյուղի արտադրանքի նկատմամբ հասարակական պահանջարկի ուսումնասիրումն է։ Այդ պահանջարկի բավարարումը մինիստրության աշխատանքի գնահատման կարևորագույն չափանիշն է»։

Մինիստրություններն իրենց ուշադրությունը կկենտրոնացնեն նաև ճյուղում միասնական տեխնիկական քաղաքականության մշակման և իրականացման, արտադրության վերելքի, շինարարության արդյունավետության բարձրացման և այլ կարևոր հարցերի վրա։

Կուսակցության XXIV համագումարը դրեց մինիստրությունների և գերատեսչությունների դերի բարձրացման և ինքնուրույնության ընդլայնման հարցը։ Ուստի շատ կարևոր են այդ մարմինների իրավասությունը սահմանող ակտերի, դրանց կանոնադրությունների ճիշտ մշակումը և հաստատումը։

Տնտեսության և, ընդհանրապես մեր պետության գործունեության մյուս ոլորտների պետական կառավարման հաջող կազմակերպման և իրականացման համար կարևոր նշանակություն ունի կառավարման գիտական կազմակերպումը։ Պետական կառավարման գիտական կազմակերպմամբ հնարավոր է խոր ուսումնասիրել կուսակցության ու կառավարության առաջադրած խնդիրները և դրանց կենսագործման հնարավորությունները, ճիշտ պլանավորել արտադրությունը, պետական կառավարման ամբողջ ապարատը հարմարեցնել առաջադրված խնդիրներին։

Կառավարման գիտական կազմակերպումը պահանջում է տնտեսագետների, իրավաբանների, փիլիսոփաների, սոցիոլոգների և մյուս ոլորտների տեսաբանների գործունեության համակցում։ Կարելի է ասել, որ Միության մասշտաբով այդ բնագավառում վերջին շրջանում որոշակի գործ է կատարվում, որը հնարավորություն է տալիս անհրաժեշտ գիտական խորությամբ ուսումնասիրելու կառավարման գիտական կազմակերպման, կատարելագործման հարցերը։ Բայց, ցավոք, այդ նույնը չի կարելի ասել մեր հանրապետության մասին։ Արդյունաբերության կառավարումն ու աշխատանքի գիտական կազմակերպումը կարծես միայն տնտեսագետների, ինժեներների գործն է, կամ այդ հարցը միայն տնտեսագիտական առումով կարելի է քննարկել և լուծել։ Հանրապետությունում պետական ապարատի, ձեռնարկությունների աշխատանքի գիտական կազմակերպման և, ընդհանրապես, գիտական կառավարման հարցերի լուծման համար կարիք է զգացվում ստեղծել մի միասնական

կենտրոն, որը կարող է կոորդինացնել տարբեր մասնագետ տեսաբանների աշ-
խատանքն այդ ոլորտում։
Ասել, որ կառավարման գիտական կազմակերպման հարցերի ուսումնա-
սիրությունն ամբողջությամբ դուրս է մնացել հանրապետության իրավունքի
բնագավառի տեսաբանների ուսումնասիրությունների շրջանակներից, իհար-
կե, ճիշտ չէ։ Սակայն այստեղ նկատվում են ո՛չ միայն նրանց անջատվածու-
թյունը մյուս ոլորտների տեսաբաններից, այլև միմյանցից, այդ բնագավառին
վերաբերող կոմպլեքս թեմաների ծրագրման և մշակման բացակայությունը։
Իրավունքի գիտական տարբեր հարցերով զբաղվում են հիմնականում Երևանի
պետական համալսարանի իրավաբանական ֆակուլտետը և Հայկական ՍՍՀ
գիտությունների ակադեմիայի փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտը։
Ուստի, այդ երկու օղակները պետք է, որ իրենց ուժերը համախմբեն և հիմ-
նականում լուծեն ժամանակի հրատապ հարցերը։ Մեր հանրապետության
տնտեսության և մյուս ոլորտների պետական կառավարման ասպարեզում
դեռևս կան բազմաթիվ թերություններ և անմշակ հարցեր, որոնց լուծումը պա-
հանջում է ո՛չ միայն իրավունքի, այլև տնտեսագիտության և մյուս ոլորտների
գիտնականների սերտ համագործակցումը, համատեղ թեմատիկայի մշակում
ու պրոբլեմների լուծում։
Այժմ առավել մեծ հետաքրքրություն են ներկայացնում հանրապետության
կառավարման մարմինների համակարգի, նրա առավել պարզեցման և ճկու-
նացման հարցերի ուսումնասիրությունը, պետական ապարատի օղակների
իրավասության ճիշտ սահմանազատումը։ Պահանջվում է խոր ուսումնասիրել
տարբեր ճյուղերում տնտեսական միավորումների ստեղծման անհրաժեշտու-
թյունը, դրանց գործունեության իրավական կարգավորման, ինչպես նաև մի-
նիստրություններին և նրանց փոխհարաբերություններին վերաբերող հարցե-
րը։ Մշակման կարոտ են պետական կառավարման տարբեր ճյուղերի համա-
գործակցման և կոորդինացման հարցերը։
Կառավարումը, պետության մյուս գործունեության ձևերի համեմատու-
թյամբ, առավել շարժուն է, և դա պահանջում է, որ իրավունքի տեսաբանները
ժամանակին ուսումնասիրեն ու իրենց առաջարկությունները և կարծիքները
ներկայացնեն այդ բնագավառում նորի, առաջադեմի մասին, կատարեն գի-
տական կանխատեսումներ կառավարման հետագա կատարելագործման վերա-
բերյալ։ Այս դեպքում արդեն պահանջվում է, որ առավել լայն մասշտաբով
կոորդինացվի պետական, վարչական, ֆինանսական, աշխատանքային, հո-
ղային և իրավունքի մյուս ճյուղերի տեսաբանների գործունեությունը։
Կարևոր նշանակություն ունեն նաև տեսության և կառավարման ապա-
րատի պրակտիկ աշխատողների գործուն կապերի ստեղծումն ու զարգացումը։
Պրակտիկ աշխատողի հարուստ փորձը պետք է լուսաբանել և հաղորդել ո՛չ
միայն ապարատի աշխատողներին, այլև գիտական մշակման ենթարկել։ Հե-
տևաբար իր ամբողջ հասակով ծառանում է հանրապետությունում իրավունքի
հատուկ ամսագրի ստեղծման հարցը։ Այդ ամսագիրը, միաժամանակ, մեծ դեր
կկատարի տնտեսության իրավաբանական ծառայության որակը բարելավելու
և բնակչության շրջանում իրավունքի պրոպագանդան ուժեղացնելու համար։
Պետական կառավարման ճիշտ կազմակերպման և իրականացման առումով
կարևոր նշանակություն ունի պետական ապարատի ղեկավար աշխատողների
իրավաբանական պատրաստության հարցը։ Այսօր անհրաժեշտ է, որ երիտա-



սարդները բուհերում, համապատասխան մասնագիտություն ստանալու հետ մեկտեղ, ձեռք բերեն նաև իրավաբանական գիտելիքներ։

Գաղտնիք չէ, որ պետական կառավարման ապարատում բազմաթիվ հարցերի ոչ ճիշտ լուծումը, օրինականության խախտումը, դատարաններում քննարկվող կառավարման բնույթի բազմաթիվ գործերի առկայությունը մեծ չափով հետևանք են պետական ապարատի աշխատողների մի մասի իրավական լուրջ գիտելիքների պակասի։ Ուստի, նրանց համար իրավաբանական բնույթի կարճատև դասընթացների կազմակերպումը խիստ անհրաժեշտ է։ Հարցն անմիջական լուծում չի կարող ստանալ, եթե հատուկ ուշադրություն չդարձվի նաև պետական կառավարման ապարատում իրավաբան մասնագետի տեղի որոշմանը։

Կառավարման ինչպիսի ոլորտ էլ վերցնենք և ինչպիսի ասպեկտներով էլ քննարկենք, միևնույն է, վերջին հաշվով, այն իրականացվում է իրավունքի շրջանակներում, իրավական ձևերով։ Հետևաբար, այդ պահանջում է, որ կառավարման յուրաքանչյուր օղակի ղեկավարի ամեն մի գործողություն չհակասի իրավական նորմի պահանջին։ Ժամանակն է, որ վերջնականապես լուծվի իրավաբան մասնագետի տեղը պետական ապարատում։

Կառավարման կենտրոնական մարմիններն իրենց ամենօրյա գործունեության ընթացքում ուսումնասիրում, քննարկում և լուծում են բազմաթիվ տընտեսական և իրավական բնույթի հարցեր, որոնց ճիշտ լուծումը պահանջում է նաև իրավաբանական գիտելիքներ։

Քանի դեռ գործում են պետությունը և իրավունքը, պետական կառավարման հարցերը մնում են իրավունքի տեսաբանների ուսումնասիրության կարևոր ոլորտը։



Ռ. Ա. ԱՎԱԳՅԱՆ

# ԿՈԼԵԿՏԻՎԸ ԵՎ ԱՆՀԱՏԸ

Մեր օրերում մարդու և նրա ապագայի հարցը դարձել է գաղափարական պայքարի կենսահույզ պրոբլեմ: Անհրաժեշտ է բացահայտել, թե սոցիալական որ սիստեմն է լավագույնը, որը կարող է երջանկություն տալ մարդուն և ապահովել նրա բազմակողմանի ու ներդաշնակ զարգացումը: Անհատի հանդեպ ցուցաբերած մեծ ուշադրությունը պայմանավորված է նաև մեր հասարակության զարգացման հեռանկարներով, նոր մարդու դաստիարակման պրակտիկ խնդիրներով: «Մեծ գործը՝ կոմունիզմի կառուցումը, անկարելի է առաջ շարժել առանց *իր*՝ մարդու բազմակողմանի զարգացման»— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում, իր հաշվետու զեկուցման մեջ:

Կապիտալիզմի օրոք մարդկային արժանապատվությունը նսեմացվում է շահագործմամբ, ճնշմամբ և ռասսայական խտրականությամբ: «Մարդկային արժանապատվություն,— գրում է Վ. Ի. Լենինը,— այդպիսին կապիտալիստների աշխարհում փնտրելը զուր բան է» (Երկեր, հ. 24, էջ 15): Բուրժուական հասարակությունն աշխատավոր մարդուն զրկում է անհատականությունից և հոգեպես ամայացնում նրան: Այստեղ անհատականություն ունի նա, ով կատաղի պայքարում կարող է տեղ զավթել կապիտալի արևի տակ: Կապիտալիզմի օրոք մարդու արժեքը չափվում է կապիտալի չափով, իսկ բանվորի արժեքը նույնանում է նրա բանվորական ուժի արժեքի հետ: Եսամոլ հաշվի սառը ջրում խեղդվում են մարդու անհատական յուրահատկությունները, մեռնում նրա ձիրքերն ու ունակությունները: Ավանդական իդեալների կործանումը, հիասթափությունը բուրժուական ապրելակերպից, բիզնեսի բարոյականությունն ապականում են ոչ միայն կապիտալիստական հասարակությունն ամբողջությամբ, այլև առանձին վերցրած անհատին: Սոցիալապես արժեքազրկված անհատը դառնում է կապիտալիստական արտադրության վիթխարի մեխանիզմի անդեմ շարժափոկը: Ամենաշատը, ինչ տվել է կապիտալիզմն անհատին, եղել է նրա քաղաքական իրավունքների ձևական ճանաչումը: Դեմոկրատիայի փշրանքները ձեռք են բերվել ոչ թե բուրժուազիայի «մարդասիրության» շնորհիվ, այլ պրոլետարիատի դասակարգային անողոք պայքարի հետևանքով: Ազատությունը կապիտալիստական հասարակարգում ամենից առաջ բիզնեսի, շահագործման, մասնավոր ձեռներեցության և կեղծիքի ազատություն է, դա առանձին անհատականությունների համար ջունգլիների օրենք է: Բուրժուական «ազատ» աշխարհում առանձին անհատների ազատությունն իրականացվում է աշխատավորական հոծ մասսաների ազատազրկման հաշվին:

Կապիտալիզմի ընդերքում, բանվոր դասակարգի մեջ, զարգանում է անհատի և հասարակության փոխհարաբերության նոր ձև, որն իր հետագա զարգացումն է ստանում սոցիալիզմի օրոք: Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո սոցիալիստական հասարակության բարձրագույն արժեք հանդիսացավ անհատի նոր սոցիալական տիպը՝ աշխատավորն ու կազմակերպիչը, մտածողն ու կերտողը, կոլեկտիվիստն ու նորարարը: Սոցիալիստական անհատի ձևավորման ու զարգացման հիմք դարձան արտադրության միջոցների նկատմամբ հասարակական սեփականության հաստատումը և մարդկանց միջև սոցիալ-քաղաքական հարաբերությունների որակապես նոր սիստեմի առաջացումը: Սոցիալիստական հասարակարգում անհատի և հասարակության փոխհարաբերությունն ունի միանգամայն այլ բնույթ և զուրկ է դասակարգային անտագոնիզմից: Այստեղ անհատի տեղն ու դերը մի կողմից պայմանավորված են հասարակական հարաբերությունների բնույթով ու կառուցվածքով, մյուս կողմից՝ անհատի ունակություններով և ակտիվության աստիճանով: Աշխատավոր անհատն առաջին անգամ դուրս է գալիս անձնական անձուկ կյանքի ոլորտից և սկսում ապրել կենդանի ու լիարժեք կյանքով: Սոցիալիզմն ստեղծում է դաստիարակության և կյանքի բարենպաստ պայմաններ, որոնք լայն հնարավորություն են ընձեռում հասարակության յուրաքանչյուր անդամի ձիրքերի ու տաղանդների բացահայտման և դրանց գործնական կիրառման համար: Սոցիալիստական հասարակության անհատն առավել խորությամբ է ընկալում իր հասարակական էությունը, քան նա, ով հոգեպես դարձել է իրերի գերին: Սոցիալիստական հասարակության անհատի յուրահատկությունն այն է, որ նա, մի կողմից, կերտում է նոր, մարդկային, առաջավոր հարաբերություններ, մյուս կողմից ձերբազերծվում է հին ապրելակերպի մնացուկներից:

Անհատի սոցիալական արժեքի գլխավոր չափանիշը սոցիալիզմի օրոք նրա՝ աշխատանքի նկատմամբ ունեցած վերաբերմունքն է: Սոցիալիզմը վերացնում է աշխատանքի հին բաժանումը, արտադրության որևէ նեղ ոլորտին անհատի ցմահ զամվածությունը: Սոցիալիզմը ոչնչացնում է աշխատանքի օտարման երևույթը, որը «մասնավոր սեփականության շարժման արդյունքն է» (Մարքս), և մարդկանց վերադարձնում է աշխատանքի իսկական նշանակությունն ու իմաստը: Աշխատանքը, որը հազարամյակներ շարունակ մարդկանց համար եղել է ծանր բեռ ու հարկադրանք, սոցիալիզմի պայմաններում ձեռք է բերում միանգամայն նոր բնույթ, դառնում անհատի ստեղծագործական ուժերի ու բարոյական հատկությունների ծաղկման հիմնական բնագավառ: Աշխատանքում են հաստատվում անհատի հասարակական բնույթը, դրսևորվում նրա ունակություններն ու կարողությունները: Այստեղ անձնական ու հասարակական շահերի զուգակցումը դառնում է օբյեկտիվ օրինաչափություն: Հասարակական և անձնական շահերի ներդաշնակությունը նպաստում է հասարակական պարտքի խոր գիտակցմանը: Հասարակական շահերի ըմբռնումը, հասարակության բարեկեցության նկատմամբ հոգատարությունը սոցիալիստական հասարակարգի անձնավորության բնորոշ գծերից են:

Սոցիալիստական հասարակության և անհատի ներդաշնակության քաղաքական հիմքը դեմոկրատիայի համակողմանի զարգացումն է: Ի տարբերություն բուրժուական կեղծ, ձևական դեմոկրատիայի, սոցիալիստական դեմոկրատիան ապահովում է միլիոնավոր աշխատավորների ռեալ մասնակցությունը հասարակական կյանքի ամենատարբեր հարցերի քննարկմանը, որոշումների ընդունմանը և դրանց պրակտիկ կենսագործմանը: Սոցիալիստական դեմոկրատիան ապահովում է հասարակության բոլոր անդամների տնտեսական ու քաղաքական ազատության ռեալ երաշխիքը: Սոցիալիզմը յուրաքանչյուրին հնարավորություն է ընձեռում լինել շահագործումից, ազգային ու ռասսայական խտրականությունից լիովին ազատ: Ապագայի մարդը ձևավորվում է այսօր, կոմունիզմի համար մղվող պայքարում:

Սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում հասարակության և անհատի փոխկապակցությունն իրագործվում է կոլեկտիվի միջոցով: Աշխատանքային կոլեկտիվում կազմավորվում է մարդու կամքը, «հղկվում» բնավորությունը, ծավալվում են բանական ուժերը: Սոցիալիստական կոլեկտիվը յուրաքանչյուր անդամի օժտում է բարձր արժանապատվությամբ, նորի զգացումով, սեփական վարքագծի ինքնահսկմամբ, ինքնակատարելագործման ձգտումով, մարդուն հարգելու վարքագծով և սեփական ուժերի վստահությամբ: Ի տարբերություն բուրժուական կեղծ, շինծու կոլեկտիվիզմի, որի պայմաններում մարդն արժեքազրկված է, սոցիալիստական կոլեկտիվիզմը դառնում է հասարակական հարաբերությունների գլխավոր սկզբունքը:

Մեր գաղափարական հակառակորդները պնդում են, թե իբր կոլեկտիվը համահարթում է անհատին, զրկում նրան ազատությունից և ինքնուրույնությունից: Նման դատողությունը բացարձակ անհեթեթություն է: Սոցիալիստական յուրաքանչյուր կոլեկտիվ շահագրգռված է, որպեսզի ամեն մի աշխատող զարգացնի իր կարողությունները և ունակությունները, բարձրացնի քաղաքական ու կուլտուրական մակարդակը, ձեռք բերի մասնագիտական գիտելիքներ: Մեր կուսակցությունը պայքարում է հանուն այն բանի, «որ ուշադիր վերաբերմունք ցուցաբերվի ստեղծագործական որոնումների նկատմամբ, ձիրքերի ու տաղանդների անհատականության լիակատար բացահայտման նկատմամբ»,— ասված է կուսակցության XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ: Սոցիալիստական աշխատանքային կոլեկտիվում իր հետագա զարգացումն է ստանում մարդկանց քաղաքական գիտակցությունը, որի մակարդակից է կախված տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերի լուծումը:

Սակայն քաղաքական գիտակցության ձևավորման գործում անհատի վրա կոլեկտիվի ազդեցության ուժը աճում է այն ժամանակ, երբ կոլեկտիվի առջև դրված նպատակներն ու խնդիրները խորապես ընկալվում են և դառնում նրանց պրակտիկ գործունեության հիմքը: Քաղա-

Ա. Ս. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ

# ՄՏԱԾՈՂՈՒԹՅԱՆ ԾԱԳՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

Մարդու ծագման պրոբլեմը, թեև վաղուց է զբաղեցնում գիտական միտքը, սակայն, տակավին գիտական ավարտուն լուծում չի ստացել:

Առավել խրթինն այդ պրոբլեմում բարձրագույն նյարդային գործունեության հարցն է, նրա տեղն ու դերը մարդու նախահայրերի էվոլյուցիոն վարգացման և իր՝ մարդու ձևավորման պրոցեսում:

Թե՛ դարվինյան էվոլյուցիոն տեսության և, ընդհանրապես, օրգանական աշխարհի երևույթների ճիշտ ըմբռնումը, թե՛ այդ հարցում հակագիտական տեսակետների դեմ գաղափարական պայքարի շահերը պահանջում են այդ պրոբլեմի գիտական լուծում:

Հայտնի է, որ բուրժուական գաղափարախոսությունը մարքս-լենինյան ուսմունքի դեմ մղվող պայքարում ընտրում է կանայան ձևեր: Դրանցից է մարդկային ուղեղի ու գիտակցության ծագման պրոբլեմը: Տարօրինակ է այն փաստը, որ մարդկային ուղեղը՝ հետազոտության վենքն ու միջոցը, անհամեմատ ավելի քիչ է ուսումնասիրված:

Առաջին անգամ մարդու ուղեղի ծագման գիտական հարցադրումն առնչվում է Դարվինի էվոլյուցիոն տեսության հետ: Վերջինիս կողմնակիցն էր Ա. Ռ. Ռասելը, որը, սակայն, մարդկային ուղեղի (գիտակցության) ծագման հարցում հակադրվեց իր մեծ հայրենակցին:

Եթե, ինչպես դուք պնդում եք,— գրում է նա Դարվինին իր նամակներից մեկում,— կենդանիների տեսակները և նրանց օրգաններն առաջացել են գոյության կռվով և պետք է օժտված լինեն այդ գոյության պահպանմանն անհրաժեշտ ֆունկցիաներով, ապա որտեղի՞ց է ծագել մարդկային ուղեղը, որն օժտված է ամենաբազմազան այնպիսի հնարավորություններով, որոնք որևէ առնչություն չունեն մարդու գոյության հետ: Ա. Ռասելը, որ երկար ժամանակ ապրել է արևադարձային գոտու անգլիական տիրույթներում, իր նամակում հիշատակում է, որ բնիկներից ոմանք վերցվում են գաղութային զորամասերի երաժշտախմբերը և կարճ ժամանակում ո՛չ միայն սովորում և հիանալի կատարում են եվրոպական ստեղծագործություններ, այլև իրենք են ստեղծագործում: Ինչպե՞ս են նրանց ուղեղներում առաջացել այդպիսի կարողություններ,



հարցնում է Ռասելը, մի՞թե նրանց գոյության համար դրանք որևէ նշանակություն կարող էին ունենալ, մանավանդ, եթե հաշվի առնենք բնիկների վարգացածության ծայրահեղ ցածր մակարդակը:

Իրոք, մարդկային ուղեղը համակերպվելու և ստեղծագործելու անսահման հնարավորություններ ունի, չնայած իր կառուցվածքով ու չափերով նշանակալի փոփոխության չի ենթարկվել: Այնպես որ այժմ էլ կարելի է տալ Ռասելի՝ Դարվինին տված նույն հարցը:

Մարդաբանությունը Դարվինից հետո, անշուշտ, առաջադիմել է: Կատարվել են հայտնագործություններ, որոնք հնարավորություն են ընձեռում վերականգնելու գանգի ամբողջական պատկերը և գաղափար կազմելու մարդու նախահայրերի ուղեղի ձևի (ծալքավորման) ու ծավալի մասին: Իսկ դա խիստ կարևոր է նրանց բարձրագույն նյարդային համակարգության ու գործունեության մասին մոտավոր պատկերացում կազմելու համար:

Պրոբլեմի հետազոտմանը մեծապես նպաստում է ժամանակակից բարձր կարգի և հատկապես մարդանման կապիկների կյանքի ու խմբակային փոխհարաբերությունների, մասնավորապես գորիլաների, շիմպանզեների՝ որպես մարդուն ավելի «մոտ կանգնածների» կյանքի ուսումնասիրությունը:

Համեմատական մարդաբանության աղբյուր են նաև ժամանակակից թույլ զարգացած մարդկային ցեղերը, որոնք ապրում են (և ապրել են) արևադարձային երկրներում ու իրենց կենցաղով, շրջապատի բնական պայմանների հետ ունեցած փոխհարաբերություններով ինչ-որ չափով հիշեցնում են մարդու նախահայրերի ապրելակերպը: Այդ ցեղերի կյանքի ուսումնասիրությունն սկսվել է Դարվինից ու դարվինիզմից ոչ շատ առաջ, այսպես ասած՝ աշխարհագրական մեծ հայտնագործությունների, հայտնագործած երկրների կալվածման ու գաղութացման ժամանակաշրջանում, ինչպես նաև դրանից հետո:

Չնայած բնիկների նկատմամբ գաղութարարների անբարյացակամ վերաբերմունքին, առանձին հետազոտողներ օժտված են եղել մարդասիրական ձգտումներով: Դրանցից են Չ. Դարվինը, Ռ. Ուոլեսը, Լ. Մորգանը, ռուս ականավոր ճանապարհորդ ու ազգագրագետ Ն. Ն. Միկլուխո-Մակլայը: Վերջերս ռուսերեն հրատարակված Դուգլաս Լոկվուդի **Я— абориген** գրքում սևեռված են բնիկների կյանքը, մտածելակերպն ու հոգեբանությունը, որոնք մինչև Ավստրալիան եվրոպացիներով բնակեցվելը, գտնվել են հին քարեդարի մակարդակին: Նույն աստիճանին է Ֆիլիպինների խոր ջունգլիներում հայտնաբերված, տակավին քաղաքակիրթ մարդ չտեսած փոքրաթիվ մի ցեղ, որին անհայտ են կրակն ու կավե ամանները: Իրականում մարդկության վաղ շրջանի պատմության ուսումնասիրման այդ կենդանի օրինակները հետզհետե պակասում են:

Այսպիսով, մարդաբանական հետազոտությունները հիմնվում են մարդու նախահայրերի ոսկրա-կմախքային մնացորդների, բարձրակարգ ու մարդանման կապիկների խմբերի, ինչպես նաև թույլ զարգացած մարդկային ցեղախմբերի ուսումնասիրությունների վրա:

Դժվար, գրեթե անլուծելի է այն հարցը, թե գիտակցություն և աբստրակտ մտածելու կարողություն ձեռք բերելով, մարդը, որը, իհարկե, միանգամից չի ձերբազատվել կենդանու ուղեղին հատուկ նյարդային գործունեության ձևերից, դրանցից որոնք է յուրացրել և վերջիններս ինչ ազդեցություն են թողել նրա նյարդային պրոցեսների վրա:

Այս հարցը գիտական և գործնական մեծ հետաքրքրություն է ներկայաց-

նում: Չէ՞ որ անցման հենց այդ ժամանակաշրջանում են առաջանում նոր ձևավորվող մարդու համընդհանուր (այսինքն՝ ցեղին հատուկ) և անհատական հատկանիշները: Եվ այդ նույն օրինաչափությունների հիման վրա են մարդկային անվերջ սերունդները տրոհվում իրենց առանձնահատուկ անհատական հատկանիշների (միշտ մնալով, սակայն, այս կամ այն ձևով խմբավորված, իրենց հիմքում ունենալով նյութական բարիքների արտադրության որոշակի կոնկրետ ձև ու եղանակ), ինչպես նաև համընդհանուր այն հատկանիշների, որոնք նույնպես առաջանում են օրինաչափորեն (լեզուն, բարոյական, իրավական նորմերը) և այլն: Նոր ձևավորվող մարդու ուղեղում, մտավոր կարողություններում վուգակցվում են առանձին անհատների՝ իրենց ծնողներից ստացած բնական-ժառանգական հատկանիշներն այն անվիճելի ազդեցության հետ, որի աղբյուրը կոլեկտիվ կենսաձևն է, նոր առաջացող հասարակական հարաբերությունները, սերնդի ուսուցումը և ոչ ժառանգական այլ գործոններ:

Հնարավո՞ր է, արդյոք, նման հարցերի գիտական լուծումը: Հնարավո՞ր է թափանցել մարդու բնատուր ժառանգական ու հասարակությունից սերած ունակությունների հարաբերակցության, ինչպես նաև նրա անհատական ու համընդհանուր հատկանիշների ձևավորման գաղտնարանները:

Բացի մարդաբանության վերը հիշատակված աղբյուրներից, որոնց մինչև այժմ տված գիտական նյութերն ու դրանց կարգացումը հետագայում ևս ունենալու են առաջնակարգ նշանակություն, ժամանակակից գիտությունն այս բնագավառում ձեռք է բերում հետազոտական կանայան միջոցներ, ուր կարևոր են մարդուն տարբեր առումներով ուսումնասիրող այլ գիտությունների համագործակցությունը, դրանց հետազոտման մեթոդների ու միջոցների կիրառումը: Այդ տեսակետից առավել նշանակություն են ձեռք բերում հնագիտությունն ու ազգագրությունը, հոգեբանությունը (հատկապես հոգեբանության այն ճյուղերը, որոնք ուսումնասիրում են, նախ՝ մանուկների հոգեկան աշխարհը, մտավոր կարողություններն ու դրանց դրսևորումները, դիտելով դրանք որպես ինչ-որ չափով նախամարդու հոգեկան աշխարհը հիշեցնող մի բան, ապա նաև՝ հասարակական կամ, ավելի ճիշտ, խմբակային հոգեբանությունը), ինչպես և փիլիսոփայությունը, հատկապես մատերիայի ու գիտակցության փոխհարաբերության՝ գիտակցությունը գենետիկայի առումով ուսումնասիրող նրա բաժինը: Սակայն, բոլոր դեպքերում, պարտադիր է հետազոտողի համար մարդաբանա-գիտական նյութի իմացումը:

* * *

Դժվար չէ նկատել, որ նույնիսկ ոչ այնքան խոր ուսումնասիրելով կենդանական աշխարհին ու դրա կարգացմանը վերաբերող բնագիտական գրականությունը, նյարդա-հոգեբանական գործոնը գլխավորապես դիտվել է որպես այդ կարգացման արդյունք և արտաքին պայմաններին համակերպվելու միջոցներից մեկը (ժառանգականության փոփոխականություն և այլն): Մինչդեռ, իրականում նյարդա-հոգեբանական գործոնը ո՛չ միայն հարմարվելու և համակերպման առանձնահատուկ, երբեմն նույնիսկ արտասովոր միջոց է, այլև կենդանիների տեսակների էվոլյուցիայի և ծագումնաբանական աստիճաններով ցածից վեր բարձրանալու ամենակարևոր նախադրյալներից մեկը, եթե ոչ ամենակարևորը, մանավանդ, բարդ կառուցվածք ունեցող կենդանիների մոտ:

Որպես էվոլյուցիայի գործոն, կենդանիների նյարդա-հոգեբանական պրո-



ցեսները դրսևորվում են իրենց մյուս, համակերպվելու և հարմարվելու
ֆունկցիաների միջոցով: Եթե կենդանու ապրած միջավայրը փոփոխվում է
դանդաղ ու երկար ժամանակում, ապա, ի վերջո, դա կարող է հանգեցնել նրա
այս կամ այն օրգանի կամ ողջ օրգանիզմի փոփոխմանը: Այդ կարգի փոփո-
խությունները հիմք են դառնում տվյալ տեսակի արմատական փոփոխման,
կամ նոր տեսակի առաջացման համար: Սակայն, բոլոր դեպքերում չէ, որ
միջավայրի (լանդշաֆտի, բուսականության, մթնոլորտի ջերմության ու խո-
նավության և այլնի) փոփոխությամբ փոփոխվում են նաև միջավայրի
կենդանիների օրգաններն ու օրգանիզմը: Դրանք երբեմն հեռանում են այդ
միջավայրից, երբեմն ոչնչանում, չկարողանալով դիմանալ նոր պայմաննե-
րին: Բայց եթե նրանք, այնուամենայնիվ, մնում են նույն պայմաններում և
շարունակում ապրել ու կարգանալ, ապա, նշանակում է, որ օժտված են այն-
պիսի հարմարանքով, որը պայմանավորում է կենդանու՝ փոփոխված միջա-
վայրին հարմարվելն առանց նրա որևէ օրգանի կամ օրգանիզմի մորֆոլոգիա-
կան փոփոխությունների: Նյարդա-հոգեբանական գործոնը հենց այդպիսի,
կարելի է ասել, ունիվերսալ հարմարանք է: Բանկդական, իսկ բարձրակարգ
կենդանիների մոտ նաև պայմանական-ռեֆլեքսային նյարդային գործունեու-
թյան միջոցով է, որ «մշակվում են» որոշակի վերաբերմունք ու վարքագիծ՝
փոփոխված միջավայրում համակերպվելու և գոյությունը պահպանելու համար:
Միաժամանակ, նյարդա-հոգեբանական պրոցեսների միջոցով է ամենաար-
դյունավետ վարքագիծն ամրանում, դառնում մշտական, անցնում նոր սե-
րունդներին (նաև վարժեցման միջոցով) և, վերջապես, վերածվում հետագա
էվոլյուցիոն փոփոխությունների կարևոր գործոնի:

Այսպիսով, նյարդա-հոգեբանական պրոցեսների միջոցով կենդանին կա-
րողանում է համեմատաբար ճկուն, այսպես ասած, սահուն անցնել մի վիճա-
կից մյուսին՝ առանց մորֆոլոգիական փոփոխությունների: Ահա կենդանու
նյարդա-հոգեբանական կողմի և նրա ողջ օրգանիզմի այս կարգի փոխհարա-
բերությունն է, որն իր կանայան ձևերով ու բարդության տարբեր աստիճան-
ներով դրսևորվում է կենդանիների կարգացման տարբեր մակարդակներում:

Տեսական այս պնդումները կարելի է հաստատել կենդանական աշխարհից
վերցրած օրինակներով, որոնցից պարզ կերևա, որ *ուր և որ չափով տվյալ
տեսակի գոյության ու բազմացման համար ֆիզիկական ու ֆիզիոլոգիական
առանձնահատկությունները* (ուժը, ճկունությունը, վարքի շարժունությունը
և այլն) *անբավարար են, այնտեղ և այնքանով նրանց գոյության փաստը
պայմանավորված է նյարդա-հոգեբանական առանձնահատկություններով:* Ընդ
որում, այդ կարգի (նյարդա-հոգեբանական գործոնի միջոցով) հարմարվա-
ծությունը երբեմն կարմանալի ու արտառոց ձևերով է դրսևորվում:

Մեղուների մասին արդեն շատ ու կարմանալի փաստեր են հայտնի, բայց
ահա մի քանի տեղեկություն ևս, որոնք վկայում են նրանց կյանքի ու շրջա-
պատի հետ ունեցած փոխհարաբերությունների ընթացքում նյարդա-հոգեբա-
նական գործոնի, առաջին հայացքից նույնիսկ անհավատալի թվացող, մեծ
դերը: Պարզվում է, որ հետախույզ մեղուներն իրենց բերած նեկտարի որակի ու
գտնված տեղի մասին բանվոր մեղուներին հայտնում են որոշակի ակտիվու-
թյուն, ուղղություն ու ձև ունեցող... պարի միջոցով. որքան ջանասիրությամբ
է պարում հետախույզը, այնքան լավն ու առատ է նեկտարը. պարի ուղղու-

թյունը ցույց է տալիս նեկտարի գտնված տեղը: Բայց դա ամենակարմանալին չէ: Պարելու ընթացքում մեղուն արձակում է նաև որոշակի ակուստիկ ազդանշաններ. դրանք մոտորով հեծանվի տկտկոցի են նման: Պարզվում է, որ ազդանշանների տևողությունը մատնանշում է նեկտարի տեղի ճանապարհի երկարությունը: Այսպես, 0,4 վայրկյան տևող ազդանշանները հավասար են 200 մետրի: Պարզվում է նաև, որ բանվոր մեղուները հետախույզի պարելուց հետո նրանից «պահանջում են» մի քիչ նեկտար, վայրկենապես համտես անելով ու հիշելով նեկտարի համն ու հոտը, բանվոր մեղուները ցույց տված ուղղությամբ գնալով, առանց դժվարության կարողանում են գտնել այն (տե՛ս И. Б. Литилоцкий. Беседы о бионике, М., 1968):

Պակաս բարդ ու «ինտելեկտուալ» հագեցված չեն նաև մրջյունների վարքն ու փոխհարաբերությունները միմյանց ու միջավայրի պայմանների հետ (տե՛ս Н. Халифман, Муравьи, 1963, ինչպես նաև Реми Шовен, От пчелы до гориллы, М. 1965, և այլն):

Այս կարգի հարմարվածությունը երբեմն այնքան հիմնավոր, այնքան լիակատար ու սպառիչ է «հաշվի առնում» արտաքին պայմանները, նրանց փոփոխությունները, որ տվյալ տեսակն իր գոյությունը պահպանում է շատ երկար ժամանակ, երբեմն տասնյակ միլիոնավոր տարիներ, փաստորեն չենթարկվելով որևէ շատ թե քիչ նշանակալի փոփոխության: Այսպես, սաթի մի կտորի մեջ հայտնաբերվել է շեկ անտառային մի մրջյուն, որը պատահաբար կպել ու ծածկվել է խեժով և, քարանալով նրա մեջ, մնացել այնտեղ 48... միլիոն տարի: Համեմատելով այդ մրջյունի կառուցվածքը այժմյան անտառային մրջյունի հետ, գիտնականները չեն հայտնաբերել ոչ մի ակնառու տարբերություն: Նման կամ ավելի «երկարակեցության» օրինակ են տալիս նաև մեղուները, թերմիտները և այլ միջատներ: Այդպիսի հարմարվածության ամենավճռական նախադրյալը թվարկված միջատների բնազդական նյարդային գործունեության միջոցով միջավայրին լավագույն կերպով հարմարվելն է, որի շնորհիվ նրանք գրեթե լիովին ձերբազատվել են մորֆոլոգիական որևէ ակնառու փոփոխություն կրելու անհրաժեշտությունից:

Նշած առանձնահատկությունը նոր լույս է սփռում էվոլյուցիայի ըմբռնման վրա: Ստացվում է այնպես, որ բուն էվոլյուցիան, այսինքն՝ տեսակների փոփոխությունը միակ և ինքնանպատակ պրոցես չէ: Ամեն մի տեսակը, կենդանի բոլոր էակները, եթե կարելի է այսպես արտահայտվել, ձգտում են ո՛չ թե անպայման փոփոխվել, այլ, ընդհակառակը, որքան կարելի է երկար պահպանել իրենց գոյության, ապա նաև սեփական կառուցվածքի ձևն ու բնույթը, և դրանք, իրոք, մնում են այնքան ժամանակ, որքան հնարավոր է: Ինչ վերաբերում է էվոլյուցիային, ապա այն նորից նույն խնդրի լուծման միջոց է, այսինքն՝ պահպանում է գոյություն ունեցող կենդանի ձևերը, թեկուզ և փոխված:

Բարձր կարգի և, հատկապես, մարդանման կապիկների կյանքում և ամենօրյա վարքագծում առավել ակնառու է նյարդա-հոգեբանական գործոնի դերը, քանի որ այստեղ խոսքը վերաբերում է ո՛չ միայն նրանց ժառանգական-բնազդային գործողություններին, ինչպես միջատների ու շատ այլ կենդանիների մոտ է, այլ չնախատեսած վիճակների լուծումներին:

Ն. Ն. Լադիգինա-Կոտսը, որն իր կյանքի բազմաթիվ տարիներ նվիրել է մարդանման կապիկների, հատկապես շիմպանզեի ուսումնասիրությանը, գըտնում է, որ նրանց կյանքում ու գործունեության մեջ մեծ տեղ են գրավում այնպիսի խնդիրներ, որոնք ստիպում են կենդանուն իր բնազդական կարողությունների մեջ «չնախատեսած» վճիռներ կայացնել (հատկապես բուն կառուցելիս): Գիտնականը պնդում է, որ կապիկներն օժտված են առարկաների մասին մոտ անցյալում ձեռք բերած տեղեկությունները պատկերացման ձևով պահպանելու կարողությամբ, դրանց հիման վրա որոշակի նպատակահարմար գործունեություն ծավալելու ունակությամբ: Դրանում կարելի է համոզվել, երբ դիտում ենք, թե ինչպես կապիկն արկղներից հենարան է պատրաստում, կամ ծայրերին անցք ունեցող փայտի կտորներից երկար ձող, որպեսզի բարձր տեղից հանի իր համար շատ ցանկալի ուտելիքը:

Ս. Ի. Ուսպենսկին իր *Կապիկների մարդացման կենսաբանական մի քանի նախադրյալների մասին* հոդվածում նշում է, որ մարդու նախահայրերը (որոնք հավաքական ձևով անվանվում են հոմինիդներ) զարգացման որոշակի բարձր աստիճանում ձեռք են բերել իրենց գործողությունների ամենամոտակա հետևանքները գիտակցելու կարողություն (տե՛ս «У истоков человечества» МГУ, 1964, стр. 39—40):

Եթե մարդանման կապիկներին (այդ նշանակում է նաև հոմինիդներին, քանի որ նրանք, անկասկած, բարձր էին այժմյան մարդանման կապիկներից) դիտենք իրենց գործունեության տեսանկյունից, ապա, դատելով հոմինիդների բրածո մնացորդների հետ հայտնաբերված քարե ու մեծ կենդանիների ոսկրերից պատրաստած պրիմիտիվ գործիքներից, պարզ կդառնա, թե ինչքան կարևոր նշանակություն է ունեցել նրանց համար բարձրագույն նյարդային գործունեությունը: Պարզվում է, որ հոմինիդներն ունակ են եղել ո՛չ միայն գիտակցելու իրենց գործունեության մոտակա հետևանքները, այլև առհասարակ նպատակահարմար այնպիսի գործունեության, որն ունեցել է որոշակի հաջողությամբ կատարվող բաղկացուցիչ մասեր: (Այդ տեսակետից հետաքրքրական է Г. Ф. Хрустов. Становление и высший рубеж орудийной деятельности антропоидов, М., изд. «Наука», 1964): Մարդաբանական գրականության մեջ այն հայտնի է որպես նախաաշխատանքային առարկայական-գործիքային գործունեություն: Դեռևս չլինելով աշխատանք, այդ գործունեությունն իր մեջ պարունակում է աշխատանքի վերածվելու կարևորագույն նախադրյալները. նախ՝ այն, որ այդ գործունեության կերպը, նրա բաղկացուցիչ մասերի հաջորդականության պահպանումը պայմանավորված էին ո՛չ թե բնազդով, այլ կենդանու՝ *սեփական փորձով* (ըստ Ն. Ն. Լադիգինա-Կոտսի), այդ փորձի վերամշակվածությամբ, կենդանու հիշողությամբ, որի շնորհիվ նա կարողանում է վերարտադրել ընկալածը, վերջին հաշվով՝ նյարդա-հոգեբանական գործունեությամբ: Այստեղ, փաստորեն, ավելի ցածր մակարդակով և որակապես այլ վիճակում տեղի է ունեցել համարյա այն, ինչ մարդու ամենօրյա կյանքի ընթացքում կատարվում է աշխատանքի և գիտակցության միջև՝ որպես նրանց փոխհարաբերության արդյունք:

Այսպիսով, դեռ գիտակցության ծագումից շատ առաջ, մարդու նախահայրերի ուղեղում, նրանց առարկայական-գործիքային գործունեության հիման վրա և, որպես այդ գործունեության կարևորագույն նախադրյալ, ձևավորվել է նյարդա-հոգեբանական գործողության բարդ սիստեմ, որն իր մեջ, բացի բնազդական ու պայմանական-ռեֆլեքսային ձևերից, պարունակել է նաև սեփական վարմունքի մոտակա հետևանքներն ու առարկաների ակնհայտ հատկա-

նիշները (ջրի թրջող, քարի ցավ պատճառող, քամու չորացնող, արևի տաքացնող և այլն) գիտակցելու կարողություն: Իր կատարած դերով նյարդա-հոգեբանական գործունեության այդ սիստեմը եղել է ո՛չ միայն առարկայական-գործիքային գործունեության նախադրյալ, այլև բուն գիտակցության ծագման կարևորագույն պայմաններից մեկը:

Այլ կերպ ասած, մարդկային գիտակցությունը դատարկ տեղը չի ծագել՝ անսպասելի ու պատահաբար: Որպես ուղեղի ֆունկցիա, այն, ինչպես տեսնում ենք, ունեցել է երկարատև նախապատմություն, որի կարգացման ամենաբարձր մակարդակը՝ դա հոմինիդների նյարդային գործունեությունն է:

Բարձրագույն այն կենդանիները, որոնք այժմ համարվում են մարդու նախահայրեր (հոմինիդներ), վաղ ժամանակից սկսած, ավելի ու ավելի մեծ չափով պայմանավորվել են ո՛չ թե միջավայրի որոշակի հանգամանքներով ու կենդանու, նրա բնազդի մեջ արմատավորված որոշակի վարվելակերպով, այլ ինքնագործունեությամբ, անսպասելի, ժառանգաբար իրեն անցնող հատկանիշների մեջ «չնախատեսված» հանգամանքների դեպքում սեփական նախաձեռնությունն ու որևէ լուծում գտնելու կարողությունը հակադրելով: Զարգացման այդ առանձնահատկությունն է, որ հեռավոր անցյալում, դեռևս հոմինիդների նախահայրերին ինչ-որ չափով խոտորելով, այսպես ասած, սովորական, «նորմալ» էվոլյուցիայի ուղուց, այնուհետև ավելի ու ավելի է մեծացրել ճեղքը, միաժամանակ մինչև որոշ դարաշրջան վերծ պահելով նրանց մորֆոլոգիական որևէ զգալի փոփոխություն կրելու անհրաժեշտությունից:

Սակայն, կարգացման հենց այս նույն առանձնահատկության հետևանքով է, որ, ի վերջո, պիտի վրա հասներ մի խոր ճգնաժամի դարաշրջան, ճգնաժամ՝ կենդանու կառուցվածքի, նրա օրգանների, հատկապես ուղեղի բնատուր կարողությունների և աստիճանաբար բարդացող ու բազմացող ֆունկցիաների (գործունեության նորանոր ձևեր ստեղծելու անհրաժեշտության) ոլորտում: Մյուս կողմից՝ այդ ճգնաժամը հոմինիդների կյանքում ամենածանրը և դժվարհաղթահարելին պիտի լիներ նաև այն պատճառով, որ նրանց գործիքա-առարկայական գործունեությունը, որն աստիճանաբար իրենց գոյության միակ կամ ամենագլխավոր աղբյուրն էր, ինչպես նաև դրան ուղեկցող և այդ գործունեության նախադրյալ հանդիսացող նյարդա-հոգեբանական պրոցեսները, թեկուզ և գիտակցելու կարողության հետ մեկտեղ, նույնպես անբավարար էին դառնում, հնարավորությունների տեսակետից՝ սահմանափակ:

Շրջապատի իրադրության մասին պայմանական ռեֆլեքսների միջոցով ստացած տեղեկությունները (քանի որ ռեֆլեքս առաջացնող առարկան կամ հանգամանքներն անպայման առկա պիտի լինեին) այլևս չէին կարող բավարար չափով նպաստել գործիքա-առարկայական գործունեության կարգացմանը:

Անհրաժեշտ էին այնպիսի տեղեկություններ, որոնք պահպանվեին հիշողության մեջ և վերարտադրվեին նաև այդ տեղեկությունների աղբյուր հանդիսացող առարկաների բացակայությամբ: Միայն այդ դեպքում կարելի կլիներ *գործելակերպը նախօրոք ընտրել բազմաթիվ հնարավորներից*, որը և ավելի հուսալի կդարձներ հոմինիդների գոյությունը: Այդպիսիք կարող էին լինել միայն գիտակցված տեղեկությունները և, պարզ է, որ նյարդային գործունեության այդ կերպը աստիճանաբար պետք է գերիշխող դառնար, եթե, իհարկե, «դեմ չառներ» ուղեղի հնարավորություններին: Սակայն այդ հնարավորությունները, ինչպես ասվեց, սահմանափակ էին, քանի որ հոմինիդների *ուղեղը*



*ծագել ու ձևավորվել էր ոչ այդ կարգի ֆունկցիաների համար*, սպառել էր իր «հավելյալ հնարավորությունները» (ըստ Ա. Ն. Սևերցովի) ու գերլարվել: Այդպիսի ճգնաժամը կարող էր վերանալ միայն երկու ձևով. կա՛մ կենդանիների ծագումնաբանական ծառի այն ճյուղի աստիճանական մահացմամբ, որի վրա աճել էին հոմինիդները (ինչպես բազմիցս պատահել է կենդանական աշխարհի այլ տեսակների հետ), կա՛մ հոմինիդների օրգանների ու ողջ օրգանիզմի արմատական վերակառուցման միջոցով:

Պարզ է, որ *նման վերակառուցում, իրոք, տեղի է ունեցել*, որի մշտական ապացույցն է մարդու գոյությունը:

Կենդանու ամեն մի օրգան և ողջ օրգանիզմն առհասարակ, ձևավորվում ու գործում են որոշակի օրինաչափությամբ: Մորֆոլոգիական փոփոխությունների միջոցով ամեն մի օրգան ընդունում է ի վերջո այն ամենահարմար ձևը, որն ապահովում է այդ օրգանի ֆունկցիայի կատարումը: Եթե նույնիսկ թռուցիկ հայացք ձգենք, օրինակ, գիշատիչների, նրանց ճիրանների ու ժանիքների, թաքնվելու կամ հարձակվելու հարմարանքների ու գունավորության վրա, ապա դժվար չի լինի համոզվել նշված օրինաչափության առկայության հարցում:

Հոմինիդների արմատական վերակառուցումը ևս տեղի է ունեցել այդ օրինաչափության շնորհիվ, այսինքն, փոփոխություններն ընթացել են այն ձևով, որպեսզի օրգանիզմը, նրա վերջավորությունները, կեցվածքը, գլխի դիրքը, սեփական քաշի՝ որպես ծանրություն ու հակակշիռ օգտագործելու ունակությունը և շատ ու շատ այլ բաներ, պետք է համակերպվեին այն *նոր ապրելակերպին, որի համար աշխատանքն աստիճանաբար դառնում էր ամենակենտրոնական գործոնը:* Եվ, հենց նույն այդ պատճառով, նրանց ուղեղը ևս պետք է ենթարկվեր վճռական վերափոխությունների, որպեսզի ընդունակ դառնար այնպիսի բարձրագույն նյարդա-հոգեբանական գործունեության, որի *ամենահիմնական բաղկացուցիչ մասն էր լինելու գիտակցելու և մտածելու կարողությունը:* Այլ կերպ ասած, նոր ձևավորվող գիտակցությունն ու աշխատանքը բնական վիճակում գտնված և պատրաստովի գործիքների հետ միասին հանդիսացան այն կարևորագույն նախադրյալները, որոնք պայմանավորեցին հոմինիդների օրգանիզմի արմատական վերափոխությունները: Սակայն մի հիմնական հարցում հոմինիդների մորֆոլոգիական փոփոխությունները, որոնք, ինչպես ասվեց, նույնպես ենթարկվել են վերը նշված (այսպես կոչված՝ ֆունկցիոնալ համապատասխանության) օրինաչափությանը, արմատապես տարբերվել են կենդանական աշխարհում այդ օրինաչափության բոլոր այլ դրսևորումներից: Այլ կենդանիների այս կամ այն օրգանի, կամ ողջ օրգանիզմի հարմարվածությունն այնքան ակնառու-մասնագիտացված է, այնքան ընդհանուր է համապատասխանում տվյալ տեսակի մի որոշակի, հազարավոր տարիներ կրկնվող ապրելակերպին, որ դրանից ոչ այնքան շատ տարբերվող պայմաններում նրանք կամ դժվար են դիմանում, կամ բոլորովին չեն դիմանում: Մինչդեռ, միանգամայն այլ կերպ են ընթացել հոմինիդների փոփոխությունները: Նրանց օրգանները ու ողջ օրգանիզմը հարմարվել են ո՛չ թե հատուկ մի որևէ ֆունկցիայի, ասենք՝ ձեռքը մի որևէ միակ գործիքի, միայն մի տեսակ աշխատանքի, այլ դիցուկ՝ քարե կացնի, որով նա կարող էր նախապես ընտրած ձևով կատարել շատ ու բազմազան ֆունկցիաներ: Կարելի է ասել, որ հոմինիդների վերաձևավորման ու վերակառուցման տևական պրոցեսում

կարևորագույն վճռական դեր են կատարել ամենաառաջին, թեկուզ և խիստ պրիմիտիվ, բայց վերափոխող մեծ նշանակություն ունեցող գործիքներն ու այդ գործիքների կիրառման հետ կապված բնորոշ կեցվածքները: Գործիքները և աշխատանքային բնորոշ կեցվածքները, որ միջնորդի դեր են խաղացել արտաքին՝ վերամշակվող միջավայրի և այդ վերամշակումն իրագործող հոմինիդների միջև, իրենց վրա առնելով հարմարվելու ամենահիմնական ֆունկցիան, վերափոխվող հոմինիդներին վերծ են պահել այնպիսի փոփոխություններից, որոնք հարմար կլինեին միայն որոշակի, կոնկրետ, խիստ սահմանափակ թվով աշխատանքային ձևերին համակերպվելու համար: Այդ պատճառով ստացվել է այնպես, որ ձևափոխվող մարդու ձեռքերը «սովորել են» ոչ թե ինչ-որ մի աշխատանք անել, այլ *առհասարակ աշխատել:* Նրա զգայական օրգանները, ասենք՝ քիթը, ականջները, աչքերը և այլն, սովորել են ջոկել ոչ թե մի կամ մի քանի հոտ, ձայն կամ գույն, այլ առհասարակ վատել հոտը, ձայնը, գույնը և այլն:

Իսկ ուղեղը, որի գիտակցելու կարողությունն անշեղորեն կարգանում էր ու թափանցում և՛ արտաքին, գործիքային, առարկայական գործունեության մեջ, աստիճանաբար վերածելով այն աշխատանքի, և՛ ներքին, նյարդա-հոգեբանական պրոցեսների մեջ, նույնպես հարմարվում էր *առհասարակ ճանաչելուն, գիտակցելուն, հիշելուն, հիշածը վերարտադրելուն, դեպքերն ու վարմունքները գնահատելուն,* և ոչ թե մի ինչ-որ խիստ մասնագիտացած նյարդահոգեբանական ֆունկցիայի, ինչպիսին հանդիպում ենք բնազդի կամ պայմանական ռեֆլեքսների դեպքում ստորակարգ կենդանիների մոտ:

Հարկ է նկատել, որ բավական բուռն փոփոխվելով մինչև այժմյան մարդուն նմանվող (կրոմանյոնյան) արարածի ասպարեզ գալը, այնուհետև մինչև մեր օրերը մարդկային օրգանիզմը նշանակալի ոչ մի փոփոխության չի ենթարկվել: Դրա պատճառը նույն այն յուրակերպ մորֆոլոգիական փոփոխություններն են, որոնց շնորհիվ ձեռքը սովորել է առհասարակ աշխատել և ոչ թե մի ինչ-որ առանձին ֆունկցիա կատարել (նույնը նաև այլ օրգանները), իսկ ուղեղը՝ առհասարակ գիտակցել, մտածել, հիշել ու վերարտադրել: Իսկ թե ի՛նչ կատարել, ի՛նչ գիտակցել ու վերարտադրել, դա կախված է եղել պայմաններից ու անհրաժեշտությունից: Այդ պատճառով *մարդկային ձեռքի, կեցվածքի, աչքերի, ականջների, ուղեղի* և այլնի ձևավորվելուց հետո մարդկային օրգանիզմն այլևս «կարիք չի ունեցել» իր ապրելու պայմանների ամեն փոփոխության դեպքում ինքն էլ փոփոխվելու: Այդ խնդիրը (հարմարվելու) իրագործվել է աշխատող ձեռքերի միջոցով:

Անհրաժեշտ է անդրադառնալ նաև հասարակական հարաբերությունների ձևավորմանն ու նրանց դերին:

Ամենայն հավանականությամբ այդ կարգի հարաբերությունները ևս առաջացել են նույնպես աստիճանաբար, դեռևս այն ժամանակներից սկսած, երբ անհատների փոխհարաբերություններում գերիշխում էին կոոլոգիական կապերը: Դրանց առաջացումը պայմանավորված էր գործիքային-առարկայական, ապա նաև աշխատանքային գործունեությամբ, ինչպես և այնպիսի նյարդային պրոցեսների կարգացմամբ, որոնք արդեն պարունակում էին հոմինիդների վարքագծի հետևանքների գիտակցման կարողություն: Այսպիսի պայմաններում, եթե գոյամիջոցները հայթայթվում էին բնատուր կամ պատրաստովի գործիքների միջոցով, նախաաշխատանքային գործունեությամբ (որ արդեն



շատ նման էր աշխատանքին), որին մասնակցում էին մեկից ավելի անհատներ, այդ անհատների փոխհարաբերությունները և կոլեկտիվում նրանց տեղաբաշխումն այլևս չէին կարող կախված լինել միայն ֆիզիկական ուժից, ճիրաններից ու այլ կոոլոգիական գործոններից: Դրանց հետ միասին, ապա դրանց փոխարինելով, հանդես էին գալու նաև ոչ կոոլոգիական հարաբերություններ, որոնք արդեն կհամակերպվեին անհատների միջև ու խմբերում կատարված փոփոխություններին: Իսկ այս բոլորի հետևանքով, որպես ձևավորված աշխատանքային գործունեության, ոչ կոոլոգիական (հասարակական) հարաբերությունների առաջացման նախադրյալ ու դրանց արտացոլում, որպես բոլոր կարգի նոր հարաբերությունների ու գործելակերպերի ընկալող ու միավորող գործոն, աստիճանաբար վեր էր բարձրանալու *գիտակցությունը:*

Առանց այս կարգի հարաբերությունների, որոնց բովով անցնում է նոր ծնվող ամեն անհատ ու ամեն նոր սերունդ, հոմինիդների՝ վերը նշած արմատական փոփոխությունները և դրանց արդյունք հանդիսացող կենդանի էակը, որը նույնիսկ օժտված կլիներ աշխատելու և գիտակցելու պրիմիտիվ ունակություններով, իսկ արտաքինով նման կլիներ ժամանակակից մարդուն, դեռևս մարդ համարել չէր կարելի: Ի դեմս հասարակական հարաբերությունների առկա են այն արտաքին միջավայրն ու նրա պայմանները, որոնք գոյություն չունեն կենդանական աշխարհում և որոնց առկայության դեպքում էր միայն, որ *վերափոխվող հոմինիդները ձևավորվեցին* մարդու ձևով:

Պարզ է, որ հասարակական հարաբերությունները, որքանով որ դրանք հասարակական էին, միասնական էին ամենուր. սակայն նրանք անհրաժեշտաբար տարբերվում էին իրենց մի շարք կողմերով, որոնք պայմանավորված էին բազմաթիվ, այդ թվում նաև աշխարհագրական միջավայրի առանձնահատկությունների շնորհիվ: Այդ էր պատճառը, որ հասարակական հարաբերությունները տարբեր վայրերում ինչ-որ բանում տարբեր ձևով պիտի ազդեին նրանց բովով անցնող անհատների ու սերունդների վրա:

Այսպիսով, իր ծագմամբ մարդկությունը միասնական է: Այդ է վկայում այն կարևորագույն հատկանիշների համընդհանրությունը, որոնց առկայությունն ամենատարբեր ռասաների, ցեղերի, ազգերի մոտ անվիճելիորեն ընդունում են բոլոր առաջավոր մարդաբանները: Սակայն անվիճելի է նաև այն փաստը, որ տարբեր վայրերում բնակվող մարդիկ իրենց կարգացմամբ, սովորույթներով ու շատ այլ կողմերով տարբեր են, փաստ, որը պայմանավորված է այդ վայրերում գերիշխող հասարակական-տնտեսական, քաղաքական ու սոցիալական (ինչպես նաև աշխարհագրական) պայմանների առանձնահատկություններով, որոնք տարբեր չափով ու ձևով են ազդում առանձին անհատների ու մարդկանց մեծ խմբերի, նրանց բնատուր կարողությունների դրսևորման ու կարգացման վրա:



# ՄԵԿՆԱԲԱՆՈՒՄ ԵՆՔ ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## ՍՄԿԿ-Ն ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐ

Մ. Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Մ. Հ. ԱՆՏՈՆՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ բանվոր դասակարգի՝ որպես կոմունիզմ կառուցողի, առաջատար դերն ամրապնդվում է նրա ընդհանուր կուլտուրայի, կրթության մակարդակի, քաղաքական ակտիվության աճի համեմատ։ Բանվոր դասակարգի կուլտուրայի աճի ցայտուն վկայությունն են, օրինակ, վերջին երկու մարդահամարների տվյալները։ Եթե 1959 թվականին յուրաքանչյուր հազար բանվորից մեզ մոտ բարձրագույն ու միջնակարգ կրթություն ունեին 386-ը, ապա այժմ՝ 550-ը։*

*Կոմունիստական կուսակցության կողմից մեր հասարակության ղեկավարումն օբյեկտիվ օրինաչափություն է։ Պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո աշխատավոր ժողովուրդը հաջողությամբ կարող է նոր հասարակարգ կառուցել միայն իր մարքսիստական կուսակցության ղեկավարությամբ, որը հասարակության ինտելեկտուալ ու կազմակերպիչ մեծ ուժ է։ Հենց այդ կուսակցությունը, հասարակական զարգացման օրենքների իմացության հիման վրա, կարողացավ մշակել սոցիալիզմի կառուցման գիտականորեն հիմնավորված ծրագիրը, իսկ այնուհետև, տրոցկիստների ու աջերի հակալենինյան հոսանքների դեմ մղված անհաշտ պայքարում, իրականացնել սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը, այսինքն՝ սոցիալիզմի հաղթանակը։*

*Սովետական հասարակարգի հետագա առաջընթաց զարգացումը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի հաջողությունները հանգեցրել են այն բանին, որ սոցիալիզմը մեզ մոտ հաղթանակել է լիովին ու վերջնականապես։ Դա մեր ժողովրդին թույլ է տվել ՍՄԿԿ ղեկավարությամբ ձեռնամուխ լինել սոցիալիզմից կոմունիզմին աստիճանական անցման մեծ խնդրի գործնական լուծմանը։ Զարգացած սոցիալիստական հասարակարգից անցումը կոմունիզմ հնարավոր է ապահովել երեք կարևոր խնդիրների լուծմամբ։ Դրանք են՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, կոմունիստական հասարակական հարաբերությունների կազմավորումը և նոր մարդու դաստիարակումը։ Այդ պատմական խնդիրների իրականացումը պահանջում է է՛լ ավելի ուժեղացնել կուսակցական ղեկավարությունը հասարակության կյանքի բոլոր ոլորտներում։ Դա օրինաչափ երևույթ է։ Որքան բարձր է հասարակության զարգացման մակարդակը, որքան լայն է կոմունիստական շինարարության թափը, որքան ավելի բարդ են սոցիալ-քաղաքական, տնտեսական և գաղափարական այն խնդիրները, որոնք կուսակցությունը պետք է լուծի կոմունիստական շինարարության ընթացքում, այնքան ավելի բարձր, ավելի կատարյալ պետք է լինեն կուսակցության՝ հասարակությանն առաջնորդող, ուղղություն տվող ուժի ղեկավար դերն ու պատասխանատվությունը։ Ուստի, կուսակցության ղեկավար դերի ըստ ամենայնի ամրապնդումը, նրա աշխատանքի մեթոդների ու ձևերի մշտական կատարելագործումը օբյեկտիվ անհրաժեշտություն են հասարակության առաջընթացի հաջող զարգացման համար։*

*Գիտական կոմունիզմի կուսակցության՝ Սովետական Միության կոմկուսակցության գործունեության մեջ հիմնականը կոմունիզմի կառուցման գլխավոր հեռանկարի մշակումն է, ճիշտ քաղաքական գծի սահմանումը և աշխատավորության պայքարի կազմակերպումը հանուն այդ հեռանկարի իրականացման։ Մեր ողջ իրականությունը վկայում է, որ կոմունիստական կուսակցությունը պատվով է կատարում բազմազգ սովետական ժողովրդի առաջնորդի ու ղեկավարի դերը։*

*Կուսակցության քաղաքականության գիտական հիմքը մարքս-լենինյան տեսությունն է, որը կոմունիզմի ուղին լուսավորող անշեջ փարոս է։ Մարքսիզմ-լենինիզմը հավերժ կենդանի, զարգացող գիտություն է, որը թշնամի է դոգմատիզմին և մտքի ամեն տեսակի լճացման։ Հետևաբար, կուսակցությունը, ղեկավարվելով գիտական կոմունիզմի տեսությամբ, միաժամանակ, հեղափոխական նոր պրակտիկայի հիման վրա, մշտապես զարգացնում, հարստացնում է այդ գիտությունը։ Կուսակցության համագումարները և Կենտկոմի պլենումները, կարևորագույն որոշումներ ընդունելով սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի վերաբերյալ, միաժամանակ մարքսիզմ-լենինիզմի տեսական զինանոցը հարստացնում են նոր հետևություններով, որոնք գիտականորեն հիմնավորում են մեր հասարակության զարգացման ստրատեգիական գիծը, ցույց տալիս սոցիալիզմը աստիճանաբար կոմունիզմի վերաճելու օրինաչափությունները։ Կուսակցությունը, հասարակական զարգացման օրենքների իմացության հիման վրա, նախանշում է հասարակության գիտական կառավարման հասունացած խնդիրների լուծման ուղիները, մեթոդներն ու եղանակները։*

*Անշեղորեն աճում է կուսակցության ղեկավար դերը հասարակության տնտեսական կյանքում։ Բուն արտադրության ոլորտը կոմունիզմի կառուցման վճռական բնագավառն է։ Մեր երկիրը կուսակցության ղեկավարությամբ*

արդեն վիթխարի թռիչք է կատարել իր տնտեսական զարգացմամբ, դարձել
աշխարհի տնտեսապես ամենահզոր երկրներից մեկը: Այժմ ՍՍՀ Միությունում
յուրաքանչյուր չորս օրում թողարկվում է այնքան արդյունաբերական արտա-
դրանք, որքան ցարական Ռուսաստանը թողարկում էր մեկ տարում: Միայն
1970 թվականին երկրում ստացվել է մոտ երկու անգամ ավելի արդյունաբե-
րական արտադրանք, քան մինչպատերազմյան հնգամյակները միասին վերցր-
րած: Այժմ մեր էկոնոմիկան օրական արտադրում է 10 անգամ ավելի հան-
րային բարիք, քան 30-ական թվականների վերջերին: Միայն ութերորդ հնգ-
ամյակում արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացել է մեկուկես ան-
գամ, իսկ ազգային եկամուտը՝ 41 տոկոսով: Հենվելով մեր հզոր էկոնոմիկայի
վրա՝ կուսակցությունն այժմ առաջադրել է Սովետական Միության տնտեսա-
կան զարգացման է՛լ ավելի վիթխարի խնդիրներ:

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին նոր
կարևոր ուղենիշ է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—
1975 թվականների իններորդ հնգամյա պլանը, որի դիրեկտիվները հաստատել
է ՍՄԿԿ XXIV համագումարը: Ազգային եկամուտը հնգամյակում կաճի 37—40,
արդյունաբերական արտադրանքի ծավալը՝ 42—46, գյուղատնտեսական ար-
տադրանքի միջին տարեկան ծավալը՝ 20—22 տոկոսով. ռեալ եկամուտները
բնակչության մեկ շնչի դիմաց կավելանան գրեթե մեկ երրորդով: Հինգ տար-
վա ընթացքում կկառուցվի 565—575 մլն քմ բնակելի տարածություն: Դա
նշանակում է, որ մոտ 60 մլն մարդ ևս այդ ժամանակամիջոցում նոր բնա-
կարաններ կտեղափոխվեն: Հնգամյա պլանը նախատեսում է բոլոր հանրա-
պետությունների էկոնոմիկայի արագ զարգացում: Սակայն արդյունաբերա-
կան արտադրանքի աճի ամենաբարձր տոկոսը սահմանվել է Հայկական ՍՍՀ
համար (60—63 տոկոս):

Հսկայական նշանակություն ունի նոր հնգամյակի՝ կուսակցության XXIV
համագումարի սահմանած գլխավոր խնդիրը, որը պահանջում է ապահովել
ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի վերելքը
սոցիալիստական արտադրության զարգացման տեմպերի արագացման, նրա
արդյունավետության բարձրացման, գիտա-տեխնիկական առաջադիմության և
աշխատանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա: Նախա-
տեսելով տնտեսական քաղաքականության այնպիսի կուրս, որի պայմաննե-
րում սպառման ապրանքների արտադրությունն ավելացվելու է ավելի արագ
(44—48 տոկոսով), քան արտադրամիջոցներինը (41—45 տոկոսով), կուսակ-
ցությունը ելնում է այն բանից, որ մեր էկոնոմիկայի արդի վիճակը հնարա-
վորություն է ընձեռում առանց իջեցնելու ծանր ինդուստրիայի՝ երկրի տնտե-
սական հզորության այդ հիմքի, զարգացման բարձր տեմպերը, առավել մեծ
ուշադրություն նվիրել ժողովրդական սպառման առարկաների արտադրու-
թյանը: Դա մի նոր, փայլուն վկայություն է այն բանի, որ մարդ-
կանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավել լրիվ բա-
վարարումը սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակն է, որն
այժմ դարձել է հնգամյակի գլխավոր խնդիրը: Այդ խնդրի իրականացումն
անմիջականորեն պայմանավորված է հանրային արտադրության արդյունա-
վետության բարձրացմամբ: Ահա թե ինչու կուսակցությունը գտնում է, որ
արդի փուլում տնտեսական շինարարության ամենավճռական պրոբլեմը՝ այդ
արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումն է, սոցիալիզմի տնտե-



սական սիստեմի անվիճելի առավելությունների լիակատար օգտագործումը՝
տեխնիկական առաջադիմության և տնտեսավարման մեթոդների համակող-
մանի կատարելագործման, աշխատանքի գիտական կազմակերպման ու վար-
ձատրության մակարդակի բարձրացման, աշխատանքի նյութական և բարո-
յական խթանների ճիշտ զուգորդման հիման վրա:

Արտադրության արդյունավետության բարձրացման ուղին նշել է կուսակ-
ցության XXIV համագումարը, առաջադրելով պատմական կարևորության մի
խնդիր՝ «գիտա-տեխնիկական հեղափոխության նվաճումները օրգանապես
միավորել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ,
ավելի լայնորեն զարգացնել արտադրության հետ գիտության միավորման սե-
փական, սոցիալիզմին հատուկ ձևերը»: Ուստի, գիտա-տեխնիկական առաջա-
դիմության արագացման և ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու
տեխնիկայի նորագույն նվաճումների ժամանակին ու արդյունավետ կիրառ-
ման ապահովումը կուսակցական ղեկավարության կարևորագույն խնդիրներից
է: Լուրջ նշանակություն ունեն ռեզերվների առավել լրիվ օգտագործումը, հում-
քի ու նյութերի խնայողությունը: Հաշվված է, որ արտադրության մեջ հումքի
և նյութերի ծախսման միայն մեկ տոկոս իջեցումը երկրի ազգային եկամուտը
կավելացնի 3—4 մլրդ ռուբլով:

Հանրային արտադրության արդյունավետության հետագա բարձրացման,
աշխատանքի արտադրողականության անշեղ աճի գործում կարևոր դեր է խա-
ղում գյուտարարության և ռացիոնալիզատորական մասսայական շարժումը,
որն ընդգրկում է մեծ թվով աշխատավորների: Ներկայումս Հայկական ՍՍՀ-
ում կան մոտավորապես 16 հազար գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ,
որոնք միավորված են 532 սկզբնական կազմակերպություններում: Ութերորդ
հնգամյակի ընթացքում նրանք արտադրության մեջ ներդրել են ավելի քան 70
հազար առաջարկություններ, որոնք երկրին տվել են 100 մլն ռուբլուց ավելի
խնայողություն:

Մասսաների ստեղծագործական նախաձեռնության հիանալի ձև և արտա-
դրության կառավարման գործին աշխատավորների մասնակցության կարևոր
միջոց են սոցիալիստական մրցությունը, շարժումը կոմունիստական աշխա-
տանքի համար: Վերջինս այժմ դարձել է մասսայական հայրենասիրական
շարժում, որն ընդգրկում է աշխատավորական լայն խավերին: Մեր հանրապե-
տությունում սոցիալիստական մրցությանը մասնակցում է բանվորների ու ծա-
ռայողների ավելի քան 86 տոկոսը: Այն ծավալվում է լայն հրապարակայնու-
թյան, դրական օրինակի և առաջավոր փորձի տարածման լենինյան սկզբ-
բունքների հիման վրա՝ «սովորել, աշխատել ու ապրել կոմունիստաբար» նշա-
նաբանով: Կոմունիստական աշխատանքի հարվածայինների ու կոլեկտիվների
շարժման մեջ ո՛չ միայն ապահովվում է աշխատանքի բարձր արտադրողակա-
նությունը, այլև ձևավորվում է մարդկանց նոր կոմունիստական բարոյականու-
թյունը:

Կոմունիստական շինարարության արդի փուլում կուսակցությունը բացա-
ռիկ ուշադրություն է նվիրում սոցիալ-տնտեսական պրոցեսների կառավար-
ման սիստեմի կատարելագործմանը, պլանավորման բարելավմանը: Կուսակ-
ցության XXIV համագումարի նյութերում ընդգծվում է, որ կառավարման
պրոբլեմները կուսակցության տնտեսական քաղաքականության հանգուցային
հարցերից են: Եվ դա հասկանալի է, քանի որ առանց մարքս-լենինյան կու-

սակցության չի կարող գոյություն ունենալ սոցիալիստական հասարակարգի գիտական կառավարում։ «Կառավարելու համար,— ասել է Լենինը,— հարկավոր է ունենալ կոփված հեղափոխականների՝ կոմունիստների բանակ. այն գոյություն ունի, այն կոչվում է կուսակցություն»։ Հասարակության գիտական ղեկավարումը կուսակցությունն իրականացնում է հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների իմացությանը լիովին համապատասխան։ Այլ կերպ ասած, կուսակցական ղեկավարության գիտականությունն արտահայտվում է օբյեկտիվ պայմանների ու օրինաչափությունների, կոմունիզմ կառուցող աշխատավորական մասսաների հնարավորությունների ու շահերի հետ կուսակցության սուբյեկտիվ գործունեության համապատասխանությամբ։ Միայն կուսակցության ղեկավարությամբ հնարավոր է նպատակահարմար ներգործել սոցիալ-տնտեսական պրոցեսների, միլիոնավոր մասսաների գործունեության վրա՝ հանուն հասարակության տնտեսական ու սոցիալական առաջադիմության արագացման, եղած հնարավորությունների առավել լրիվ օգտագործման։

Կառավարման կառուցվածքը կատարելագործելիս, ինչպես նաև հասարակության բուն կառավարման պրոցեսում, կուսակցությունը հայտաբերում և հաղթահարում է զանազան հակասություններ ու արգելքներ։ Այսպես, կուսակցությունը բացահայտեց հակասությունը հանրային արտադրության արդյունավետության բարձրացման վճռական պայման համարվող գիտա-տեխնիկական առաջադիմության անհրաժեշտության և նոր տեխնիկայի անարգել յուրացման համար տնտեսական խթանների անկատարելության միջև։ Փաստորեն այնպես է ստացվում, որ նոր տեխնիկայի արմատավորումը ձեռնտու չէ ձեռնարկությանը, նրա կոլեկտիվին, քանի որ նյութական շահագրգռվածություն չի առաջացնում։ Ահա թե ինչու կուսակցության XXIV համագումարն ընդգծեց, որ արտադրության հետ գիտության կապի բարդ շղթայի առավել թույլ օղակներն են գիտության նվաճումների պրակտիկ օգտագործումն ու մասսայական արտադրության մեջ դրանց արմատավորումը։ Կուսակցության համագումարը նշեց հիշյալ հակասության վերացման ուղիները, ընդգծելով, որ գլխավորը տնտեսական այնպիսի պայմանների ստեղծումն է, որոնք, նախ՝ ձեռնարկություններին դրդեն ստանձնել օպտիմալ պարտավորություններ, այսինքն՝ ընդունել լարված պլաններ, ավելի ռացիոնալ օգտագործել կապիտալ ներդրումներն ու աշխատանքային ռեսուրսները, երկրորդ՝ առավել չափով խթանեն գիտա-տեխնիկական առաջադիմության արագացումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և, երրորդ՝ նպաստեն արտադրանքի որակի բարելավմանը։

Կարևորագույն նշանակություն ունի վարձատրության սիստեմի հետագա կատարելագործումը։ Բարձր արտադրողական լարված աշխատանքը պետք է խրախուսվի, ավելի բարձր վարձատրվի։ Այդ կապակցությամբ համագումարում մասնավորապես խոսվեց Շչեկինոյի քիմիական կոմբինատի դրական փորձի մասին, որը ենթադրում է՝ ձեռնարկություններին առավել լայն հնարավորություններ տալ այն աշխատողների ու կոլեկտիվների խրախուսման համար, որոնք մեծ ավանդ են մուծում արտադրության զարգացման գործում, համատեղում են մասնագիտությունները, տնտեսվար կերպով, խնայողաբար են վերաբերվում հանրային հարստությանը։ Ընդ որում, աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումը պետք է ընթանա նրանց բարոյական խրախուսման ընդլայնմանը զուգահեռ։



Արդի փուլում վիթխարի չափով աճում է մասսաների շրջանում կուսակցության ծավալած քաղաքական-դաստիարակչական գործունեության նշանակությունը։ Լինելով հասարակության քաղաքական կազմակերպության բարձրագույն ձևը՝ կուսակցությունն իրականացնում է աշխատավորների մասսայական կազմակերպությունների՝ սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, կոոպերատիվ միավորումների, ստեղծագործական միությունների, սպորտային ընկերությունների ղեկավարությունը, ապահովում պետական ու հասարակական գործերի կառավարմանը մասսաների ավելի ու ավելի լայն մասնակցությունը։

Վ. Ի. Լենինը սովորեցնում է, որ սոցիալիստական պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ, պետական կառավարմանը նրանց ունեցած ակտիվ մասնակցությամբ։ Կոմունիստական շինարարության մեջ կուսակցության ղեկավար դերի աճը նշանակում է միաժամանակ նաև աշխատավորների հասարակական կազմակերպությունների դերի ու նշանակության բարձրացում, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացում։ Դա փոխադարձորեն կապված և փոխադարձորեն պայմանավորված մի պրոցես է, որն արտացոլում է մեր կարգերի իսկական դեմոկրատական բնույթը։ Ահա թե ինչու սովետական դեմոկրատիայի սիստեմի օղակները հանդիսացող հասարակական կազմակերպությունների գործունեության բարելավումը կուսակցությունը համարում է մասսաների հետ կապերի ամրապնդման, նրանց ստեղծագործական ակտիվության բարձրացման անհրաժեշտ պայման։ Իրականացնելով աշխատավորների մասսայական կազմակերպությունների ղեկավարությունը, ուղղություն տալով նրանց գործունեությանն ու կոորդինացնելով այն՝ կուսակցությունը միաժամանակ ձգտում է պարզորոշ սահմանազատել նրանց ֆունկցիաները, դատապարտում է նրանց նկատմամբ մանրախնդիր խնամակալության փորձերը, ավելորդ փոխարինումը, նպաստում այդ կազմակերպությունների ակտիվության, նախաձեռնության և պատասխանատվության բարձրացմանը՝ սոցիալիստական դեմոկրատիայի ընդհանուր սիստեմում իրենց սպեցիֆիկ խնդիրներն իրականացնելիս։

Կուսակցության գաղափարա-քաղաքական ողջ աշխատանքի միջուկը աշխատավորական լայն մասսաների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումն է, նրանց դաստիարակումը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով։ Կարևոր նշանակություն ունի սովետական մարդկանց՝ աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքի պատվաստումը, հարձակողական անհաշտ պայքարն ընդդեմ բուրժուական գաղափարախոսության։ Կուսակցությունն անդուլ ուղղություն է տալիս երկրի ստեղծագործական կազմակերպությունների, մասսայական ինֆորմացիայի միջոցների գործունեությանը, կոչ անում գիտնականներին, գրողներին, նկարիչներին, մամուլի, ռադիոյի ու հեռուստատեսության աշխատողներին՝ ավելի ակտիվորեն մասնակցել մասսաների կոմունիստական դաստիարակությանը։ Կուսակցությունն առանձնապես կարևոր խնդիրներ է դնում հասարակական գիտությունների առջև՝ պահանջելով վճռական շրջադարձ կատարել դեպի կոմունիստական շինարարության հրատապ պրոբլեմների մշակումը։

Իր XXIV համագումարում մեր կուսակցությունը զարգացրեց և խորացրեց սոցիալիստական հասարակարգի սոցիալական կառուցվածքի և հետագա առաջընթացի ուղիների գիտական հասկացությունը։ Նա կոնկրետացրեց բան-

վորների, գյուղացիության ու մտավորականության դասակարգային, քաղաքի ու գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման, սովետական հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնության, բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման, սոցիալիստական ազգերի բարգավաճման, կոմունիզմի կառուցման ընթացքում նրանց աստիճանական մերձեցման պրոցեսի էությունը։ Կոմունիզմի կառուցման սոցիալական այդ կարևորագույն խնդիրների իրականացման գործում վճռական նշանակություն ունի կուսակցության ղեկավար դերը։

Կոմունիստական շինարարության նոր խնդիրները պահանջում են կուսակցության կազմակերպական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացում։ Սերտորեն կապված լինելով մասսաների հետ՝ կուսակցությունը ո՛չ միայն սահմանում է երկրի հետագա զարգացման խնդիրները, այլև ապահովում նոր կյանքի կառուցման ողջ աշխատանքի ղեկավարությունը, կազմակերպված, պլանաչափ, նպատակային բնույթ տալիս նրան, աշխատավորներին պայքարի մղում որոշումների կատարման համար։ Հետևաբար, հասարակության գիտական ղեկավարության կարևորագույն մոմենտներից են կուսակցության ու պետության կազմակերպական գործունեությունը մասսաների մեջ, պայքարն ընդդեմ տարերայնության տեսության, ինքնահոսի, ինչպես նաև ամեն տեսակի սուբյեկտիվիզմի ու վոլյունտարիզմի։ Կուսակցության կազմակերպական աշխատանքի հետագա ուժեղացումն անհրաժեշտ է առավել ևս արդի փուլում, երբ սոցիալ-տնտեսական վերափոխումների վիթխարի թափը պահանջում է ավելի կոնկրետ և առավել օպերատիվ կուսակցական ղեկավարություն հասարակության բուռն զարգացող կյանքի բոլոր օղակների նկատմամբ։

Կոմունիստները կուսակցության քաղաքականության անմիջական հաղորդողներն են աշխատավորական մասսայական կազմակերպություններում։ Իրականացնելով հասարակության ղեկավարությունը՝ կուսակցությունը կանոնադրական կարգով իր անդամներից պահանջում է՝ ամենուրեք սերտորեն կապված լինել մասսաների հետ, օրինակ ցույց տալ իրենց աշխատանքային ու քաղաքացիական պարտականությունների կատարման գործում, ամենուր լինել կուսակցության քաղաքական ու գաղափարական մարտիկներ։ Կոմունիստների ավանգարդային դերի, մասսաների հետ նրանց սերտ կապի մասին է վկայում այն, որ կուսակցության կազմի 73 տոկոսն աշխատում է երկրի նյութական արտադրության տարբեր ոլորտներում։

Կուսակցությունը ո՛չ միայն մշակում է սովետական պետության քաղաքական գիծը և իրականացնում հասարակության տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր կյանքի բոլոր ոլորտների անմիջական ղեկավարությունը, այլև վերահսկում է պետական ու հասարակական մարմինների գործունեությունը, մշտապես կանգնած է սովետական օրենքների կատարման դիրքերում։ Նա պահանջում է խստորեն կենսագործել ներկայացուցչական մարմիններին գործադիր օրգանների ենթակայության սկզբունքը, ավելի բարձրացնել պետական ու կուսակցական ապարատի պաշտոնատար անձանց պատասխանատվությունը ժողովրդի առաջ։

Սովետական Միության կոմկուսակցության ղեկավար դերի աճի օբյեկտիվ պատճառներից մեկը նրա արտաքին քաղաքական գործունեության ոլորտի ան-



նախընթաց ընդլայնումն է։ Որպեսզի հասկանալի դառնա, թե ինչպիսի բազմակողմանի հարցեր է լուծում նա, բավական է թվարկել այդ գործունեության հիմնական ասպեկտները. խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման համար, ԱՄՆ-ի իմպերիալիզմի գլխավորած համաշխարհային իմպերիալիզմի ագրեսիվ պլանների ու գործողությունների դեմ մղվող պայքարի հետագա ուժեղացում. ժողովուրդների ազգային-ազատագրական, հակաիմպերիալիստական պայքարի հետևողական պաշտպանություն, զարգացող երկրներին ցույց տրվող համակողմանի անկաշառ օգնություն նրանց ազգային էկոնոմիկայի ու պետական անկախության ամրապնդման գործում. մարքս-լենինյան մյուս կուսակցությունների հետ համատեղ հետևողական պայքար հանուն համաշխարհային կոմունիստական շարժման համախմբվածության ուժեղացման, ընդդեմ աջ ու «ձախ» ռևիզիոնիզմի. սոցիալիստական երկրների բարեկամության ու եղբայրական համագործակցության հետագա ամրապնդում. նրանց կոորդինացման ու ինտեգրացիայի ընդլայնում, քաղաքական ու ռազմական միասնության ուժեղացում։ Այդ բոլոր բնագավառներում մեր լենինյան կուսակցությունը հետևողականորեն կատարում է համաշխարհային հեղափոխական պրոցեսի հիմնական ուժի իր ինտերնացիոնալ պարտքը։

Սովետական ժողովրդի առջև դրված հսկայական խնդիրները մեծ եռանդ են ծնում։ Սովետական մարդիկ իրենց պատմական բազմամյա փորձով համոզվել են, որ կուսակցության քաղաքականության, նրա ողջ գործունեության իմաստը ժողովրդին անձնվիրաբար ծառայելն է, հոգատարությունը նրա երջանկության ապահովման նկատմամբ։ Ահա թե ինչու աշխատավորները կուսակցության գործը համարում են իրենց հարազատ գործը և ողջ ուժերն ու գիտակցությունը նվիրում են նրա որոշումների կենսագործմանը։ Թբիլիսիում տեղի ունեցած հանդիսավոր նիստում արտասանած իր ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց. «Որպեսզի հասնենք նոր բարձունքների, որոնց ուղին մատնանշեց համագումարը, որպեսզի սովետական ժողովուրդն ավելի լավ ապրի, մենք բոլորս պետք է սովորենք ավելի լավ աշխատել։ Սա է հասարակական առաջադիմության տրամաբանությունը, սա է կոմունիզմի առաջընթացի տրամաբանությունը»։

Մեր ժողովուրդը միաժամանակ գիտակցում է, որ նոր հասարակարգի կառուցման պլանների հաջող կատարումը ո՛չ միայն համապատասխանում է Սովետական Միության արմատական շահերին, այլև համարվում է մեր բարձրագույն ինտերնացիոնալ պարտքը։ Կոմունիզմի ճանապարհին սովետների երկրի ձեռք բերած նվաճումները նպաստում են համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացմանը, դյուրացնում մեր մոլորակի առաջադիմական ուժերի պայքարն ընդդեմ իմպերիալիզմի, հանուն խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի։ Ահա թե ինչու համայն աշխարհի առաջադիմական ուժերը հսկայական հետաքրքրությամբ դիմավորեցին ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները դրանցում տեսնելով ոգեշնչող օրինակ լավագույն ապագայի համար մղվող իրենց պայքարում։



## ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 50-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

# ԱԶԳԵՐԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԴԱՇԻՆՔԸ


Հ. Ջ. ԱՊՐԵՍՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր


*ՍՄԿԿ XXIV համագումարը նշանավորեց կոմունիստական շինարարության նոր էտապը մեր երկրում, մարքս-լենինյան տեսությունը հարստացրեց նոր գաղափարներով ու դրույթներով, սովետական հասարակության հետագա զարգացման սկզբունքային կարևոր դիրքորոշումներ տվեց։ ՍՍՀՄ-ում չկա սոցիալիստական իրականության և ոչ մի բնագավառ, որի ճիշտ ըմբռնման համար կուսակցական ֆորումը չասեր իր նոր խոսքը։ Կուսհամագումարի նյութերը քիչ արժեքավոր բան չեն բովանդակում մեր երկրի սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների, նրանց առաջընթացի ու ինտերնացիոնալիստական համագործակցության աճի վերաբերյալ։*

*Տվյալ հոդվածում մենք անդրադարձել ենք կուսակցության XXIV համագումարում Կենտկոմի հաշվետու զեկուցման մի դրույթին։ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սոցիալիզմի ամենախոշոր նվաճումներից մեկը կուսակցության կողմից լենինյան ազգային քաղաքականության, ժողովուրդների հավասարության և բարեկամության քաղաքականության պրակտիկ իրագործումն է»։ Այս գաղափարը վաղուց է պատվաստվել սովետական հասարակության գիտակցության մեջ, այն սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսության էական բաղադրամասն է։ Բայց այդ հանգամանքը չի նշանակում, որ անհրաժեշտ չէ խոսել այն մասին, թե հատկապես ի՛նչ ռեալ պրոցեսներ ու նվաճումներ է արտացոլում լենինյան ազգային քաղաքականությունը և կոնկրետ ո՛րն է նրա չթուլացող կենարար ուժը։*

*Լենինյան ազգային քաղաքականությունը դիալեկտիկական է, որովհետև այն իր էությամբ նաև ինտերնացիոնալիստական է։ Այդ դիալեկտիկականության մեջ է նրա սկզբունքային գերազանցությունը, նորարարական և ստեղծագործական բնույթն ամեն մի հակամարքսիստական կուսակցության, առավել ևս՝ հակակոմունիստների ողջ լագերի ազգային տեսության ու քաղաքականության համեմատությամբ։*



*Հայտնի է, որ բուրժուական քաղաքականությունը, ինչպես վերջինս «ներկայացնող» ազգի, այնպես և, առանձնապես, «այլազգիների» վերաբերմամբ միշտ արտահայտում է նեղ ազգային, բայց փաստորեն տիրապետող դասակարգերի շահերը։ Բնական է, որ այդպիսի քաղաքականությունը ո՛չ միայն հեշտությամբ անձնատուր է լինում նացիոնալիստական և անգամ ռասայական նախապաշարմունքներին ու տենչանքներին, այլև դառնում նացիոնալիզմի գործիք, մի ազգի, ավելի ճիշտ՝ նրա կառավարող ուժերի տիրապետություն մյուսի նկատմամբ։ Մարքսիզմը վաղուց է հավաստել բուրժուական ազգային գաղափարախոսության և քաղաքականության՝ նացիոնալիզմի վերաճելու տրամաբանությունը, դրա արմատները տեսնելով արտադրամիջոցների մասնավոր սեփականության տիրապետության և դրանով պայմանավորված՝ հասարակության մի (փոքրաթիվ) մասի կողմից նրա մեծամասնության շահագործման մեջ։*

*Մարքս-լենինյան քաղաքականությունը հասարակական հարաբերությունների ամեն մի ոլորտում արտահայտում է բոլոր աշխատավորների և, ամենից առաջ, բանվոր դասակարգի շահերը՝ անկախ նրանց ազգությունից։ Բայց գիտական կոմունիզմի տեսությունն ու պրակտիկան երբեք նիհիլիզմ չեն դրսևորել ազգային շահերի նկատմամբ։ Դասակարգային մոտեցումը, որ հիմնականն է ցանկացած սոցիալական հարցի լուծման ոլորտում, չի բացառում, այլ, ընդհակառակը, խստորեն հաշվի է առնում ազգային մոմենտներն ու հարաբերությունները պատմության մեջ։ Ավելին, աշխատավորների շահերն արտահայտող դասակարգային ելակետն է հնարավորություն ընձեռում մարքսիզմ-լենինիզմին՝ ճիշտ ըմբռնելու ազգայինի և դասակարգայինի փոխադարձ կապը, որում վճռական դերը խաղում է դասակարգային, հետևաբար՝ գաղափարական գործոնը։*

*Անդրադառնալով լենինյան ազգային քաղաքականության դիալեկտիկական էությանը, կարելի է հաստատել հետևյալը. որպես «ազգային», այդ քաղաքականությունն արտահայտում է օբյեկտիվ իրականությունը՝ ազգերի, ազգությունների և ցեղերի գոյությունը։ Այդ ընդհանրությունների առկայությունը դիտվում է նրանց շարժման, նրանց ամբողջ, երբեմն շատ դժվարին, բարդ և հակասական պատմության մեջ, հաշվի են առնվում նրանց դրական և բացասական փորձը, ավանդությունները, ազգային (էթնիկական) ինքնագիտակցության առանձնահատկությունները, ներազգային հարաբերություններն ու հակադրությունները, ինչպես նաև ամեն մի սոցիալ-էթնիկական ընդհանրության մարդկանց առաջընթացի հնարավորությունները։ Լենինյան ազգային քաղաքականությունը ո՛չ միայն արտահայտում, այլև պաշտպանում է յուրաքանչյուր ժողովրդի, ամեն մի սոցիալ-էթնիկական ընդհանրության իրական շահերը, ելնելով դրանցից յուրաքանչյուրի հավասարությունն ու հավասար իրավունքները, միաժամանակ պատմական առաջընթացի հավասար հնարավորություններն ապահովելու անհրաժեշտությունից։*

*Այդպիսի քաղաքականությունը, որի գործնական կիրառումն սկսվեց «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիա» պատմական փաստաթղթով՝ սովետական պետության առաջին ակտերից մեկով (այն ընդունվել է 1917 թ. նոյեմբերի 15-ին), ազգային է նաև այն պատճառով, որ յուրաքանչյուր ազգության համար սահմանում է միատեսակ իրավունքներ նրանց կյանքի բոլոր ոլորտներում։ Կոմունիստական կուսակցության այդ քա-*

ղաքականությունը, ինչպես և վերջնական նպատակները բացատրվում, յուրաքանչյուր ժողովրդին են հրամցվում նրա մայրենի լեզվով։ Լենինյան ազգային քաղաքականության կենսագործումն ապահովվում է շնորհիվ ազգային կադրերի, որոնց պատրաստումն ու դաստիարակումը մարքսիստական կուսակցության քաղաքականության և կազմակերպական-դաստիարակչական աշխատանքի առաջնահերթ խնդիրներից են։ Վերջապես, լենինյան ազգային քաղաքականությունն ապահովում է ամեն մի ժողովրդի ազգային էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացումը։ Այդ առաջընթացի մեջ գլխավոր դեր է խաղում ձևով ազգային սոցիալիստական պետությունը։

Իսկ լենինյան ազգային քաղաքականության ինտերնացիոնալ բնույթը բնորոշվում է նրանով, որ այն միակերպ է յուրաքանչյուր, մեծ թե փոքր, ժողովրդի համար, միակերպ է իր իմաստով և վերջնական նպատակներով։ Տարբեր են միայն այդ քաղաքականության կենսագործման մեթոդներն ու եղանակները, որոնք տարբերակվում ու կոնկրետացվում են այս կամ այն հանրության պատմական զարգացման մակարդակին և բնույթին համեմատ։ Հաղթահարելով ազգությունների՝ պատմականորեն առաջացած, միմյանցից մեկուսացումն ու ներփակվածությունը, այդ քաղաքականությունը ժողովուրդներին մերձեցնում ու համախմբում է հանուն նրանց բոլորի համար միակերպ կենսականորեն անհրաժեշտ նպատակների ու գաղափարների։

Լենինյան ազգային քաղաքականության դիալեկտիկայի կարևորագույն առանձնահատկությունն այն է, որ նրանում, պորտաբույծ դասակարգերի վերացմանը զուգընթաց, հաղթահարվում են ներազգային հակասությունները, ու տվյալ ազգը, ինչպես և ազգությունը, դառնում է ավելի միասնական ու միաձույլ։ Դրանով իսկ հաղթահարվում են նաև ազգամիջյան հակասությունները ծնող պատճառները։ Այլ խոսքով, ընդհանուրի (ինտերնացիոնալիստականի) և առանձնահատուկի (ազգայինի) միասնություն— ահա լենինյան ազգային քաղաքականության դիալեկտիկայի էությունը, քաղաքականություն, որը մշակվել ու հիմնավորվել է հեղափոխական պայքարում, իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանում մարքսիզմի վեհ սկզբունքներից ելնելով։ Վերջապես, այդ քաղաքականության դիալեկտիկան դրսևորվում է նաև նրանում, որ այն, արտահայտելով կենդանի իրականությունը, վերջինիս փոփոխություններն ու որակական տեղաշարժերը, տեղում կանգնած չի մնում։ Քաղաքականությունը մշտապես նորանում է նվաճումների, կուտակված փորձի հիման վրա, ձերբազատվում հնացած դրույթներից ու դիրքորոշումներից և իր բնույթով՝ հարաշարժ է։

Պարզ է, որ կոմունիստական կուսակցությունը միայն այդպիսի քաղաքականության հիման վրա կարող էր ապահովել Սովետական Միության ավելի քան հարյուր ազգությունների հավասարությունն ու բարեկամությունը։ Խորապես հակասական սոցիալական իրականության բարդ բնագավառներից մեկում սոցիալիզմի այդ պատմական նվաճման նշանակությունը պատշաճ գնահատելու համար անհրաժեշտ է հիշեցնել ազգերի և դրանց փոխհարաբերությունների պատմական, թեկուզև որոշ հանգամանքներ, որոնք առաջին անգամ սահմանել և գիտականորեն բացատրել է միայն մարքսիզմը։

Ազգությունը, իսկ առավել ևս ազգը, որպես պատմական որոշ հանրություն, կազմավորվում և առաջադիմում է ներքին սոցիալ-էթնիկական հատկանիշների և ազդակների ներգործության հիման վրա։ Որոշակի տերիտորիալ



ամբողջականությունը, որի վրա ապրում և սկսում է կազմավորվել այդպիսի ընդհանրությունը, տնտեսական կացութաձևը, աստիճանաբար զարգացող լեզուն, ինչպես նաև հոգեբանության և համապատասխան կուլտուրայի առկայությունն են այն հատկանիշները, որոնք մարքսիզմը համարում է ազգության, ապա և ազգի համախմբման գլխավոր պայմանները։ Այդ հատկանիշները կարելի է համարել ազգային առաջադիմության ներքին գործոններ։

Սակայն, ոչ մի պատմական հանրություն՝ տոհմից մինչև ազգություն, չի զարգանում լիակատար միայնության մեջ, արտաքին աշխարհից բացարձակապես մեկուսացած։ Տարբեր սոցիալ-էթնիկական խմբերի միջև շփումը նույնպես դառնում է ազգությունների և ազգերի համախմբման առաջնահերթ գործոն, եթե չասենք՝ օրենք։ Ծագում, ընդլայնվում և խորանում է ժողովուրդների փոխադարձ կապը, իսկ այնուհետև՝ փոխներգործությունը։ Այն աստիճանաբար ընդգրկում է հասարակական կյանքի տնտեսական, կուլտուրական, քաղաքական և մյուս ոլորտները, արագացնելով ազգությունների ձևավորումը։ Վերոհիշյալ հարաբերությունները կարելի է անվանել պատմական առաջընթացի արտաքին կամ ազգամիջյան գործոններ։

Սակայն երկմիասնական առաջընթացը երկրագնդի և ոչ մի մասում երբեք անխռով չի եղել։ Բանն այն է, որ ո՛չ միայն ազգերի, այլև նույնիսկ ազգությունների համախմբումն սկսվում է դասակարգային, այսինքն՝ հակասական հասարակության պայմաններում։ Չկա մի երկիր, որի պատմությունը չվկայի, որ սոցիալական հակամարտությունը մեծ խոչընդոտ է ազգությունների, ազգերի նորմալ և համեմատաբար արագ համախմբման գործում։ Հայտնի է, օրինակ, որ ֆեոդալական մասնատվածությունը և դրա հարուցած կենտրոնախույս ձգտումները, հատկապես IV—V դարերում, արգելակում էին հայերի ազգային համախմբմանը և նրանց միասնական պետության ստեղծմանը։ Փաստորեն այդպես էր բանը հարևան Իբերիայում (Վրաստանում), որը հարյուրամյակներ շարունակ գոյություն է ունեցել առանձին իշխանությունների ու թագավորությունների ձևով։ Ռուսիան ևս սկզբունքորեն ոչնչով չէր տարբերվում մինչև Իվան Ահեղը. նա կարողացավ, տիրակալ իշխանների դիմադրության պայմաններում, միավորել ռուսական իշխանությունները և, վերացնելով իշխանների տիրապետությունը, ստեղծել միասնական ռուսական պետություն, որը խթանեց ռուս ազգության առաջընթացը։ Մինչև սովետական կարգերի հաստատումը Ղազախստանը ծվատվում էր միջբայական երկպառակություններից ու հակամարտություններից և չէր կարողանում համախմբվել մի միասնական ազգության մեջ։ Այսպես էր վիճակը մեր երկրի նաև այլ շրջաններում։

Համենայն դեպս, հակառակ ֆեոդալական մասնատվածության, ազգությունները ձևավորվում էին, իսկ բուրժուական հասարակությանը բնորոշ սոցիալական հակամարտություններն ի վիճակի չէին խանգարելու ազգերի կալինելությունը։ Տերիտորիայի ընդհանրությունը, ընդհանուր տնտեսական կացութաձևի և լեզվի զարգացումը դասակարգային հակասություններից առավել ուժեղ էին, որոնք էլ հենց արգելակում են ազգությունների և ազգերի համախմբմանը, պայմանավորելով դրանց ներքին հակասությունը։ Մեր կարծիքով, այդ հակամարտությունն էլ հենց առաջ է բերել ժողովուրդների զարգացման անհամաչափություն։ Անհամաչափության մեջ, իր հերթին, հավանաբար,

հարկավոր է տեսնել ազգությունների և ազգերի պատմականորեն առաջա-
ցած, իսկ այնուհետև սաստկացող անհավասարությունը։
Այդպիսի անհավասարությունն առանձնապես ցայտուն և զգալի է դառ-
նում ազգամիջյան հարաբերությունների ընդլայնման ու խորացման համե-
մատ։ Ավելին, ժողովուրդների և երկրների այն փոխներգործությունը, որի
մասին խոսվեց վերը, ո՛չ միայն խթանում է նրա զարգացումը, այլև հաճախ
մի կողմն այն օգտագործում է մյուս կողմին ճնշելու, նրա նորմալ առաջըն-
թացն արհեստականորեն արգելակելու համար։ Տնտեսական և քաղաքական
ճնշում, կուլտուր-լուսավորական և կրոնական միսիոներություն— այդպիսիք
են տիրապետող դասակարգերի իրագործած այդօրինակ ճնշման միջոցները։
Հանուն իրենց շահախնդրական նպատակների իրականացման նրանք պատե-
րազմներ են սանձազերծում, ուրիշ երկրներ ներխուժում, նրանց ենթարկում
իրենց նեղ դասակարգային կամքին։ Այդպիսի բռնությունը հաճախ երկար
ժամանակով կասեցնում է ճնշված, առավել ևս նվաճված երկրի (ազգության,
ազգի) առաջընթացը, իսկ երբեմն նրան տասնամյակներով ետ է մղում։
Դրանով իսկ ազգերի զարգացման՝ օբյեկտիվորեն առաջացած անհամաչա-
փությունը, նաև անհավասարությունը, խորանում է արտաքին ուժերի՝ շովի-
նիզմի և կոպիտ կամայականությունների հետևանքով։
Ազգամիջյան հարաբերությունների պատմությունը հագեցած է ամեն-
քին լավ հայտնի այդպիսի փաստերով. ուստի, հարկ չկա անդրադառնալ
դրանց։ Սակայն անհրաժեշտ է ընդգծել, որ այդ անհավասարությունն ու
անիրավահավասարությունը, երբեմն նաև կատարյալ իրավազրկությունը,
այս կամ այն չափով ապրել են տասնյակ ազգություններ ու երկրներ։ Այդ-
պիսի վիճակը օրենք է հակամարտ հասարակությունում, որտեղ նացիոնա-
լիզմ ու մեծապետական շովինիզմ են բորբոքվում։ Ազգային անհավասարու-
թյունն ու անիրավահավասարությունն առանձնապես ուժեղացան իմպերիա-
լիզմի դարաշրջանում՝ նրա մարդակուլ գաղութային զավթողականությամբ։
Գաղութարարության բաղայի վրա հատկապես բորբոքվեցին մեծապետական
շովինիզմն ու ռասիզմը, ստեղծվեցին «պատմական» և «ոչ-պատմական» ազ-
գերի վերաբերյալ հակագիտական տեսություններ, որոնք պնդում էին Արև-
մուտքի և Արևելքի մշտական հակադրության գաղափարը։ Ռեակցիոն բուր-
ժուական պատմագրությունը, սոցիոլոգիան և հոգեբանությունն ամեն կերպ
արմատավորում էին ժողովուրդների ու ռասաների մշտնջենական անհավա-
սարության հակամարդասիրական տեսությունը, որը պրոպագանդվում և,
իհարկե, բոլոր եղանակներով կենսագործվում է նաև մեր ժամանակներում։
Մարքսիզմը պատմության մեջ առաջին սոցիալական ուսմունքն է, որը
հռչակեց բոլոր ազգությունների աշխատավորների հավասարությունն ու բա-
րեկամությունը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը, որի օրինաչափու-
թյունն ու սկզբունքները բացահայտեց ու հիմնավորեց գիտական կոմունիզմը
և դարձավ ազգամիջյան մերձեցման ու եղբայրության գործիք, ռեալ իրակա-
նության վերածվեց միայն հաղթանակած սոցիալիզմի պայմաններում։
Արժե հիշատակել Սովետական Միության տերիտորիայում ապրող ժո-
ղովուրդների երբեմնի անհավասարության բնույթն ու մակարդակը և մի հա-
յացք գցել այն անցած ուղու վրա, որի շնորհիվ Սովետական Միության ժո-
ղովուրդները նվաճեցին հավասարություն ու բարեկամություն։
Մեր երկրի ժողովուրդների անհավասարությունը պայմանավորված էր



պատմականորեն ստեղծված այն բազմակացութաձևությամբ, որի մասին
գրում է Լենինը։ Այդպիսի բազմակացութաձև բաղայի վրա ապրում էին ավե-
լի քան հարյուր ազգեր, ազգություններ և տասնյակ ցեղեր։ Բազմակացութա-
ձևությունը բնորոշ էր ո՛չ միայն, ամբողջությամբ վերցրած, ռուսական կայս-
րության համար, այլև առանձին ծայրամասերի, ինչպես՝ Կովկասին, Անդրկով-
կասին։ Բազմակացութաձևությունը պայմանավորում էր էթնիկական կամ ազ-
գային ինքնագիտակցության, հոգևոր կուլտուրայի միանգամայն տարբեր
մակարդակներ, ասենք, գիր ու գրականության բացակայությունից մինչև
զարգացած բազմաժանր գրականությունը և այլն։ Այդ հանգամանքները հող
էին ստեղծում սոցիալ-էթնիկական հանրությունների՝ միմյանց նկատմամբ
որոշակի խորթության, իսկ երբեմն էլ ցարական Ռուսաստանի հրահրած
որոշակի թշնամանքի համար։
Հռչակելով նախկին կայսրության ժողովուրդների հավասարություն և
իրավահավասարություն, կոմունիստական կուսակցությունը խստորեն հաշվի
էր առնում տարբեր ժողովուրդների ու ցեղերի իրական դրությունը, պարզորոշ
գիտակցելով պատմական այն անարդարությունը հաղթահարելու անասելի
դժվարությունները, որը վիճակվել էր նրանց մեծամասնությանը։ Կուսակ-
ցությունը դրա հետ միասին ելնում էր և ելնում է բազմիցս հաստատված այն
ճշմարտությունից, որ աշխարհում ապաշնորհ ու անտաղանդ ժողովուրդներ
չկան։ Ամեն ինչ նրանց կեցության օբյեկտիվ պայմանների, ստեղծարար
գործունեության ռեալ հնարավորությունների մեջ է։ Մարքսիզմ-լենինիզմը
մշտապես մերկացրել է նացիոնալիզմը, շովինիզմը և ռասիզմը, մերժել «ան-
գործունակ» և «ծույլ» ժողովուրդների կոնցեպցիան։ Եվ այն, ինչ այնուհետև
դարձել է իրականության մեջ հետևողականորեն կենսագործվող լենինյան
ազգային քաղաքականության ռեալ բովանդակությունը, հաստատեց ցանկա-
ցած սոցիալ-էթնիկական ընդհանրության կենսունակության կոնցեպցիան։
Վերջինս կենսագործվում էր ազգային-պետական շինարարության, ժողովրր-
դական տնտեսության, կուլտուրայի զարգացման, սոցիալ-քաղաքական առաջ-
ընթացի, միասնական հասարակական գիտակցության ձևավորման, մեր
երկրի բոլոր ազգերի ու ազգությունների գաղափարական աճի ոլորտում։
Կուսակցությունն սկզբից ևեթ ձեռնամուխ եղավ Սովետական Միության
ժողովուրդների պատմական զարգացման առաջընթաց հավասարեցմանը,
որը սովետական հասարակարգն ապահովում էր տնտեսական և սոցիալական
զարգացման բարձր տեմպերով։ Այդպիսի վերելքի կարևոր գործոն են ազգերի
փոխադարձ օգնությունն ու համագործակցությունը, որը ժամանակի
ընթացքում, ինչպես կանխատեսում էր Վ. Ի. Լենինը, պետք է վերաճեր բա-
րեկամության, մինչ այդ չտեսնված ինտերնացիոնալ եղբայրության։ Մեր
երկրի ժողովուրդների հասարակական առաջընթացի մակարդակը հավասա-
րեցնելու կուսակցության դիրքորոշումը եղել է ինչպես ազգերի ու ազգություն-
ների անհավասարաչափ զարգացումն աստիճանաբար հաղթահարելու, այն-
պես և սոցիալական զարգացման բոլոր ասպարեզներում նրանց փաստական
հավասարությունն աստիճանաբար ապահովելու գիծ։
Ընդ որում, կոմունիստական կուսակցությունը բնական կամ ենթադրյալ
իրավունքը երբեք չի շփոթել օրենքով սահմանված և անշեղորեն կատարվող
իրավունքի հետ, նա չի շփոթել ճանաչվող կամ ազդարարվող հավասարու-
թյունը նվաճված իրական հավասարության հետ։ Մեր կուսակցությունն արել

և անում է ամեն ինչ, որպեսզի սովետական սահմանադրության իրավահավասարությունը կենսագործվի, որպեսզի այն դառնա բոլոր ժողովուրդների փաստական հավասարություն։ Այդպիսի հավասարության վճռական պայմանն էկոնոմիկան է, ուստի, արժե որոշ տվյալներ բերել այդ բնագավառից։

Սովետական իշխանության տարիներին Ռուսաստանի ֆեդերացիայում արդյունաբերական արտադրանքի ծավալն աճել է աշխարհի ինդուստրիալ զարգացման համար բացառիկ բարձր և հազվագյուտ տեմպերով— 92 անգամ։

Այնուամենայնիվ, այդպիսի առաջընթացը սահմանագիծ չէ, քանզի ֆեդերացիայի ներսում, ազգային շրջանակներում, էկոնոմիկան ավելի արագ է զարգացել. Կոմի ԻՍՍՀ-ում, օրինակ, ծավալն աճել է 223 անգամ, Բաշկիրիայում՝ 477, Կաբարդինո-Բալկարիայում՝ 2435 անգամ։ Անհամաչափությո՞ւն։ Իհարկե, նկատելի է։ Բայց դա պատմականորեն գոյացած ու մինչև սոցիալիզմը գործող այն անհամաչափությունը չէ, որը սոցիալական անարդարություն էր և որոշ երկրների ու ժողովուրդների առաջընթացն արգելակում էր հօգուտ այլ երկրների։ Իսկ սովետական հասարակարգը, որը պլանավորում ու կենսագործում է ազգային էկոնոմիկայի աճման տարբեր տեմպեր, նախատեսում է այն պայմաններն ու միջոցները, որոնք ապահովում են Սովետական Միության տարբեր շրջանների զարգացման մակարդակի աստիճանաբար համահավասարումը։

Այդ ուղղությունը կրկին հաստատեց XXIV կուսհամագումարը։ Օրինակ, արդյունաբերական արտադրանքի ծավալը 1971—1975 թվականներին համամիութենական մասշտաբով կավելանա 42—46 տոկոսով, Լատվիայում կկազմի 35—38, Հայաստանում՝ 60—63 տոկոս։ Այդ երկու ծայրակետերի միջև ընկնում են մնացած տասներեք միութենական հանրապետությունների թվերը, սկսած ամենախոշորից՝ ՌՍՖՍՀ-ից և վերջացրած բնակչության թվով ամենափոքրով՝ Էստոնիայով։ Նշանակում է, այս՝ իններորդ հնգամյակում ևս, կշարունակվեն ազգային էկոնոմիկայի զարգացման գիտականորեն հիմնավորված այն տարբեր տեմպերը, որոնք էլ հենց կարող են ապահովել մեր երկրի բոլոր հանրապետությունների ու մարզերի աճի հավասարեցումը։ Անտարակույս, հնարավոր է, որ բացարձակ հավասարեցում, այսինքն՝ աճի միատեսակ տեմպ, քննարկվող պատմական ապագայում չլինի։ Ազգային էկոնոմիկայի աճը հասկանալ հնարավոր չէ առանց ընդհանուրի և հատուկի դիալեկտիկական փոխադարձ կապի։ Այդ պրոցեսը որոշվում է օբյեկտիվ տվյալներով, ամենից առաջ՝ մեր երկրի այս կամ այն շրջանի ամբողջ միջոցներով ու ռեալ հնարավորություններով։ Այն զուգորդված է տերիտորիալ-արդյունաբերական համալիրով, որն ստեղծվում ու զարգանում է տնտեսական, սոցիալ-քաղաքական ու դեմոգրաֆիական գործոնների հիման վրա։ Ելնելով դրանցից, մեր կուսակցությունը հաշվի է առնում տեղական և համամիութենական պահանջմունքները։ Գիտականորեն հիմնավորված այդպիսի զուգակցմամբ են հենց արտահայտվում ազգային և ինտերնացիոնալ շահերի ինչպես մոտակա, այնպես և հեռանկարային, հեռավոր նպատակները։ Տեղականի, մարզայինի կամ զոնալի և համամիութենականի միասնության դիալեկտիկական տեսության մեջ և, հատկապես, գործնականում արտահայտվում է ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների հավասարեցումն ուժեղացնող ու կատարելագործող ճշմարիտ ուղին։

Այդ պրոցեսի անհրաժեշտ, օբյեկտիվորեն թելադրվող, ուստի, սոցիա-



լիստական հասարակարգի կողմից ապահովվող պայմանը Սովետական Միության ազգերի ու ազգությունների զարգացման բազմակողմանիությունն է։ Այդ բազմակողմանիությունն անհրաժեշտություն է և պայմանավորվում է ազգերի ու ազգությունների բուն դրությամբ, նրանց պետական սուվերենությամբ, ներքին հակասություններից ազատված ազգային համախմբվածությամբ, բազմակողմանի նախաձեռնության և ինքնագործունեության ազատությամբ։ Սոցիալիստական ազգերի ու ազգությունների զարգացման բազմակողմանիությունը, սոցիալիստական շինարարության ծավալմանը համեմատ, օբյեկտիվ օրինաչափությունից վեր է ածվում գիտակցված անհրաժեշտության, որը կենսագործվում է կուսակցության քաղաքականությամբ։

Երկրների և դրանց ժողովուրդների զարգացման ինչպես բարձր տեմպերը, այնպես և բազմազանությունը, սոցիալիզմի օրենքն է։ Այդ բանը հաստատվում է Սովետական Միության, ամբողջությամբ վերցված, և նրա ամեն մի հանրապետության, ազգային ինքնավար մարզի և ազգային օկրուգի պատմությամբ։ Հետևաբար, հասարակական առաջընթացի ո՛չ միայն հարաճուն տեմպերը, այլև բազմակողմանիությունը, եթե ոչ համակողմանիությունը, եղել են և շարունակում են մնալ մեր երկրի ազգերի ու ազգությունների պատմական զարգացման աստիճանական համահավասարման պայմանները։ Այժմ կարելի է ասել, որ ոչ մի խոր ջրբաժան գիծ չկա, ասենք, մի կողմից՝ ռուս, ուկրաինացի, լատիշ, վրացի, հայ ժողովուրդների և, մյուս կողմից՝ միայն սովետական տարիներին լրիվ նստակեցության անցած, այնուհետև սոցիալիստական ազգի մեջ համախմբված ղազախների, կիրգիզների տնտեսական և սոցիալ-քաղաքական զարգացման միջև։

Սովետական Միության միութենական և ինքնավար որոշ հանրապետությունների միջև առայժմ, իհարկե, որոշ տարբերություններ կան ընդհանուր կուլտուրական աճի, մասնավորապես բարձրագույն կրթության, ինչպես նաև ազգային կադրերով ապահովվածության հարցերում։ Ամենուրեք չէ, որ միատեսակ հաջողությամբ հաղթահարվում են կրոնականությունը, ինչպես նաև վաղուց հնացած ավանդույթներն ու սովորույթները։ Բայց կանցնի որոշ ժամանակ, և այդ տարբերությունները նույնպես կհաղթահարվեն։ Իսկ գլխավոր հարցերում, այն է՝ տնտեսական, սոցիալ-քաղաքական, իրավական և կուլտուրական կյանքի, սոցիալիզմն արդեն վաղուց է ապահովել լիակատար փաստական հավասարություն։ Վճռական նշանակություն ունի նաև այն, որ սովետական բոլոր ազգերն ու ազգությունները սոցիալապես համասեռ են, օժտված որակական միևնույն հատկանիշներով, որ հատկապես բանվոր դասակարգն է վճռական ուժը։ Ուստի, ցանկացած ազգության պատկանող սովետական մարդկանց ապրելակերպի մեջ արտահայտվում են ընդհանուր-սովետական, ինտերնացիոնալ, այսինքն՝ իրենց բնույթով միասնական գծեր։

Ազգերի ու ազգությունների տարեցտարի ապահովվող հավասարությունը զուգորդվել է նրանց միջև բարեկամության վերածված՝ հետզհետե խորացող, պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի միասնական գաղափարախոսությամբ ոգեշնչվող փոխըմբռնմամբ ու մերձեցմամբ։

Իհարկե, հեռավոր անցյալում ևս առանձին ժողովուրդներ բարեկամական կապերի մեջ են մտել կամ օգտվել են ինքնին առաջացած բարի-դրացիական հարաբերություններով, օրինակ, Անդրկովկասը կամ բազմազգ Կովկասը՝ ամբողջությամբ վերցրած, որոնք, հասկանալի է, տվյալ դեպքում բացառություն

*չեն։ Իսկական բարեկամության աղնիվ ավանդույթներով հարուստ է, առանձնապես, հայ-վրացական բազմակողմանի հարաբերությունների պատմությունը՝ հնագույն ժամանակներից ի վեր։ Հարուստ է արևելասլավոնական երեք ժողովուրդների՝ ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների եղբայրության պատմությունը։ Բայց անցյալում ժողովուրդների և երկրների միջև բարեկամական կամ նույնիսկ բարի-դրացիական հարաբերությունները հաճախ են խախտվել, երկար ժամանակով ընդհատվել։ Ժողովուրդների, ավելի ճիշտ՝ դրանց աշխատավոր մասսաների տևական և հաստատուն բարեկամությամբ երբեք շահագրգռված չեն եղել շահագործողական դասակարգերը, որոնք միշտ աչք են տնկել օտար հողերի ու հարստությունների վրա։ Այդ պատճառով հեշտությամբ էին սանձազերծվում ազգամիջյան երկպառակություններ ու բացահայտ թշնամանք, որոնք երբեմն զինված ընդհարումների էին փոխարկվում և անգամ վերաճում արյունահեղ սպանդի։*

*Ժողովուրդների իսկական և հետևողական բարեկամության պայմանը պորտաբույծ դասակարգերի վերացումն է, որն ապահովվում է սոցիալիստական շինարարությամբ։ Հետևաբար, ժողովուրդների այն հավասարությունը, որ իրականացվել է մեր երկրում, միաժամանակ նրանց մերձեցման, բարեկամության զարգացման ու ամրապնդման պրոցես է։ Մինչ սոցիալիստական ժամանակները ժողովուրդների բարեկամությունը, որպես կանոն, առաջանում էր տարերայնորեն կամ նրանց համար դժվարին պահերին. հաճախ էին լինում միակողմանի, սահմանափակ տնտեսական հարաբերություններ կամ ժամանակավոր ռազմական դաշինքներ։ Մինչդեռ, Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը կազմակերպվում էր և շարունակում է ապահովվել մեր կուսակցության ազգային քաղաքականությամբ, նրա բազմակողմանի կազմակերպական, գաղափարա-դաստիարակչական աշխատանքով։ Իհարկե, դրա հետ միասին կուսակցությունը հենվում է ազգամիջյան բարեկամության լավագույն ավանդույթների վրա և զարգացնում է դրանք, օգտվել և շարունակում է օգտվել անցյալի փորձից։*

*Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը խարսխվում է միասնական սոցիալ-տնտեսական բազայի, բոլոր ազգերի ու ազգությունների բարոյաքաղաքական անող միասնության վրա։ Այդ բարեկամությունը, բացի դրանից, ցեմենտվում և ավելի ու ավելի է ամրանում, որովհետև Սովետական Միությունում սոցիալիստական ազգերն ու ազգությունները պատմության մեջ մի նոր հանրություն են կազմում՝* սովետական ժողովուրդ: *Այդ ժողովուրդը բազմազգ, իր բնույթով ինտերնացիոնալ, ռեալ կեցությամբ և իդեալներով մի միասնություն է, որը զարգացած սոցիալիզմի առաջնակարգ շարժիչ ուժն է։ Լինելով նոր հանրություն, սովետական ժողովուրդը զարգանում է այնպիսի նոր օրինաչափությունների հիման վրա, որոնք չեն բացասում ազգերի ու ազգությունների համախմբման և մերձեցման պայմաններն ու գործոնները, բայց արտահայտում են ազգերի ու ազգությունների սոցիալիստական առաջընթացի մակարդակի հիման վրա համախմբման և մերձեցման պայմաններն ու գործոնները։*

*Սովետական ժողովրդի ձևավորումը տեղի ունեցավ ոչ թե մեր երկրի ազգերի ու ազգությունների ձուլման կամ նույնիսկ սահմանափակման հաշվին, այլ, ընդհակառակը, նրանց աճմանն ու մերձեցմանը համեմատ։ Ավելին, հենց այն պատճառով, որ սոցիալիստական շինարարության ընթացքում պատմականորեն գոյացած հանրություններն օրինաչափորեն համախմբվել, դարձել են նոր հանրություն՝ սովետական ժողովուրդ, հետևապես նրանց հավասարությունն ու մերձեցումը նվաճելու բուն պրոցեսը և՛ ավելի խոր է, և՛ ավելի կազմակերպված։ Այդ կապակցությամբ ցանկալի է առանձնապես նշել սովետական ժողովրդի ձեռք բերած նվաճումը, նրա՝ իր բնույթով վեհ և գործարար մարդասիրությունը։*

*Ժողովրդի ներսովետական բարեկամությունը բազմակողմանի է իր բնույթով, բազմապիսի իր դրսևորման ձևերով, ընդգրկում է հասարակական հարաբերությունների բոլոր ոլորտները, ազգամիջյան փոխադարձ կապերի, փոխադարձ ներգործության բոլոր կողմերը։ Այդպիսի բարեկամության մեջ չկան «ազգային գաղտնիքներ» կամ ինչ-որ յուրահատուկ շահեր, որ խորթ կամ անհասկանալի լինեն համագործակցության մյուս անդամներին։ Այդ բարեկամությունը, որ ինտերնացիոնալիստական է իր էությամբ, ամբողջովին արտահայտում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսությունը։ Լինելով կամովին ու հարատև, այն առավել խոր ու պարզորոշ է գիտակցվում մեր երկրի բոլոր ժողովուրդների կողմից, կենսագործվում հավասար սկզբունքներով ու նպատակասլաց։*

*Այսպիսով, Սովետական Միության ազգերի ու ազգությունների հավասարությունն ու բարեկամությունը, ինչպես մատնանշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, հիրավի սոցիալիզմի պատմական մեծ նվաճումն են, որ ո՛չ միայն ներսովետական, այլև միջազգային նշանակություն ունեն։ Կանգ չառնելով վերջին մոմենտի վրա, նշենք միայն, որ հավասարությունն ու բարեկամությունը պետք է դիտվեն և գնահատվեն որպես մեր երկրում կատարված սոցիալիստական շինարարության որոշակի արդյունք, նվաճված հաջողություն, հարատև ստեղծագործական պրոցես։ Օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոններն այդ պրոցեսում կազմում են մի միասնություն, որ ամեն կերպ պահպանվում է մեր կուսակցության քաղաքականությամբ։ Հենց այդ պրոցեսում ՍՍՀՄ ազգերի և ազգությունների հավասարությունն ու բարեկամությունը գործում են դիալեկտիկական և հարաճուն փոխադարձ կապի մեջ ու պետք է գնահատվեն որպես սոցիալիզմի շարժիչ ուժեր։*

*Լենինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառմամբ այդ ուժերի զարգացումն ու կատարելագործումը սովետական հասարակության, նրա ամեն մի մասի, ազգի ու ազգության սրբազան ու մշտական պարտականությունն են։*

Մոսկվա





# ՌՈՒՍ ՄԵԾ ՊՈԵՏՆ ՈՒ ՔԱՂԱՔԱՑԻՆ

(Ն. Ա. ՆԵԿՐԱՍՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

Ս. Կ. ԴԱՐՈՆՅԱՆ

Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## 1.

Ռուս գրականության ու հասարակական կյանքի պատմության մեջ պատվավոր տեղերից մեկն է գրավում Նիկոլայ Ալեքսեևիչ Նեկրասովը (1821—1878): Դեռ անցյալ դարի կեսերին Ն. Գ. Չեռնիշևսկին մարգարեաբար կանխատեսել է, որ Նեկրասովին վիճակված է դառնալ ռուս պոեզիայի «բոլորովին նոր ժամանակաշրջանի ստեղծողը»:

Շարունակելով Պուշկինի, Լերմոնտովի, Կոլցովի ռեալիստական տրադիցիաները՝ Նեկրասովը հասավ իր ժամանակի պոետական ամենաբարձր աստիճանին— հեղափոխական-դեմոկրատական պոեզիային, վիթխարի ազդեցություն գործելով 60-ական թվականների դեմոկրատ-պոետների համաստեղության վրա: Վշտի ու վրեժի նրա մուսան դարձավ ժողովրդի խոհերի ու իղձերի արտահայտիչը, որն օժտեց նրա ստեղծագործությունը բարձր քաղաքացիությամբ, իսկական ժողովրդականությամբ:

Նեկրասովի մահվան 25-ամյակին (1903) նվիրված հոդվածում Գ. Վ. Պլեխանովը նշում էր, որ Նեկրասովը «...հասարակական զարգացման... մի ամբողջ դարաշրջանի բանաստեղծական արտահայտիչն էր» Ռուսաստանում: Նա դարձավ ռուս մեծ հեղափոխական դեմոկրատների՝ Բելինսկու, Գերցենի, Չեռնիշևսկու, Դոբրոլյուբովի փառապանծ խմբի անդամը:

**Կոմս Գեյդենի հիշատակին** խորագրով իր հոդվածում (1907), ընդգծելով Նեկրասովի ծառայությունները կալվածատիրական-ճորտատիրական կարգերի դեմ մղված հեղափոխա-



կան-ազատագրական պայքարում, Վ. Ի. Լենինը գրել է. «Դեռևս Նեկրասովն ու Սալտիկովն էին ուսուցանում ռուս հասարակությանը՝ ճորտատեր-կալվածատիրոջ կրթվածության, արդուկած ու շպարած արտաքինի տակ տարբերել նրա գիշատիչ շահերը, ուսուցանում էին ատել նման տիպերի երեսպաշտությունն ու անհոգիությունը...» (Երկեր, հ. 13, էջ 54): Ավելի ուշ, **Դարձյալ մի արշավանք դեմոկրատիայի դեմ** հոդվածում (1912), Լենինը, խոսելով XIX դարի 60-ական թվականներին դեմոկրատների ու լիբերալների միջև ծագած պայքարի մասին, ընդգծում էր. «Անձամբ թույլ լինելով՝ Նեկրասովը տատանվում էր Չեռնիշևսկու և լիբերալների միջև, բայց **նրա ողջ համակրանքը Չեռնիշևսկու կողմն էր**» (Երկեր, հ. 18, էջ 396. ընդգծումը մերն է— Ս. Դ.): Լենինյան այդ գնահատականում արտահայտվել է գյուղացիական դեմոկրատիայի պոետ, հեղափոխական դեմոկրատիայի լագերի հասարակական գործիչ Նեկրասովի ստեղծագործության աշխարհայեցողության յուրօրինակությունը: Ահա թե ինչու ցարիզմի դեմ մղվող սուր գոտեմարտում, հանձին նրա, բոլշևիկները տեսնում էին իրենց մարտական դաշնակցին: 1912 թվականին «Правда»-ն (№ 203) գրում էր, թե Նեկրասովը «...մեծ է, քանի որ նրա պոետական խոսքն անբաժանելի էր ժողովրդի խոսքից, քանի որ նրա վիշտն անանջատ էր ժողովրդի մեծ վշտից, որով լցված էր ռուսական երկիրը, քանի որ նա հավատում էր ժողովրդի խավար մասսաներում խմորվող մեծ ուժերին, և միայն ժողովրդի արթնացումից էր ակնկալում շրջադարձը դեպի նոր, լավ օրերը»:

Իր ստեղծագործության վաղ շրջանի ոտանավորներից մեկում՝ **Հայրենիքում** (1846), Նեկրասովն արտահայտել է իր ցասումն ընդդեմ բռնության և ստրկության, ջերմ վշտակցությունը ծանր վիճակում ապրող ժողովրդին: Այցելելով հարազատ վայրերը, ուր անցել էր պոետի մանկությունը տիպիկ կալվածատեր-ճորտատիրոջ ընտանիքում, պոետը գրել է.

*Ահա և նրանք՝ այն վաղածանոթ վայրերը կրկին,*
*Ուր իմ հայրերի կյանքն անցավ ամուլ, և՛ դատարկ, և՛ սին,*
*Քեֆերում, անմիտ սնապարծության շարանում անվերջ,*
*Ցոփության մանր տիրանության մեջ:*
*Որտեղ հալածված, վհատ ճորտերի ամբոխն ահագին*
*Նախանձեց անգամ կալվածատիրոջ շների կյանքին:*
*Ուր վիճակված էր ինձ մի օր այս աշխարհ գալ այնտեղ,*
*Ուր սովորեցի ես էլ հանդուրժել, նույնպես և ատել...*[1]

Նեկրասովի կյանքում խիստ կարևոր իրադարձություն եղավ նրա ծանոթությունը Բելինսկու հետ, 40-ական թթ. սկզբներին. ծանոթություն, որը վերածվեց երկու համախոհների ու զինակիցների բարեկամության: Մինչև իր կյանքի վերջը Նեկրասովը հավատարիմ մնաց իր ուսուցչի նկատմամբ տածած սիրուն, նրան նվիրեց մի շարք հիանալի ստեղծագործություններ, ինչպես և **Վ. Գ. Բելինսկի** պոեմը (1855), ուր կան այսպիսի տողեր.

*Ազնիվ ծառայեց նա ճշմարտության,*
*Ու քաջ էր ոգով ինձնից առավել,*
*Դրա համար էլ ինձանից շատ*
*Դեպի գերեզման ճամփա բաց արեց...*
. . . . . . . . . . . . . . .
*Օ՜, ինչքա՜ն, ինչքա՜ն ազատ հոգու տեր*
*Որդիներ ունի հայրենիքը մեր,*
*Ինչքա՜ն որդիներ՝ անկաշա՜ռ, մաքո՜ւր...*

Բելինսկին առաջինն ընկալեց Նեկրասովի ստեղծագործության դեմոկրատական տենդենցներն ու հակաճորտատիրական ուղղությունը, տեսավ նրա մեջ պոետական հզոր տաղանդ: «Նեկրասովը տաղա՛նդ է, այն էլ ինչպիսի՜»,— հիացմունքով գոչեց մեծ քննադատը:

Բելինսկին ու Նեկրասովը դառնում են 40-ական թթ. գրական կյանքի ղեկավարները: Դրան շատ բանով նպաստում էին Նեկրասովի խմբագրությամբ լույս տեսնող ալմանախները, որոնց աշխատակցում էին ռուս գրականության լավագույն ներկայացուցիչներ՝ Բելինսկին, Գերցենը, Տուրգենևը, Դոստոևսկին, Գրիգորովիչը և նատուրալ դպրոցի (ինչպես այն ժամանակ անվանում էին ռեալիստական ուղղությունը) այլ գրողներ: Այդ ալմանախները, մանավանդ «Պետերբուրգյան ժողովածուն» (1846), մեծ համարում ունեին ընթերցողների շրջանում: Նեկրասովի «Պետերբուրգյան ժողովածուն» Բելինսկին գնահատել է որպես «աննախընթաց երևույթ» ռուս գրականության մեջ: Այդտեղ զգացվում էր Նեկրասովի տաղան-

1 *Այս և հետագա չափածո տողերը քաղված են տարբեր թարգմանիչների հրապարակումներից:*

դը՝ որպես «Современник»-ի ապագա խմբագրի: «Պետերբուրգյան ժողովածուում» հրատարակվել է Նեկրասովի **Օրորոցի երգը** համարձակ սատիրան, որի առթիվ Ֆ. Բուլգարինը գրավոր մատնություն էր ուղարկել տխրահռչակ Երրորդ բաժանմունք,՝ ուր ասված էր. «Նեկրասովն ամենահանդուգն ու մոլի կոմունիստն է... նա սոսկալի մարտնչում է հօգուտ հեղափոխության»:

1847 թվականից, Ի. Ի. Պանաևի հետ մեկտեղ, Նեկրասովն սկսում է հրատարակել «Современник» հանդեսը, որը դառնում է առաջավոր ռուս գրականության և հեղափոխական դեմոկրատիայի օրգանը: Բելինսկու աշխատակցությունը մարտական ուղղություն է տալիս հանդեսին: Եվ, նույնիսկ, «մռայլ յոթնյակի» (1848—1855) տարիներին Նեկրասովը ջանում էր պաշտպանել հանդեսը երկրում մոլեգնող քաղաքական ռեակցիայի կործանիչ ազդեցությունից: Իր մեծագույն վերելքը նեկրասովյան «Современник»-ն ապրեց 50—60-ական թթ., երբ նրան աշխատակցում էին Չեռնիշևսկին ու Դոբրոլյուբովը:

1856 թվականին Մոսկվայում լույս է տեսնում Ն. Նեկրասովի ոտանավորների ժողովածուն, որը, իրավամբ համարվում է «ռուս կլասիկ գրականության մեծագույն հուշարձանը» (Վ. Ե. Եվգենև-Մաքսիմով): Այդ ժամանակ ծանր հիվանդ Նեկրասովը բուժվում էր արտասահմանում՝ և ժողովածուի վիթխարի հաջողության մասին գիտեր իր բարեկամների նամակներից: 1856 թ. նոյեմբերի 5-ին ոտանավորների այդ ժողովածուի առթիվ Չեռնիշևսկին գրում էր Նեկրասովին. «Հիացմունքն ընդհանուր է: Հազիվ թե Պուշկինի առաջին պոեմները, Գոգոլի **Ռևիզորը** կամ **Մեռյալ հոգիները** այդպիսի հաջողություն ունեցած լինեին»: Մեծ քննադատի կարծիքով, Նեկրասովի ստեղծագործություններն «ավելի դրական արժանիքներ ունեն, քան Պուշկինի, Լերմոնտովի ու Կոլցովի ստեղծագործությունները»: Անշուշտ, սխալ կլիներ կարծել, թե Չեռնիշևսկին ինչ-որ չափով թերագնահատում էր նշված պոետներին: Ամենևին: Նեկրասովի պոեզիան գնահատելիս, Չեռնիշևսկին ելնում էր այն ժամանակվա՝ երկրում հասունացող հեղափոխական իրադրության ժամանակաշրջանի խնդիրներից: Նեկրասովն արտահայտում էր հենց հեղափոխական դեմոկրատիայի գաղափարներն ու տրամադրությունները:

Նեկրասովի գաղափարա-էսթետիկական դիրքերը պարզորոշ դրսևորվեցին **Պոետն ու քաղաքացին** հռչակավոր երկխոսության մեջ, որով սկսվում էր 1856 թ. ժողովածուն: Ամենից առաջ հենց այդ ոտանավորը գրավեց Չեռնիշևսկու ուշադրությունը: Որպես «Современник»-ի խմբագիր Նեկրասովին փոխարինելիս, նա մի փոքրիկ հոդված գրեց հանդեսում Նեկրասովի ժողովածուի լույս տեսնելու առթիվ և արտատպեց **Պոետն ու քաղաքացին** ոտանավորի լրիվ տեքստը, որն իրարանցում հարուցեց կառավարական շրջաններում: Հատուկ հրամանով արգելվեց ինչպես գրքի, այնպես էլ դրա որևէ հատվածի վերատպագրումը», իսկ «Современник»-ի հրատարակիչները խիստ նախազգուշացվեցին, որ առաջին իսկ նման արարքին կհետևի հանդեսի լրիվ արգելումը:

**Պոետն ու քաղաքացին** քաղաքացիական պոեզիայի մանիֆեստն է, պայքարի ոգով տոգորված, ազատաբաղձ քաղաքական քնարերգության դեկլարացիան: Նեկրասովն այստեղ պաշտպանում էր Ռիլեևի, Պուշկինի ու Լերմոնտովի հայացքները՝ հասարակական կյանքում պոետի տեղի ու կոչման մասին. պոետը պարտավոր է ակտիվ դեր խաղալ հասարակության վերակառուցման գործում, ի բարօրություն ժողովրդի. Նեկրասովի քաղաքացին կոչ է անում.

*Քաղաքացի՛ լեր: Քո արվեստի հետ*
*Ապրիր մերձավոր ընկերոջ համար,*
*Եվ քո հանճարը ենթարկիր հավետ*
*Համայնապարփակ Սիրո զգացման:*
. . . . . . . . . . . . . . .
*Պոետ կարող ես դու և չլինել,*
*Բայց քաղաքացի՝ պարտավոր ես միշտ:*
*Իսկ քաղաքացին ի՞նչ բան է, իրավ.*
*Դա հայրենիքի զավակն է սիրած:*

Նեկրասովի **Պոետն ու քաղաքացին** ոտանավորը վիթխարի դեր է խաղացել հեղափոխական-դեմոկրատական, հայրենասիրական պոեզիայի զարգացման գործում. այս է դրա պատմական նշանակությունը: Բայց այն չի կորցրել իր արդիականությունը նաև այսօր: Նեկրասովի մտքերն իր հայրենիքն անձնուրաց սիրող, ստեղծագործական ուժերը նրան նվիրող



պոետ-քաղաքացու մասին, ծառայում են նաև մեր արդիականությանը, մեր սոցիալիստական արվեստին:

1857 թվականի ամռանը Նեկրասովը վերադառնում է արտասահմանից և շարունակում գրական ու հասարակական ակտիվ գործունեությունը: Երկրում հասունանում էր հեղափոխական իրադրությունը, որի շունչն զգացվում էր այդ տարիների նրա այնպիսի ստեղծագործություններում, ինչպիսիք էին՝ **Խորհրդածություններ շքամուտքի մոտ**, **Երյոմուշկայի երգը**, **Վոլգայի ափին**, **Ասպետ մեկ ժամով**, **Մանուկների լացը** և այլն:

Լայն ժողովրդայնություն էր վայելում Նեկրասովի **Խորհրդածություններ շքամուտքի մոտ** ոտանավորը (1858), որն առաջին անգամ հրապարակվեց գերցենյան «Колокол»-ում (1860): Ոտանավորի եզրափակիչ մասը, որը հնչում էր որպես ապստամբության կոչ, երգի էր վերածվել. այն երգում էին հեղափոխականորեն տրամադրված երիտասարդները, ռուս հասարակության դեմոկրատական շրջանները.

*Նայի՛ր դու Վոլգային. ո՞ւմ հառաչն է հնչում*
*Ռուսական այդ հսկա գետի վրա:*
*Այդ հառաչը մեզ մոտ երգ են կոչում՝*
*Այդ՝ բուռլակներն են նավը քաշում առաջ...*
*Վո՛լգա, Վո՛լգա, քո ջրերով ելման*
*Չես ողողում այնպես դու մեր դաշտերն անծիր,*
*Ինչպես ժողովրդի տրտմությամբ է հիմա*
*Ափիբերան լցվել մեր հողն անծայրածիր:*
*Ուր ժողովուրդ՝ այնտեղ և հառաչանք... Հոգի՜ս,*
*Ի՞նչ է քո հառաչն այդ նշանակում:*
*Դու քո քնով ուժե՞ր ես կուտակում,*
*Թե՞ հնազանդ բախտի հին օրենքին՝*
*Ինչ որ կարող էիր, կատարել ես արդեն.*
*Ստեղծել ես երգեր նման հառաչանքի*
*Եվ հավետ քուն մտել հոգով անքեն...*

Սակայն այդ տարիներին մերթ ընդ մերթ Նեկրասովին համակում էր անվստահությունն իր ուժերի նկատմամբ— կկարողանա՞ արդյոք ինքը մտնել ժողովրդի ազատության ու երջանկության համար պայքարող ակտիվ մարտիկների շարքերը: Նա իրեն համարում էր «ասպետ մեկ ժամով», որին «վիճակված են... ազնիվ խոյանքներ, բայց ուժ չի տրված դրանց իրականացման համար»: Սակայն նույն ոտանավորում Նեկրասովն ասում է.

*Ջահելության ուժն, առնականությունն,*
*Կիրքը և մեծ զգացմունքն ազատության*
*Ներխուժում են քո արթնացած հոգին,*
*Գործելու տենչն է եռում քո հոգում...*

1861 թվականին գյուղացիների «ազատագրմանը» Նեկրասովն արձագանքում է մի շարք ոտանավորներով, որոնցում կասկածելի էր համարում իր էությամբ կողոպտչական այդ ցարական ռեֆորմը (**Ազատություն**, **Շևչենկոյի մահը**, **Տուրգենևին**, **Տարեցտարի նվազում են ուժերը** և այլ ոտանավորներում): **Ազատություն** ոտանավորում գյուղացիական դեմոկրատիայի երգիչը մերկացնում է կառավարության հայտարարած կեղծ ազատությունը.

*Ու ճորտական շղթաների տեղ, գիտեմ,*
*Մարդիկ ուրիշ կապանքներ են արդ գտել:*

Նույն թվականին Նեկրասովն ստեղծում է **Գյուղական երեխաները** ոտանավորը, որը համակված է ժողովրդի ավելի լավ ճակատագրի երազանքով, ներշված ու հարստահարված մարդկանց նկատմամբ տածած սիրով:

Բայց երկրում շուտով սկսվում են ռեակցիան, հեղափոխականների մասսայական ռեպրեսիաները: Պետրոպավլովյան ամրոցն են նետվում Չեռնիշևսկին ու նրա զինակիցներ Դ. Պիսարևը, Ն. Սեռնո-Սոլովևիչը, Մ. Նալբանդյանը և ուրիշներ: Ողբերգական այդ իրադարձություններին Նեկրասովն արձագանքում է **Ի գոհություն ասածս** ոտանավորով (1863), ուր ստեղծված է քաջարի ու տոկուն հեղափոխականի կերպարը. վերջինս աքսորավայր է գնում «շղթաներից տրորված ճանապարհով»:

Նեկրասովի համար ծանր էին «Современник»-ի ժամանակավոր արգելումը, Դոբրոլյուբովի մահը, հանդեսի ոգին հանդիսացող Չեռնիշևսկու ձերբակալությունը: Բայց նա չընկճվեց: Արդեն 1863 թ. գարնանը «Современник»-ի էջերից վերստին հնչեց հեղափո-

խական դեմոկրատների առաջնորդ Չեռնիշևսկու ձայնը՝ **Ի՞նչ անել** վեպում: Հանդեսը կատաղի պայքար էր մղում ռեակցիոն և լիբերալ մամուլի օրգանների դեմ:

Ռեակցիայի տարիներին Նեկրասովը գրում է մի շարք հիանալի ոտանավորներ— **Դոբրոլյուբովի հիշատակին, Երկաթուղին, Վերադարձ** և այլն, ինչպես նաև՝ **Սառնամանիք, կարմիր քիթ** պոեմը— 60-ական թվականների նեկրասովյան պոեզիայի այդ մեծարժեք գործը: Պոեմը, ասես, հաստատում էր Դոբրոլյուբովի հայտնի խոսքերն այն մասին, թե «ժողովուրդն ընդունակ է ամեն տեսակ վեհ ու ազնիվ զգացմունքների և արարքների»:

«Современник»-ի արգելումից հետո (1866) Նեկրասովը 1868 թ. սկզբներից դառնում է «Отечественные записки» հանդեսի խմբագիր: Այն շարունակում էր «Современник»-ի ուղղությունը: Նրան աշխատակցում էին այն ժամանակվա ականավոր ռուս գրողներ՝ Մ. Ե. Սալտիկով-Շչեդրինը, Ա. Ն. Օստրովսկին, Գ. Ի. Ուսպենսկին, Ֆ. Մ. Ռեշետնիկովը և ուրիշներ:

«Отечественные записки» հանդեսի էջերում 70-ական թթ. հրապարակվել են Նեկրասովի աչքի ընկնող ստեղծագործությունները— **Մայրը, Էլեգիան, Պոետին** ոտանավորները, **Պապիկը, Ռուս կանայք, Ժամանակակիցները** և այլ պոեմներ: Դրանցում նոր ուժով հնչեց հայրենիքի ճակատագրով մտահոգ պոետ-քաղաքացու արիաշունչ ձայնը: Նեկրասովի 70-ական թթ. գաղափարա-էսթետիկական հայացքներն առանձնապես որոշակի են արտացոլված **Էլեգիա** ոտանավորում (1874): Այնտեղ պոետը պատկերում է իր կերպարն արդեն ոչ թե որպես «ասպետ մեկ ժամով», այլ՝ որպես ժողովրդի երջանկության համար պայքարի ելնող մարտիկ:

*Բայց քանի դեռ ազգեր նեղված ու աստանդ*
*Կյանք են վարում խարազանին հնազանդ,*
*Որպես նիհար հոտեր այրված դաշտերում,—*
*Նրանց սև օրն պետք է ողբալ երգերում.*
*Նրանց պետք է սպասավորե միշտ Մուսան,*
*Եվ այդ դաշն է ամենից վե՜հ, սրբազա՜ն...*
. . . . . . . . . . . . . . . . .
*Ես հեգ ազգիս նվիրեցի իմ քնար.*
*Գուցե մեռնեմ նրան անհա՜յտ ու օտա՜ր,*
*Բայց ես նրան ծառայեցի— և խաղաղ,*
*Հանգիստ խղճով կըողջունեմ ցուրտ դագաղ:*
*Կըռի՜վ, կըռի՜վ ազգի համար եռանդուն:*
*Թող չըհաղթե ամեն կըռվող թըշնամուն,*
*Թող նա ընկնի... Բայց ամեն մեկն, սիրելի՛ք,*
*Պետք է, անշուշտ, նետվի կըռվի փոթորիկ...*

Նեկրասովի պոետական ստեղծագործության գագաթն է հանդիսանում **Ո՞վ է Ռուսիայում լավ ապրում** հռչակավոր պոեմը (1863—1877): Սոցիալական ընդգրկման լայնությամբ ու խորությամբ այդ պոեմն իրավամբ համարվել է 60—70-ական թվականների «ռուսական կյանքի հանրագիտարան». ճիշտ այդպես Բելինսկին պուշկինյան **Եվգենի Օնեգինը** բնորոշել է իբրև 20—30-ական թվականների ռուսական կյանքի հանրագիտարան: Նեկրասովի պոեմում, որպես գլխավոր հերոս, հանդես է գալիս ցարիզմի կողմից ճնշված, բայց ազատության ու երջանկության ձգտող ժողովուրդը: Հեղինակը, ինչպես ժողովրդի կյանքի պատկերները, նույնպես և առանձին կերպարներ, մասնավորապես՝ բունտար Սավելիին պատկերելիս լայնորեն օգտագործել է ժողովրդական բանահյուսության մոտիվներն ու կերպարները: Գրիշա Դոբրոսկլոնովի կերպարում Նեկրասովը մարմնավորել է հեղափոխական-դեմոկրատների՝ «ժողովրդի պաշտպանների» լավագույն գծերը: Պատահական չէ, որ Վ. Ի. Լենինը բազմիցս մեջբերումներ է կատարել հեղափոխական պայքարի պաթոսով և ժողովրդի երջանկության հավատով տոգորված այդ պոեմից:

Մինչև իր կյանքի վերջին օրերը Նեկրասովն աշխատել է **Ո՞վ է Ռուսիայում լավ ապրում** պոեմի վրա, որն այնպես էլ անավարտ է մնացել: Մահվանից առաջ նա լույս ընծայեց **Վերջին երգեր** ժողովածուն (1877), որը դարձավ նրա կարապի երգը:

Նեկրասովը վախճանվեց 1878 թ. հունվարի 8-ին (նոր տոմարով): Նրա թաղումը վերածվեց հասարակական վիթխարի ցույցի: Նեկրասովի գերեզմանի մոտ հանդես եկան Ֆ. Մ. Դոստոևսկին, հեղափոխական նոր սերնդի ներկայացուցիչները, ինչպես և Գ. Վ.



Պլեխանովը: Նեկրասովին լիովին համապատասխանում են նրա՝ **Դոբրոլյուբովի հիշատակին** ոտանավորի հետևյալ խոսքերը.

*Օ՜, ինչպիսի՜ պայծառ մտքի հաղթանակ հանգավ,*
*Ինչպիսի՜ սիրտ դադարեց բաբախելուց:*
. . . . . . . . . . . . . . . . .
*Լա՛ց, ռուսական երկի՛ր, բայց և հպարտացիր,*
*Որ քանի կանգուն ես երկնի ներքո՝*
*Դեռ զավակ չես ծնել նրա նման,*
*Որ տրված շնորհը պահեր միայն իրեն,*
*Որ պարգևած գանձը հոգու գեղեցկության*
*Բաշխեր մարդկանց այնքան առատորեն...*

2.

Ն. Ա. Նեկրասովն ստեղծագործել է փոթորկոտ մի դարաշրջանում, երբ, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած՝ ամեն մի սոցիալիստ պոետ էր և ամեն մի պոետ՝ սոցիալիստ: Երկրում տիրող հասարակական նոր վերելքի մթնոլորտում Նեկրասովը, որպես ռուս պոեզիայի հեղափոխական-դեմոկրատական ուղղության ղեկավար, դուրս է եկել հարազատ գրականության սահմաններից, դարձել համառուսաստանյան երևույթ, քանի որ այդ հասարակական վերելքն ընդգրկում էր Ռուսաստանի նաև ազգային «ծայրամասերը»: Ահա թե ինչու Նեկրասովի ազդեցությունը վիթխարի է ո՛չ միայն 60-ական թվականների ռուս դեմոկրատ պոետների (Ն. Օգարյովի, Ն. Դոբրոլյուբովի, Ա. Պլեշչեևի, Վ. Կուրոչկինի, Մ. Միխայլովի, Ն. Սեռնո-Սոլովևիչի և այլոց), այլև Ռուսաստանի մյուս ժողովուրդների դեմոկրատական պոեզիայի վրա, ժողովուրդներ, որոնք ռուս ժողովրդի հետ համատեղ, միացյալ ճակատով հանդես էին գալիս ցարական ինքնակալության գործադրած սոցիալական և ազգային ճնշման դեմ: Նեկրասովյան վշտի և վրեժի մուսան զգալի ազդեցություն է գործել նաև XIX դարի երկրորդ կեսի հայ քաղաքացիական պոեզիայի վրա:

Հայ բանաստեղծներից առաջինը, որն իր ստեղծագործության ոգով մոտ էր Նեկրասովին ու նրա գրական դպրոցին, Միքայել Նալբանդյանն էր՝ ռուս մեծ հեղափոխական-դեմոկրատների զինակիցն ու համախոհը, Գերցենի և Օգարյովի բարեկամը: Նրա, ինչպես և Նեկրասովի համար, բնորոշ է ազատագրական գաղափարների ու պոեզիայի ամենասերտ կապը, նրանց լիրիկայի կրքոտ պրոպագանդիստական տոնը, ցայտուն արտահայտված քաղաքական միտումը: Մինչև Նալբանդյանը հայ պոեզիայում դեռ ոչ ոք այդպես չէր երգել ազատաբաղձությունը, ոչ ոք հայերին այնպես ակտիվորեն չէր կոչել պայքարի՝ հանուն ազատության: Հեղափոխական ոգի հաղորդեց նա հայ քաղաքացիական քնարերգությանը: «Հյուսիսափայլ»-ի էջերից, որը ձգտում էր ընթանալ նեկրասովյան «Современник»-ի հետքերով, Ռուսաստանում հեղափոխական իրադրության նախօրյակին հնչեց Նալբանդյանի հռչակավոր **Ազատությունը**.

*— Ազատությո՜ւն,— գոչեցի,—*
*Թող որոտա իմ գլխին*
*Փայլակ, կայծակ, հուր, երկաթ,*
*Թող դավ դնե թշնամին,*
*Ես մինչ ի մահ, կախաղան,*
*Մինչև անարգ մահու սյուն,*
*Պիտի գոռամ, պիտի կրկնեմ*
*Անդադար, ազատությո՜ւն:*

Այս տողերը մարտական շարք մտան Օգարյովի համանուն ոտանավորի և Նեկրասովի **Պոետն ու քաղաքացին** ոտանավորի տողերի կողքին.

*Հո՛ւրն ընկիր հանուն քո հայրենիքի*
*Եվ դավանանքի և հանուն սիրո,*
*Եվ նահատակվիր անարատ սիրով.*
*Իզուր չե՛ս մեռնի... Գործն ամուր է հար,*
*Երբ նա ցողվում է արյունով արդար:*

Նալբանդյանի՝ դեռևս 50-ական թվականների կեսերին գրած բանաստեղծություններից մեկը՝ **Մուսայից մուսային** խորագրով, ձայնակցում էր Նեկրասովի՝ առաջին անգամ «Современник»-ում տպագրված (1854) **Մուսա** ոտանավորին: Նալբանդյանն այդ ժամա-

նակ Մոսկվայում էր գտնվում։ Նեկրասովը դառնությամբ նշում էր, որ ինքը երբեք չի լսել՝ քնքուշ մուսայի «մեղմ ու գգվալի, գողտրիկ տողերը»։

*Բայց ինձ վրա վաղ ծանրացած լուծ, կապանք,*
*Այլ Մուսայի՝ աչքից ընկա՞ծ, անգըգվա՞նք,*
*Որ միշտ կյանքում ուղեկցելով խեղճերին,*
*Հեգ վըկա է նըրանց ցավին, վըշտերին.*
*Այն Մուսայի՝ լացո՞ղ, տըրտմո՞ղ ու ցավո՞ղ...*

Իր մուսային դիմելով, Նալբանդյանը կշտամբում է նրան, որ երգում է միայն Հայաստանի դարավոր ցավն ու տառապանքը, իսկ ժողովուրդը կարոտ է ուրախ երգի.

*Հնչի՛ր, Մուսա՛, քո ոգեշարժ,*
*Աստվածային քընարը,*
*Թո՛ղ մի խնդա մայրն Հայաստան,*
*Թո՛ղ մի լսե քո ձայնը։*
*Թո՛ղ սրբե նա արտասուքը*
*Բազմադարյան երեսից,*
*Սատանայի անխիղճ գործը*
*Թող հեռացնե յուր մտքից...*

*Գոնե տեղիք տուր ասելու...*
*«Երջանիկ եմ, իմ զավակք,*
*Մուսաները ինձ սիրում են*
*Իմ կարոտի փոխանակ»...*

Բայց մուսան պոետին պատասխանում է, թե դեռ դրա ժամանակը չէ։

60-ական թվականների սկզբներին, երբ Նալբանդյանն արդեն հաստատ ու վստահ կանգնած էր հեղափոխական-դեմոկրատական դիրքերում, հրապարակում է իր **Մանկության օրեր** և **Ապոլոնին** հայտնի բանաստեղծությունները, որոնցում, Նեկրասովի ոգով, կըրկին արծարծում է պոետ-քաղաքացու և մարտիկի պարտքի թեման.

*Ես պիտի դուրս գամ դեպի հրապարակ*
*Առանց քնարի, անզարդ խոսքերով.*
*Ես պիտի գոչեմ, պիտի բողոքեմ,*
*Խավարի ընդդեմ պատերազմելով։*
*Ներկա օրերում այլ ի՞նչ սև քնար,*
*Սուր է հարկավոր կտրիճի ձեռքին.*
*Արյո՛ւն ու կրա՛կ թշնամու վերա,*
*Այս պիտի լինի խորհուրդ մեր կյանքին։*

Արդեն ժամանակակիցները, հանձին Մ. Նալբանդյանի, տեսնում էին 60-ական թվականների ռուս պոետ-դեմոկրատներին մոտ կանգնած մի պոետի։ Այսպես, 1878 թ. սկզբներին, Նեկրասովի մահից փոքր անց, «Հյուսիսափայլի» նախկին աշխատակից, բանաստեղծ Գևորգ Բարխուդարյանը հրապարակում է մի ոտանավոր՝ **Մ. Ն....-ի հիշատակին (նմանություն Նեկրասովին)**, որը գրված էր Նեկրասովի **Դոբրոլյուբովի հիշատակին** ոտանավորի ազդեցությամբ.

*Մահկանացու աշխարհ եկար,*
*Բայց երբ մեռար— անմահացար։*
*Քո հիշատակը թանկագին*
*Անչինչ և սուրբ է մեզ համար։*
*Քեզպեսներին կարոտագին*
*Վաղուց սպասում էր հայ աշխարհ։*
*. . . . . . . . . . . . . . . .*
*Իբրև լույս աստղ երևեցար*
*Հորիզոնի վրա հայության,*
*Ավետելով օրը պայծառ*
*Հայոց ազգի վերածնության։*



Նալբանդյանի արիաշունչ, հեղափոխական պաթոսով համակված հայրենասիրական լիրիկան խոշոր ազդեցություն ունեցավ ո՛չ միայն Գ. Բարխուդարյանի, այլ հյուսիսափայլցի մյուս բանաստեղծների, մասնավորապես Սմբատ Շահազիզի վրա, որը նույնպես տարված էր 60-ական թվականների ռուս-դեմոկրատական պոեզիայով։ Հետագայում, պատասխանելով Յու. Վեսելովսկու հարցաթերթիկին՝ նա գրել է. «Ընկերական շրջանում ես պատկանում էի այն երիտասարդների թվին, որոնք ամենից ավելի եռանդով հետևում էին ռուսական ժուռնալներին, օրինակ, «Սովրեմեննիկին» և նրա մեջ արծարծվող հարցերին... 1859 թվականի «Սովրեմեննիկից» է առնված «Լևոնի վշտի» երգերից մեկի էպիգրաֆը։ Կարդալով Դոբրոլյուբովի Милый друг, я умираю բանաստեղծությունը՝ ինձ մոտ միտք հղացավ գրելու սեփական մի բանաստեղծություն, որն ինձ մոտ սկսվում է գրեթե նույն բառերով, բայց հետո արդեն այլ բնույթ է կրում և անմիջապես վերաբերում է հայերի վիճակին»։

Նեկրասովի նման Սմբ. Շահազիզը կրկնում էր. «Նա՛խ քաղաքացի, և ապա պոետ» (**Բռնավոր սուլթան**)։ Իսկ **Պոետ, նյութապաշտ և քաղաքացի** ոտանավորում նա գրում էր.

*— Եկ, Պոետ, քաղաք, այնտեղ գո՛րծ գործիր,*
*Հասարակի բախտն ու օգուտն երգի՛ր,*
*Դու այն ժամանակ անդամ ես ազգի,*
*Եվ արժանի ես մեր սուրբ հարգանքի։—*
*Այս Քաղաքացին ասաց Պոետին,*
*Շտապ քայլելով գնաց յուր գործին։*

50—60-ական թվականներին, իր Պետերբուրգում գտնված ժամանակամիջոցում, «Современник»-ի աշխատակիցների հետ մտերմանում է հայ ականավոր պոետ, **Արաքսի արտասուքի** հեղինակ Ռափայել Պատկանյանը։ Նա շփվում է Նեկրասովի բարեկամի, «Современник»-ի հրատարակիչներից մեկի՝ Ի. Ի. Պանաևի հետ, որի մայրը հայ էր (Մարիա Լալայան)։ 1856 թվականին, երբ լույս տեսավ Նեկրասովի ոտանավորների ժողովածուն, Ռ. Պատկանյանը գրեց ոտանավորներ, դրանց համար բնաբան ընտրելով Նեկրասովի խոսքերը (**Անվնաս մարդ, Երկու բանաստեղծ**)։

Նեկրասովյան մոտիվների առկայությունը Մ. Նալբանդյանի, Ռ. Պատկանյանի և Ս. Շահազիզի ստեղծագործություններում նշվել է մինչհեղափոխական հայ քննադատության կողմից, մասնավորապես Բ. Իշխանյանի **Հասարակական գաղափարները Ռ. Պատկանյանի և Ս. Շահազիզի բանաստեղծությունների մեջ** մենագրությունում (Թիֆլիս, 1910)։

Նեկրասովի քաղաքացիական, դեմոկրատական պոեզիան իր ազդեցությունն է ունեցել նաև հայ պոետների հաջորդ սերնդի՝ Հովհաննես Հովհաննիսյանի, Հովհաննես Թումանյանի, Ալ. Ծատուրյանի, Հակոբ Հակոբյանի և այլոց վրա։

Դեռ Նեկրասովի կենդանության օրոք նրա ոտանավորները թարգմանվում կամ փոխադրվում էին հայերեն։ Նեկրասովյան լիրիկայի թարգմանիչներն են եղել՝ Ռ. Պատկանյանը, Հովհ. Հովհաննիսյանը, Ալ. Ծատուրյանը, Հովհ. Թումանյանը, Աթ. Խնկոյանը և ուրիշներ։ Բայց նրա ստեղծագործությունն առանձնապես շատ է թարգմանվում սովետական տարիներին։ Նեկրասովի թարգմանիչներից հիշարժան են հատկապես Ե. Չարենցը, Գ. Աբովը, Ն. Զարյանը, Գ. Սարյանը, Աշ. Գրաշին, Ս. Տարոնցին, Գ. Էմինը, Պ. Միքայելյանը, Պ. Սևակը, Հր. Հովհաննիսյանը, Վ. Դավթյանը և ուրիշներ։ 1946 թ. առանձին հրատարակությամբ լույս տեսավ Նեկրասովի **Ո՞վ է Ռուսիայում լավ ապրում** պոեմը՝ Գ. Աբովի թարգմանությամբ։ 1953 և 1962 թթ. հայերեն հրատարակվել են Նեկրասովի հատընտիր երկերի միհատորյակները։

Մեր ողջ երկիրը լայնորեն նշեց ռուս մեծ ժողովրդի փառապանծ զավակ Նիկոլայ Ալեքսեևիչ Նեկրասովի ծննդյան 150-ամյակը։ Եվ այդ առթիվ ցանկանում եմ վերհիշել Ն. Կ. Կրուպսկայայի հիանալի խոսքերը, «Որքան էլ հեռու լինեն մեր օրերից նեկրասովյան ժամանակները, Նեկրասովին մեզ հետ կապում են որոշակի հոգևոր կապերը... Նա մեր պոետն է, թեև մեզ նրանից զատում են երեք հեղափոխություններ, որոնք քարը քարի վրա չեն թողել հին կարգերից»։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

ՍԵԴԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

Սոցիալիստական հասարակարգում աշխատանքային պայմանների բարելավումը դիտվում է որպես աշխատանքի գիտական կազմակերպման անքակտելի մաս։

Աշխատանքային պայմաններն իրենցից ներկայացնում են աշխատանքային սանիտարա-հիգիենիկ և էսթետիկական բազմաթիվ գործոնների բա- միասնություն, որոնք պայմանավորում են այդ պրոցեսում մարդու օրգանիզմի վրա հոգեբանական-ֆիզիոլոգիական ազդեցությունը։ Հետևաբար, աշխատանքային պայմանների բնույթը կոմպլեքս ուսումնասիրություն է պահանջում։ Միայն բազմակողմանի վերլուծությունը հնարավորություն կընձեռի ճիշտ հասկանալու ու գնահատելու աշխատանքային պայմանների սոցիալ-տնտեսական էությունը, նշելու դրանց բարելավման ուղիները և այն վերածելու աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու կարևոր գործոնի։

Սոցիալիստական հասարակարգում, աշխատանքային պայմանների բարելավումը տնտեսական քաղաքականության առանցքային խնդիրներից մեկն է։ ՍՄԿԿ ծրագրում և XXIV համագումարի որոշումներում առանձնակի շեշտված է աշխատանքային պայմանների բարելավման և բանվորների բարձր աշխատունակության պահպանման նշանակությունն աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ «Աշխատանքի բնագավառում,— ասված է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1971—1975 թվականների հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներում,— պետք է ապահովել աշխատանքային պայմանների հետագա բարելավումը, բարձրացնել ձեռնարկությունների հագեցվածությունը անվտանգության տեխնիկայի և աշխատանքի պահպանման ժամանակակից միջոցներով»։

Չնայած աշխատանքային պայմանների բարելավման նպատակով կառավարության ցուցաբերած մեծ հոգատարությանը և այն օբյեկտիվ նախադրյալներին, որոնք ստեղծվում են սոցիալիստական սիստեմի առավելություններից, այնուամենայնիվ, մեր երկրում կան պրոֆեսիոնալ դարձած հիվանդություններ, որոնք որոշ իմաստով, հասարակության արտադրաուժերի ոչ բավարար զարգացման արդյունք են։ Բանն այն է, որ տեխնիկայի զարգացման ներկայիս մակարդակը դեռևս չի երաշխավորում մարդկանց վրա արտադրապայմանների անբարենպաստ ազդեցության լրիվ անհետացում։ Այդ է պատճառը, որ պրոֆեսիոնալ հիվանդություններն ու արտադրական տրավմատիզմը որոշ իմաստով պայմանավորված են արտադրաուժերի (առաջին հերթին՝ նրա նյութական տարրի) զարգացմամբ։ Հենց դրանով են բացատրվում արդյունաբերության ճյուղային առումով արտադրական տրավմատիզմի և պրոֆեսիոնալ հիվանդությունների ցուցանիշների տարբերությունները։

Աշխատանքային պայմանների բարելավման մեջ վճռական դերը պատկանում է տեխնիկական առաջադիմությանը։ «Տեխնիկական առաջադիմությունը ավելի հիգիենիկ կդարձնի աշխատանքային պայմանները, միլիոնավոր բանվորների կազատի ծխից, փոշուց ու կեղտից, կարագացնի կեղտոտ ու գարշելի արհեստանոցների վերածումը մաքուր, լուսավոր, մարդուն արժանի լաբորատորիաների» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 19, էջ 52)։ Լենինյան այս դրույթն է շեշտված ՍՄԿԿ ծրագրում։ «Նոր տեխնիկայի զարգացումը կօգտագործվի սովետական մարդու աշխատանքի պայմանները բարելավելու և հեշտացնելու, աշխատանքային օրը կրճատելու և կենցաղը բարեկարգելու, ծանր ֆիզիկական աշխատանքը, իսկ հետո էլ ամեն տեսակ ոչ որակյալ աշխատանքը վերացնելու համար» (ՍՄԿԿ ծրագիր, էջ 80)։

Տեխնիկական առաջադիմությունը փոխում է աշխատանքի բովանդակությունը, դրա հետ կապված փոխվում են նաև աշխատանքային պայմանները։ Արտադրաուժերի զարգացումը և նոր տեխնիկայի ներդրումը մարդուն աստիճանաբար ազատում են ֆիզիկական ծանր աշխատանքից և առողջության համար անբարենպաստ ազդեցությունից։ Այդ պայմաններում այլ է դառնում բանվորի ֆունկցիան։ Վերջինս ոչ այնքան անմիջականորեն ազդում է աշխատանքի առարկայի վրա, որքան հսկում և ղեկավարում է մեքենաների ու ագրեգատների գործունեությունը։ Միաժամանակ արտադրության առանձին տեղամասերի աշխատանքն այնքան խիստ է փոխադարձաբար կապակցվում, որ յուրաքանչյուր բանվորի պատասխանատվությունն զգալիորեն աճում է։

Արտադրապրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը, ազատելով բանվորին ֆիզիկական ծանր աշխատանքից, միաժամանակ բարձրացնում են նրա ներվային-հոգեկան ծանրաբեռնվածությունը, պահանջում նրանից երևույթների նկատմամբ առավել արագ և բարդ ռեակցիա, մեծ ուշադրություն և հմտություն, բարդ իրադրության մեջ արագ կողմնորոշվելու հատկություն։ Բացի այդ, դրանք հաճախ ծնում են նոր, ոչ նպաստավոր գործոններ, որոնք բացասաբար են անդրադառնում մարդու օրգանիզմի վրա։ Այդ իսկ պատճառով, աշխատանքի գիտական կազմակերպման միջոցառումներն իրականացնելիս, պետք է նկատի առնել աշխատանքային պայմանների նորմալացումը։ Դա պահանջում է, որպեսզի այդ միջոցառումների մշակման ժամանակ հաշվի առնվեն սանիտարա-հիգիենիկ պայմանները, նորմալացվեն ֆիզիոլոգիական-հոգեկան և էսթետիկ գործոնները. անհրաժեշտ է իմանալ, թե ինչպես և ինչ չափերով կարելի է օգտագործել աշխատանքի արտադրողականության բարձ-

րացման հնարավորությունները, առանց վնասելու բանվորների առողջությանը, նրանց աշխատանքային նորմալ գործունեությանը։

Աշխատանքի արտադրողականության մակարդակի վրա աշխատանքային պայմանների ազդեցության ուսումնասիրությունները ներկայումս ունեն պրակտիկ մեծ նշանակություն։ Ցավոք, պետք է նշել, որ դրանց ազդեցության աստիճանը որոշելու գիտականորեն մշակված մեթոդ առայժմ չկա։ Այդ նպատակով մի շարք հեղինակների հրատարակած նյութերում, աշխատանքային պայմանների բարելավման բացահայտ արդյունավետության մասին արտահայտվում են ընդհանուր մտքեր, որոնք, ճնշող մեծամասնությամբ, ապացուցվում և կամ հիմնավորվում են տրամաբանական եզրակացություններ անելով։

Ինչպես արդյունաբերության մյուս ճյուղերի, այնպես էլ տեքստիլ արդյունաբերության մեջ հիմնական մասնագիտության բանվորների աշխատանքային պայմանները բնորոշվում են աշխատանքային պրոցեսի բնույթով, կազմակերպման աստիճանով և բանվորին շրջապատող սանիտարա-հիգիենիկ պայմաններով։ Հանրապետության տեքստիլ արդյունաբերության մեջ տեխնիկական առաջադիմության արագ զարգացումը փոխել է ձեռքի և մեքենայական աշխատանքների հարաբերակցությունը հօգուտ մեքենայականի։ Օրինակ, եթե 1965 թ. մեքենայական աշխատանքներում զբաղված էին տեքստիլ արդյունաբերության բանվորների ընդհանուր թվի միայն 49 տոկոսը, ապա 1970 թվականին այն կազմեց 59,1 տոկոս։ Ձեռքի ծանր աշխատանքի այս թեթևացմամբ բարելավվել են աշխատանքային պայմանները, որի շնորհիվ հիվանդություններն ու անաշխատունակության օրերի թիվը զգալիորեն կրճատվել են։ Այսպես, բրդյա նուրբ գործվածքների կոմբինատում անաշխատունակության օրերի թիվը 1970 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, պակասել է 4, արտադրական տրավմատիզմի դեպքերը՝ 25, Վ. Ի. Լենինի անվան մետաքսագործվածքային կոմբինատում, համապատասխանորեն՝ 5 և 18 տոկոսով և այլն։ Բավական մեծ միջոցներ են ծախսվել հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում աշխատանքային պայմանները պատշաճ բարձրության վրա պահելու համար։ Բավական է նշել, որ միայն 1970 թվականին հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրությունում այդ նպատակների համար պլանավորված էր 1608,2 հազար ռուբլի, փաստացի ծախսը կազմել է 1784,2 հազար ռուբլի, այսինքն՝ 11 տոկոսով ավելի։ Միայն տեքստիլ արդյունաբերության մեջ այդ գումարները կազմել են համապատասխանաբար՝ 542,4 և 697,1 հազար ռուբլի։

Սակայն որքանո՞վ արդյունավետ են ծախսվել այդ գումարները և կա՞ն արդյոք աշխատանքային նորմալ պայմաններ տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում։ Պետք է խոստովանել, որ ոչ բոլորում։ Աշխատանքային պայմանների բարելավման նպատակով մեծ հաջողությունների է հասել Լենինականի «Մայիսյան ապստամբության» անվան տեքստիլ կոմբինատը, տրիկոտաժի № 2, ձեռնոցների ֆաբրիկան և մի շարք այլ ձեռնարկություններ։ Վերջին մի քանի տարում այս ձեռնարկություններում ավելացել է բուժսպասարկման կաբինետների թիվը, ընդարձակ, լուսավոր և կանաչապատ են դարձել արտադրական հրապարակները, նորմալացվել և սահմանված նորմաներին են մոտեցվել մեկ բանվորի աշխատանքի համար հատկացված արտադրական տարածությունների չափը և այլն։ Սակայն, մանրազնին ուսումնասիրությունները հանգեցնում են այն եզրակացության, որ հիշատակված



ձեռնարկություններում անելիքներ շատ կան։ Բավական է միայն նշել, որ թեթև արդյունաբերության մեջ 1970 թվականին տեղի է ունեցել 94 դժբախտ պատահար, որի հետևանքով անաշխատունակության օրերի թիվը կազմել է 2884 օր։ Ընդ որում, աշխատանքային անբարենպաստ պայմանների պատճառով առաջացած անաշխատունակության օրերի թիվը (մեկ բանվորի հաշվով) զգալի մեծ է։ Այս բոլորը պահանջում են, որպեսզի արդյունաբերական ձեռնարկություններում լուրջ ուսումնասիրվեն աշխատանքային պայմանները, և դրանց արդյունքների հիման վրա գիտական հանձնարարականներ մշակվեն արտադրության մեջ կիրառելու համար։

Հայտնի է, որ տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում հիմնական մասնագիտությունների (ջուլհակներ, մանողներ, թել փաթաթողներ) աշխատանքը խիստ միապաղաղ է, հետևաբար և հոգնեցուցիչ։ Այդ պատճառով, այս ճյուղի ձեռնարկություններում աշխատանքային պրոցեսը համեմատաբար դյուրին դարձնելու համար անհրաժեշտ է արտադրամասերում խստորեն պահպանել սանիտարա-հիգիենիկ նորմալ պայմաններ։ Ն. Ֆիրսմանի անվան հիգիենայի համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի ֆիզիոլոգները մշակել են տեքստիլ արդյունաբերության հիմնական արտադրամասերի սանիտարա-հիգիենիկ նորմալ պայմանները որոշող հատուկ նորմատիվներ։ Մեր հանրապետության տեքստիլ ձեռնարկությունների մեծամասնությունում սանիտարա-հիգիենիկ պայմանների փաստացի վիճակի ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ նորմաները հիմնականում չեն պահպանվում։ Բրդյա նուրբ գործվածքների, մահուդի, Վ. Ի. Լենինի անվան մետաքսագործվածքային կոմբինատների և «Արագած» գործվածքային ֆաբրիկայի լաբորատորիաների տվյալներով ու առանձին կատարված չափումներով պարզվում է, որ հանրապետության տեքստիլ ձեռնարկությունների արտադրամասերում սանիտարա-հիգիենիկ պայմանները լիովին չեն նպաստում բարձր արտադրողական աշխատանքի իրականացմանը։ Բարձր է օդի փոշոտության աստիճանը, նորմայից ավելի է խոնավությունը, զգալի չափերի է հասնում արտադրական աղմուկը և այլն։

Աշխատանքային յուրաքանչյուր գործունեություն, որն իրականացվում է երկար ժամանակ, որպես կանոն, ուղեկցվում է հոգնածությամբ, որն իր ազդեցությունն է թողնում մարդու աշխատունակության, հետևաբար նաև նրա աշխատանքային գործունեության վերջնական արդյունքի վրա։ Արտադրական հոգնածության, աշխատունակության և աշխատանքի արդյունքի չափերի միջև գոյություն ունի ուղղակի կապ։ Տեքստիլ արդյունաբերության հիմնական մասնագիտությունների բանվորների արտադրական հոգնածության աստիճանը մնացած հավասար պայմաններում, կախված է նրանց կողմից կատարվող արտադրական օպերացիաների քանակից։ Այսպես, ջուլհակների մոտ, որոնք ժամում միջին հաշվով, վերացնում են թելի կտրվածքի 35 դեպք, լույսի նրկատմամբ պատասխան ռեակցիայի տևողությունը (որը բնորոշում է հոգնածության աստիճանը), կազմում է 195 սիգմ, իսկ երբ թելի կտրվածությունը վերացնելու դեպքերի թիվն ավելացվում և հասցվում է 46, 60 կամ 64 դեպքի, ապա այդ ֆիզիոլոգիական պրոցեսը երկարաձգում է, կազմելով համապատասխանորեն՝ 279, 302, 335 սիգմ։ Անալոգիկ երևույթ նկատվում է նաև թել փաթաթողների և ոլորողների մոտ։ Այսպես, թելի կտրվածության վերացման դեպքերի թվի ավելացումը— մեկ ժամում 168 դեպքից մինչև 238-ի, լույսի նր-

կատմամբ պատասխան ռեակցիան 272-ից բարձրանում է 395 սիգմի։ Նշված ուսումնասիրությունները հանգեցնում են այն եզրակացության, որ հոգնածությունը կանխելու միջոցով տեքստիլ արդյունաբերության հիմնական մասնագիտությունների բանվորների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու գլխավոր ուղին թելի կտրվածության դեպքերի կրճատումն է։

Աշխատանքի արտադրողականության կախվածությունը արտադրական աղմուկից նույնպես ուղղակի է։ «Արագած» բամբակագործվածքային ֆաբրիկայում մեր կատարած ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ այստեղ գործվածքային հաստոցների աշխատանքից առաջացած աղմուկը հասնում է 110 դեցիբելի, այն դեպքում, երբ Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում (հատուկ ռետինե հարմարանքների օգտագործման շնորհիվ), այն կազմում է մոտ 100 դեցիբել։ Թերևս դա է պատճառը, որ «Արագած» գործվածքային ֆաբրիկայի ջուլհակների աշխատանքի արտադրողականությունը մոտ 4 տոկոսով ցածր է տեքստիլ կոմբինատի ջուլհակների աշխատանքի արտադրողականությունից։

Բրդյա նուրբ գործվածքների, Վ. Ի. Լենինի անվան մետաքսագործվածքային, տրիկոտաժի մի շարք ձեռնարկությունների աշխատանքային պայմանների ներկա վիճակի ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ արտադրամասերում աղմուկը գերազանցում է սահմանված նորմաները 10—15 տոկոսով։ Ընդ որում, աղմուկը հիմնականում առաջանում է մեծ արագությամբ պտտվող իլիկներ ունեցող թել մանող, գզող, ոլորող հաստոցներից, ինչպես նաև գործվածքային հաստոցների սանրերի շարժումից։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ արտադրական աղմուկի բացասական ազդեցությունը հնարավոր է առայժմ եթե ոչ լրիվ, ապա գոնե մասնակիորեն կանխել։ Օրինակ, ինչպես նշվեց, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում ղեկավարության և ինժեներա-տեխնիկական անձնակազմի համատեղ ջանքերով, մեծ աղմուկ արձակող թել մանող և ոլորող հաստոցների հատուկ մասերում դրվեցին ռետինե օղակներ, որոնք շարժման ընթացքում իլիկների հպումը և դրանից առաջացած աղմուկը մասնակիորեն մեղմացրին։ Բացի այդ, նշված ռետինե օղակների օգտագործմամբ թուլացավ նաև հաստոցների աշխատանքի ընթացքում առաջացած ցնցումը, որը բանվորուհիներին տհաճություն էր պատճառում։

Այդպիսի օղակներ օգտագործվեցին մի շարք տրիկոտաժե ձեռնարկություններում ևս։ Սակայն հետագայում, այդ չափազանց էժան և օգտավետ միջոցառումը մոռացվեց և ներկայումս այն գրեթե չի օգտագործվում։ Նման երևույթը պրակտիկ աշխատողները բացատրում են այն բանով, որ ռետինե օղակների օգտագործմամբ աղմուկը կրճատվում է աննշան չափով և դրա համար արդյունավետ չէ։ Բայց պետք է նկատի առնել, որ թեթև արդյունաբերության ձեռնարկություններում արտադրական աղմուկի կրճատման դեռևս մեկ ընդհանուր միջոց չի մշակվել։ Բանվորի օրգանիզմի վրա արտադրական աղմուկի ազդեցությունը փոքրացնելու համար պետք է օգտագործել միմյանց լրացնող միջոցներ։ Օրինակ, ռետինե օղակների հետ միաժամանակ, անհրաժեշտ է ձեռք բերել աղմուկը խլացնող ականջակալներ։ Վերջիններիս մասսայական ներդրումն ու օգտագործումը հիշյալ ճյուղի ձեռնարկություններում, բանվորների առողջական վիճակի և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար խիստ անհրաժեշտ են։



Սակայն ի՞նչն է պատճառը, որ մեր հանրապետության տեքստիլ-տրիկոտաժի ձեռնարկությունների ղեկավարները չեն ձեռնարկում արտադրական աղմուկը խլացնելու անհրաժեշտ գործին։ Գուցե միջոցնե՞րը չեն բավականացնում։ Դիմենք փաստացի տվյալներին։ Արտադրական աղմուկի կրճատման միջոցառումների համար կատարվող ծախսերը, մեր կարծիքով, պետք է իրականացվեն «ծախսեր ուղղված արտադրության մեջ հիվանդությունների կանխմանը»— հոդվածով։ Տեսնենք թե առանձին ձեռնարկություններում ինչպես են ծախսվել վերոհիշյալ հոդվածով նախատեսված գումարները։ Լենինականի Ս. Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկայում այդ նպատակի համար պլանով առանձնացվել է 16 հազար ռուբլի, մինչդեռ ծախսը կազմել է ընդամենը 6 հազար, այսինքն՝ նախատեսվածից ավելի քան 2,6 անգամ պակաս։ Կիրովականի մանվածքային ֆաբրիկան նախատեսել է տրամադրել 19 հազար ռուբլի, ծախսել է 16 հազարը, «Արագած» գործվածքային ֆաբրիկան 5 հազար ռուբլու փոխարեն օգտագործել է միայն 1,5 հազարը և այլն։ Մի շարք տրիկոտաժի ձեռնարկություններ հիշատակված գումարներն օգտագործել են ավելի պակաս չափով՝ 20—25 տոկոսով։ Հետևաբար, հարկավոր է դրանք ըստ նպատակի և արդյունավետ օգտագործել։

Աշխատանքային պայմանների բարելավումը ենթադրում է նաև արտադրամասերում և անմիջապես բանվորական տեղում նորմալ լուսավորության ապահովում։ Ֆիզիոլոգները հաստատում են, որ նորմալ լուսավորության շնորհիվ արագանում է նյութափոխանակությունը, նորմալ են գործում շնչառական օրգանները և արյան ու հյուսվածքների միջև նորմալ գազափոխանակություն է կատարվում, որոնք բարձրացնում են օրգանիզմի կենսունակությունը։ Եվ, ընդհակառակը, լույսի պակասը հաճախ առաջացնում է հոգնածություն, ալարկոտություն, ակտիվության իջեցում և այլն։ Այս հարցի շուրջ հրապարակված նյութերից բխում է, որ աշխատանքի արտադրողականության և նորմալ լուսավորության միջև եղած կապը նույնպես ուղղակի է։ Օրինակ, Հանրապետության տրիկոտաժի ձեռնարկություններում (նոր տեխնիկայի ներդրման հաշվետվությունների հաշվարկների համաձայն) ցերեկային լուսավորություն անցկացնելու շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 3—5 տոկոսով։ Պետք է նշել, որ մեր տեքստիլ-տրիկոտաժի ձեռնարկությունների արտադրամասերը լուսավորվում են ցերեկային լուսավորությամբ, սակայն հարցն այն է, որ պահպանվեն աշխատանքային պրոցեսն իրականացնելու համար անհրաժեշտ նորմալ լուսավորության պահանջները։ Նշված ձեռնարկությունների մեծ մասում լուսավորությունը հասնում է 240—280 լյուքսի, մինչդեռ ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ տեքստիլ արդյունաբերության մեջ աշխատանքային պայմանների ռացիոնալացումը պահանջում է այն հասցնել 320—400 լյուքսի։ Հարկավ, այս միջոցառումն իրականացնելու համար զգալի ծախսումներ են պետք, սակայն չպետք է մոռանալ, որ այդ ծախսերը աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, աշխատունակության օրերի թիվը կրճատելու շնորհիվ կարճ ժամանակում և մեծ հավելույթով կփոխհատուցվեն։

Տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունների համար կարևոր է նաև բանվորների անաշխատունակության օրերի չափերի վրա աշխատանքային պայմանների ազդեցության բացահայտումը։

Հանրապետության տեքստիլ-տրիկոտաժի արդյունաբերության բանվորների ժամանակավոր անաշխատունակության դեպքերի որոշ տոկոսը կապված է աշխատանքային անբարենպաստ պայմանների հետ։ Ընդ որում, աշխատանքային պայմանների վիճակից մեծ չափերով կախված են հիվանդությունների հաճախականությունն ու տևողությունը։ Դա նշանակում է, որ հանրապետության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում աշխատանքային պայմանների բարելավման միջոցով անաշխատունակության օրերի և դեպքերի կրճատումը աշխատաժամանակի տնտեսման անհամեմատ արդյունավետ ուղի է։

Հաշվարկները ցույց են տալիս, որ միայն 1970 թ. թույլ տված ժամանակավոր անաշխատունակության օրերի կիսով չափ կրճատումը, աշխատանքի արտադրողականությունը հիշված ճյուղերում կավելացներ 12—14 տոկոսով։

Հետաքրքրական է, որ վերջերս աշխատանքի միութենական ինստիտուտը հատուկ հետազոտության միջոցով պարզել է, որ Միության տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում հիմնական մասնագիտությունների բանվորների աշխատանքային մասնագիտական միջին ստաժը չափազանց կարճ է՝ 7—9 տարի։ Ջուլհակի մասնագիտության նույնատիպ հետազոտություն՝ աշխատուժի հոսունության բուն պատճառների բացահայտման նպատակով մենք կատարել ենք բրդյա նուրբ գործվածքների կոմբինատի գործվածքային արտադրամասում։ Արդյունքում ստացվեց, որ ջուլհակների աշխատանքային մասնագիտական ստաժը կազմում է 7,3 տարի։ Հիշատակված հետազոտությունների եզրակացությունների համաձայն տեքստիլ ձեռնարկությունների հիմնական մասնագիտությունների բանվորներն իրենց պրոֆեսիոնալ աշխատունակությունը կորցնում են 45—50 տարիքից և 10—15 տարի շուտ անցնում են այլ, ավելի թեթև աշխատանքի։

Այս երևույթը, մեր կարծիքով, միաժամանակ աշխատանքային անբարենպաստ պայմանների արդյունք է։ Այսպես, բրդյա նուրբ գործվածքների կոմբինատում և մահուդի ֆաբրիկայում աշխատուժի հոսունության պատճառների ուսումնասիրությունները պարզեցին, որ այդ ձեռնարկությունների՝ աշխատանքից ազատվող բանվորների մոտ 16 տոկոսն աշխատանքային ոչ բավարար պայմանների պատճառով են թողնում արտադրությունը։

Տեքստիլ արդյունաբերության ձեռնարկությունների բանվորների առողջական վիճակի, կենսունակության և բարձր աշխատունակության պահպանման խնդիրը համակողմանի կարելի է լուծել այդ բոլորի հետ միասին աշխատանքային պայմանների առավել բարելավման միջոցով միայն։





Հ. Ա. ՏՈՆՈՅԱՆ

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԿՈՇԻԿԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ՍՄԿԿ XXIV համագումարը կարևորագույն խնդիր առաջադրեց նոր հնգամյակում աննախընթաց ծավալելու սպառման առարկաների արտադրությունը, որը սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման հիմք կհանդիսանա։

Բավական է նշել, որ հնգամյակում (1970—1975 թթ.) թեթև արդյունաբերությանը հատկացվում են գրեթե 2 անգամ ավելի միջոցներ, քան անցյալ հնգամյակում (8,7 մլրդ ռուբլի)։ Ընդ որում, դրանք պետք է իրացվեն ո՛չ միայն ժամանակին, այլև ճիշտ ու արդյունավետ։ Միաժամանակ հարց է դրվում լրիվ և համակողմանի օգտագործել առկա ռեզերվները և դրա հիման վրա բարձրացնել հասարակական արտադրության արդյունավետությունը։ Այդ խնդիրների լուծումը խոշոր չափով պայմանավորված է գիտա-տեխնիկական առաջընթացի և արտադրության նյութա-տեխնիկական մակարդակի բարձրացմամբ։

ՍՄԿԿ XXIV համագումարում Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Այն դարաշրջանում, երբ ավելի ու ավելի մեծ չափերով է դրսևորվում գիտության՝ որպես անմիջական արտադրաուժի, դերը, գլխավոր են դառնում ո՛չ թե նրա առանձին նվաճումները, որքան էլ փայլուն լինեն դրանք, այլ ամբողջ արտադրության գիտա-տեխնիկական բարձր մակարդակը» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը ՍՄԿԿ XXIV համագումարին, 1971, էջ 86)։

Արդյունաբերության բոլոր ճյուղերի համար այժմ բնորոշ են արտադրության մասնագիտացման և տեխնիկական առաջընթացի փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը։ Այս կապակցությամբ Մարքսը գրել է. «Արդի արդյունաբերությունը երբեք չի քննում և մեկնաբանում արտադրության մի պրոցեսի առկա ձևը, իբրև վերջնական ձև։ Այս պատճառով նրա տեխնիկական պատվանդանը հեղափոխական է... նա անընդհատ հեղափոխում է աշխատանքի բաժանումը հասարակության ներսում...» (Կապիտալ, հ. I, 1939, էջ 455—456)։

Զարգացնելով աշխատանքի բաժանման և տեխնիկական առաջադիմության փոխադարձ կապի մարքսյան դրույթը, Լենինը շեշտում էր, որ տեխնիկական առաջադիմության կարևորագույն նախապայմանը մասնագիտացման հետագա խորացումն է։ «...միայն արտադրության պրոցեսի անդամատելն ու մի շարք զուտ մեխանիկական ամենապարզ գործառնությունների վերածելը հնարավորություն է տալիս մեքենաներ մուծել, որոնք սկզբում կիրառվում են ամենապարզ գործառնությունների համար և միայն աստիճանաբար տիրապետում են ավելի բարդ գործառնությունների» (Երկեր, հ. 3, էջ 549)։

Երևույթների փոխադարձ կապի այս ընդհանուր օրինաչափության դրսևորման կոնկրետ ձևերը կապված են ճյուղի տեխնոլոգիական և արտադրության կազմակերպման առանձնահատկությունների հետ։

* * *

Կոշիկի արդյունաբերության մեջ տեխնիկական առաջընթացի ուղիները, վերջին հաշվով, պայմանավորված են արտադրության տեխնոլոգիայի կատարելագործմամբ։ Իսկ կոշիկի արտադրության տեխնոլոգիայի կատարելագործումը, իր

հերթին, կապված է նախապատրաստվածքների և առանձին դետալների մշակման պրոցեսներն առանձնացնելու, ավտոմատների և կիսավտոմատների անընդմեջ սիստեմով գործելու հետ։

Վերջին տարիներին արտադրամիավորումների կազմակերպմամբ լայն հնարավորություններ ստեղծվեցին ինչպես միջգործարանային, նույնպես և ներգործարանային մասնագիտացումը վարելու այնպես, որ տեխնոլոգիական պրոցեսները տրոհվեն իրենց բաղկացուցիչ մասերի և դրանք կանոնավոր կատարվեն մեքենայական անընդմեջ սիստեմների միջոցով։ Արտադրամիավորումների կազմակերպման մյուս կարևոր կողմն այն է, որ ինչպես խոշոր, այնպես և միջին ու մանր ձեռնարկությունները հնարավորություն են ստանում անընդհատ համալրելու մեքենայական պարկը և սիստեմատիկաբար բարձրացնելու աշխատանքի տեխնիկական զինվածության մակարդակը։

Արտադրապրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և աշխատանքի տեխնիկական զինվածության աճի մասին որոշակի գաղափար է տալիս ֆոնդազինվածության ցուցանիշը։ Հայկական ՍՍՀ կոշիկի «Մասիս» ֆիրմայի կազմում ընդգրկված համարյա բոլոր ձեռնարկություններում ֆոնդազինվածության միջին տարեկան աճը միավորման կազմակերպումից հետո 1,2—1,4 անգամ գերազանցել է նախորդ տվյալներին։

Ֆոնդազինվածության աճը Հայկական ՍՍՀ«Մասիս» ֆիրմայում և ոչ-արդյունաբերական մինիստրությունների կոշիկի ձեռնարկություններում (1963—1969 թթ.)

| Ձեռնարկություններ | 1962 թ. | 1967 թ. | 1969 թ. | 1970 թ. | 1969 թ. 1962 թ. նկատմամբ (տոկոսներով) |
|---|---|---|---|---|---|
| I Կոշիկի «Մասիս» ֆիրմա | 351 | 415 | 563 | 612 | 174 |
| այդ թվում՝ | | | | | |
| № 1 մասնաճյուղ | 201 | 299 | 453 | 514 | 254 |
| № 2 մասնաճյուղ | 225 | 365 | 319 | 373 | 165 |
| Գլխավոր ֆաբրիկա | 409 | 552 | 561 | 660 | 162 |
| № 4 մասնաճյուղ | 220 | 293 | 250 | 281 | 128 |
| № 7 մասնաճյուղ | 281 | 338 | 362 | 338 | 120 |
| № 10 մասնաճյուղ | 180 | 220 | 253 | 277 | 154 |
| № 11 մասնաճյուղ | 265 | 293 | 309 | 327 | 123 |
| II Կենցաղ-սպասարկման մինիստրության օբյեկտներում | — | 107 | 109 | 98 | — |
| III Սոցապ մինիստրության օբյեկտներում | — | 63 | 61 | 63 | — |
| IV Խուլ-համրերի միության օբյեկտներում | — | 51 | 56 | 59 | — |

Ինչպես երևում է աղյուսակի տվյալներից[1], «Մասիս» ֆիրմայի կազմում ընդգրկված կոշիկի ֆաբրիկաների ֆոնդազինվածությունը 3—4 անգամ ավելի բարձր է եղել, քան ոչ արդյունաբերական մինիստրությունների օբյեկտներում։ Իրականում այդ թվերն ավելի մեծ կլինեին, եթե հաշվարկը կատարվեր հիմնական ֆոնդերի ակտիվ մասը ոչ թե ընդհանրապես բանվորների, այլ ամենամեծ հերթափոխում զբաղված բանվորների թվին հարաբերելու միջոցով։ Այնուհետև կոշիկի խոշոր ֆաբրիկաներում գոյություն ունի հերթափոխային (իհարկե ոչ բոլոր արտադրամասերում և տեղամասերում), իսկ ոչ արդյունաբերական մինիստրությունների օբյեկտներում միայն միահերթ աշխատանք։ Հետևաբար աղյուսակի տվյալները վերահաշվարկելու դեպքում կպարզվեր, որ «Մասիս» ֆիրմայում և դրա ֆաբրիկաներում առանձին վերցրած ֆոնդազինվածությունը 4,5—6 անգամ ավելի բարձր է, քան սոցապ մինիստրության և խուլ-համրերի ընկերության օբյեկտներում։

Բացի այդ, ոչ արդյունաբերական մինիստրությունների կոշիկ արտադրող բոլոր օբյեկտներն ընդգրկված չեն հաշվարկում։ Բանն այն է, որ կոշիկ արտադրող տեղամասերի և արտադրամասերի ճնշող մեծամասնությունը զուրկ է իրավաբանական անձի իրավունքներից և ինքնուրույն հաշվապահական հաշվեկշռից։ Դրանց մի զգալի մասը գործում է կազմակերպչական բնույթի

1 Աղյուսակը կազմված է ձեռնարկությունների փաստաթղթերի հիման վրա։ Ցուցանիշները հաշվարկված են՝ բանվորների թիվը հիմնական ֆոնդերի ակտիվ մասին հարաբերելու միջոցով։



կոմբինատներում, որոնք, միաժամանակ, արտադրում են այլ, կոշիկի արդյունաբերության հետ ոչ մի առնչություն չունեցող արտադրանք։ Այդ իսկ պատճառով հիմնական ֆոնդերի և, մասնավորապես, դրանց ակտիվ մասի հաշվարկ կատարել չէինք կարող։

Աղյուսակում ընդգրկված են միայն կոշիկ արտադրող օբյեկտները և այն արտադրամասերն ու տեղամասերը, որոնց արտադրանքը կազմում է ձեռնարկության ընդհանուր համախառն արտադրանքի 2/3-ից ոչ պակաս։

Սկզբնական շրջանում կոշկի «Մասիս» ֆիրմայի օբյեկտներում, մնացածների համեմատությամբ, ֆոնդազինվածությունը խիստ բարձր լինելով հանդերձ, հետագայում ևս այդ տենդենցն ինտենսիվ շարունակվել է մի շարք մասնաճյուղերում (№№ 1, 2, 3, 7), ութ տարիների ընթացքում այն աճել է 1,5—2 անգամ, որը թեթև արդյունաբերության համար կարելի է ռեկորդային համարել։ Արտադրության առարկայական մասնագիտացման խորացման կապակցությամբ մի շարք մասնաճյուղերում արդյունաբերա-արտադրական հիմնական ֆոնդերի կազմում զգալիորեն աճել է ակտիվ մասի տեսակարար կշիռը։

Այստեղ պետք է որոշ վերապահում անենք։ Մեր կարծիքով, տնտեսագիտական գրականության մեջ հիմնական ֆոնդերի կառուցվածքի, ինչպես նաև այդ առումով ֆոնդահատույցի փոփոխությունները քննարկելիս ավելի շատ ուշադրություն է նվիրվում հայեցողական, տրամաբանական կողմին, քան փոփոխություններ հարուցող ճյուղային առանձնահատկություններին և տնտեսավարման կոնկրետ պայմաններին։ Մասնավորապես վերջին շրջանում հանրապետության կոշիկի արդյունաբերության ձեռնարկություններում այն տենդենցն է նկատվում, որ շենքերը, կառուցվածքները և տրանսպորտային սարքավորումները համարժեքվում են ժամանակակից մեքենայական սիստեմներին և միջանցիկ կոնվեյերներին։ Դրա հետ կապված առանձին մասնաճյուղերում հիմնական ֆոնդերի կազմում ակտիվ մասի տեսակարար կշիռն իջել է, պակասել է նաև ֆոնդահատույցը։ Բնական է, որ այդ երևույթն ընդհանուր բնույթ ունենալ և որևէ չափով օրինաչափ լինել չի կարող։ Ըստ երևույթին ոչ հեռու ապագայում այս երկու ցուցանիշներում կառաջանա ինտենսիվ աճի տենդենց։

Արտադրության համակենտրոնացման ու մասնագիտացման և այդ կապակցությամբ ֆոնդազինվածության ու ֆոնդահատույցի դինամիկայի հարցը քննարկելիս, պետք է նկատի ունենալ ո՛չ միայն ճյուղի, այլև յուրաքանչյուր ձեռնարկության առանձնահատկությունները և աշխատանքի կոնկրետ պայմանները։ Բացի այդ, կոշիկի արդյունաբերության մեջ ևս (իհարկե, ոչ այն չափով, ինչ մեքենաշինության մեջ է) ֆոնդազինվածությունն առավել ընդհանրական ցուցանիշ է և արտահայտում է միայն ընդհանուր օրինաչափությունը։

Հայկական ՍՍՀ կոշիկի արդյունաբերության մեջ տեխնիկական առաջընթացի կարևորագույն ուղղություններից մեկը արտադրության քիմիացումն է։ Այն հիմնականում արտահայտվում է, մի կողմից՝ սինթետիկ փոխարինիչների առավել լայն կիրառմամբ, մյուս կողմից՝ բուն կոշիկի պատրաստման արտադրապրոցեսները քիմիական եղանակով իրականացնելով։ Այս տեսակետից կոշիկի արդյունաբերության մասնագիտացման պրոբլեմներն արդեն դուրս են գալիս ներճյուղային նեղ շրջանակներից և ավելի են կապվում հարակից, առաջին հերթին՝ քիմիական արդյունաբերության ճյուղերի լայն համակարգի հետ։

Ժամանակակից պայմաններում սպառողների պահանջները էժան, թեթև, գեղեցիկ և դիմացկուն կոշկեղենով բավարարելը հնարավոր է միայն համապատասխան սինթետիկ փոխարինիչների օգտագործմամբ։ Մասնավորապես Հայկական ՍՍՀ-ում, որտեղ գյուղատնտեսական հումքատեսակների արտադրության հետագա աճը սահմանափակ է, քիմիան դառնում է կոշիկի արդյունաբերության հիմնական հումքային բազան։ Իսկ քիմիական արդյունաբերությունը հանրապետությունում զարգացել է այն աստիճան, որ կարող է լիովին բավարարել համապատասխան պահանջները նաև Միության մասշտաբով։ Միայն վերջին 5 տարիների ընթացքում Կիրովի անվան քիմիական կոմբինատի և պոլիմերների համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտի կոլեկտիվների ջանքերով մշակվել և կոշիկի արդյունաբերության մեջ ներդրվել են 11 տեսակի քլորոպրենային կաուչուկ և լատեքսներ։ Ցածրաջերմային ՆՏ նաիրիտը, որն արտադրվում է Հայաստանում, Միության մասշտաբով լայնորեն կիրառվում է որպես սոսնձակցման հիմնական նյութ և կարելի է ասել գործածությունից ամբողջապես դուրս է մղել օրգանական ծագում ունեցող ինտրոցելյուլոզային և գուտապերչային սոսնձատեսակները։ Վերջին շրջանում Կիրովի անվան գործարանն սկսեց մասսայական չափերով թողարկել մի այլ շատ կարևոր սոսնձատեսակ «ՆՏ—ալֆա», որն իր տեխնիկական հատկանիշներով զգալիորեն բարձրացնում է արտադրվող կոշիկների դիմացկունությունը։

Քիմիագործների օգնության շնորհիվ միայն հնարավոր դարձավ տեխնոլոգիական այնպիսի հիմնական ուղղությունների արմատավորումը կոշիկի արդյունաբերության մեջ, ինչպիսիք են՝ կոշիկի ներբանների սոսնձով ամրացումը, տաք վուլկանիզացիան, ձուլածոների արտադրությունը։ Մշակման քիմիական այս եղանակների ար-

մատավորումը, անշուշտ, պահանջում է թե՛ արտադրական մեքենաների պարկի և թե հիմնական բանվորական կադրերի որոշակի մասնագիտացում:

Կոշիկի ներբանների և տակացուի առանձնացված արտադրությունը մշակման վերոհիշյալ եղանակներով կարող է իրականացվել ո՛չ միայն կոշիկի ֆաբրիկաներում, այլև, ինչպես ցույց է տալիս արտասահմանյան առաջավոր փորձը, հենց քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում: Դա մշակման տեխնոլոգիական անցումների թիվը 6-ից կրճատում է 4-ի: Այս պայմաններում բնական է, որ կոշկակարն ավելի շուտ դառնում է բարդ մեքենաների և ագրեգատների աշխատանքը վերահսկող ինժեներա-տեխնիկական աշխատող: Այս կապակցությամբ մեր քիմիական արդյունաբերության աշխատողների առջև խնդիր է դրվում՝ փոխարինիչների մատուցմանը տալ ո՛չ թե նյութա-տեխնիկական մատակարարման, այլ կոոպերացման բնույթ: Այլ կերպ՝ քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները ո՛չ թե պետք է արտադրեն զանգվածային փոխարինիչներ (անկախ այն բանից, թե ով հետագայում այդ նյութատեսակից ինչ կարտադրի) այլ արդեն որոշակիորեն ձևավորված և հաստեցագրված դետալներ, այն հաշվով, որ կոշիկի ֆաբրիկաների ֆունկցիան հետագայում հիմնականում հանգի դրանց որակով հավաքմանը: Քիմիական փոխարինիչների օգտագործման և մշակման տեխնոլոգիական եղանակների քիմիացման և արտադրության մասնագիտացման առնչությամբ, այժմ Հայկական ՍՍՀ կոշիկի «Մասիս» ֆիրմայի մասնաճյուղում որոշակիորեն ձևավորվել է մեքենայական պարկի պրոֆիլը:

Հայկական ՍՍՀ «Մասիս» ֆիրմայի կազմակերպումից հետո ընկած ժամանակաշրջանը կոշիկի արդյունաբերության մեջ նոր տեխնիկայի մասսայական արմատավորման էտապ հանդիսացավ: Վերջին 8 տարիների ընթացքում (1963—1970 թթ.) ֆիրմայի մասնաճյուղերում ներդրվել են ավելի քան 1000 միավոր տեխնոլոգիական սարքավորումներ: Սարքավորումների մի զգալի մասը հետագայում մոդեռնացման ճանապարհով ավտոմատացվել է, որի համար օգտագործվել են Լենինգրադի «Вперед» մեքենաշինական գործարանի արտադրած կարգավորիչ սարքերը: Դրանք թույլ են տալիս անհրաժեշտության դեպքում կարգավորելու դետալների դիրքը մամլիչներում, ավտոմատաբար փոփոխելու ճնշումը, այն խստորեն կապելով տեխնոլոգիական ռեժիմի հետ:

Զգալի գործ է արվել նախապատրաստական աշխատանքների մեքենայացման նպատակով: Ներկայումս կտրման և ձևման աշխատանքների ավելի քան 48 տոկոսն իրականացվում է հիդրավլիկ գործողության կիսավտոմատ մամլիչների միջոցով: Հավաքման պրոցեսներում լայն չափով կիրառվում են ՁՆԿ—0 և ՁՊԿ—2—0 սարքավորումները: Միայն 1966—1969 թթ. ֆիրմայի մասնաճյուղերում ներդրվել են մոտ 20 միավոր այս մարկայի սարքավորումներ: Առաջին կիսավտոմատը ձգում և սոսնձով ամրացնում է կաղապարի վրա դրված երեսացուի թաթամասը: Նախկինում, մինչև այդ տիպի մեքենաների ներդրումը, ամբողջ աշխատանքները կատարում էին բանվորները՝ ձեռքով: Նոր կիսավտոմատն իրականացնում է գործողությունների ամբողջ համակարգը, այն ղեկավարում են 1—2 հսկիչներ, որոնց աշխատանքը, անհամեմատ, ավելի բարձրորակ է: Երկրորդ կիսավտոմատը լրացնում է առաջինի աշխատանքը, որը կատարում է սոսնձակցման, ձգման և ձևավորման գործողությունները: Այժմ ըստ տարրերի (կապված արտադրության մասնագիտացման հետ) քննարկենք այս երկու կիսավտոմատ ագրեգատների օգտագործման ազդեցությունը ձեռնարկության տեխնիկա-տնտեսական գործունեության ցուցանիշների վրա: Փոխադարձորեն կապված սարքավորումների ներդրումը (ՁՆԿ—0) և կոշիկի սոսնձային վրաքաշման) (1) հնարավորություն է ընձեռել օգտագործվող միջնատակի կաշետեսակները փոխարինելու ստվարաթղթով: Մինչ այդ կոշիկի միջնատակը պատրաստվում էր կոշտ կաշվից: Մեքենայի ներդրումից հետո հնարավոր դարձավ միջնատակերի 3/4-ից ավելին պատրաստել ստվարաթղթից:

Այստեղ բերվեց մասնագիտացման հետ կապված աշխատատար պրոցեսների մեքենայացման և տեխնոլոգիայի կատարելագործման արդյունավետության միայն մեկ օրինակ: Թե ֆիրմայի կազմակերպումից հետո ինչպիսի ծավալի են հասել համանման միջոցառումները Հայկական ՍՍՀ կոշիկի արդյունաբերության մեջ, կարելի է պատկերացում կազմել հետևյալ ընդհանրական տվյալներից: Վերոհիշյալ ՁՆԿ—0 և ՁՊԿ—2—0 մեքենաներից ֆիրմայում ներդրվել են գլխադաս ֆաբրիկայում և համապատասխան տեխնոլոգիայով կոշիկ արտադրող երեք մասնաճյուղերում. 1970 թ. ձգման-սոսնձման պրոցեսները ֆիրմայում արդեն ամբողջապես իրականացվում են այդ մեքենաներով:

Խոշոր աշխատանքներ են կատարվել նաև նախապատրաստական-ձևման պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման նպատակով, որի հիմքում նույնպես ընկած է առարկայական մասնագիտացման խորացումը: Ձևման արտադրամասերի և տեղամասերի հին, ցածր արտադրողական սարքավորումները հիմնականում հանված են արտադրությունից կամ մոդեռնացված են ժամանակակից սարքերով: Ներկայումս հատող-ձևվող սարքավորումների պարկի 48 տոկոսը կազմում են ժամանակակից հիդրավլիկ գործողության կիսավտոմատները: Արտադրապրոցեսների ավտոմատացման սարքերից հատկանշական է գլխավոր ֆաբրիկայում ներդրված ֆոտո-էլեկտրոնային ագրեգատը, որը կարգավորում է շաբլոնների չափումը, փոխարինելով ինժեներա-տեխնիկական 5 աշխատողների: «Մասիս» ֆիրմայի ստեղծումից հետո արտադրության համակենտրոնացումը և մասնագիտացումն անհրաժեշտաբար հարուցեցին կառավարման աշխատանքների մեքենայացման հարցը: Պետք է նշել, որ ներկայումս այս պրոբլեմն առավել ընդհանրական է արդյունաբերության բոլոր ճյուղերի համար: Ըստ «Յունեսկոյի» տվյալների, վերջին հարյուր տարում արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունն աճել է մոտ 60 անգամ, այնինչ կառավարման աշխատանքներում այն աճել է 2 անգամից էլ պակաս. Հայկական ՍՍՀ կոշիկի արդյունաբերության մեջ վերջին 30 տարում (1940—1970 թթ.) արտադրանքի ծավալը (զույգերով) աճել է 10,2, աշխատանքի արտադրողականությունը (հաշվարկված ընեղեն արտահայտությամբ մեկ աշխատողին ընկնող զույգերով)՝ 3,8 անգամ: Նույն ժամանակաշրջանում տնտեսագիտական ծառայություններում զբաղված աշխատողների թիվն աճել է մոտ 11 անգամ, այսինքն՝ ավելի արագ, քան արտադրանքի ծավալը: Բնական է, որ ֆիրմայի ղեկավարության ուշադրությունից այս հանգամանքը վրիպել չէր կարող:

* * *

1965 թ. դիրեկտորական խորհուրդը որոշեց հաշվողական կենտրոն ստեղծել: 1967 թ. կազմակերպվեց ֆիրմայի մեքենա-հաշվային կայանը, որն այժմ սպասարկում է ո՛չ միայն կենտրոնական ապարատին և գլխավոր ֆաբրիկային, այլև մասնաճյուղերի մեծ մասին՝ պլանային հաշվումների և աշխատավարձի հաշվառման գործում: Դա հնարավորություն ընձեռեց զգալիորեն թեթևացնելու մասնաճյուղերում զբաղված տնտեսագետների աշխատանքը և նրանց ջանքերն ուղղելու արտադրության և աշխատանքի կազմակերպման կատարելագործմանը: Ընդհանուր առմամբ ձեռնարկված վերոհիշյալ միջոցառումները հասցրին արտադրապրոցեսների մեքենայացման աստիճանի զգալի բարձրացման:

Բնական է, որ առանձին ձեռնարկություններ, որքան էլ ձգտեին, չէին կարող կարճ ժամանակամիջոցում այդպիսի խոշոր տեղաշարժ կատարել արտադրապրոցեսների մեքենայացման մակարդակի բարձրացման գործում: Ընդհանրացնելով կարելի է նշել, որ «Մասիս» ֆիրմայի կազմակերպումը շրջադարձային կետ հանդիսացավ հանրապետության կոշիկի արդյունաբերության տեխնիկական առաջընթացի և դրա հիման վրա արտադրության արդյունավետությունն ըստ ամենայնի բարձրացնելու գործում:



բոլորովին ոչ քանի։ Ես հարցրի նրան, թե ինչո՞ւ նա թանկարժեք գինիներ չի առաջարկում մեզ, չէ՞ որ դրանք ավելի լավն են, միաժամանակ սեփականատերերին առավել ձեռնտու է ավելի թանկ գինիներ վաճառել։ Մատուցողը ժպտաց և ասաց, որ կատարել է իմ խնդրանքը, ուստի և փորձելու է առաջարկել ֆրանսիական լավագույն գինիներ։ Թանկարժեք տեսակները, ավելացրեց նա, պահում են այն հարուստ ամերիկացիների համար, որոնք իսկական գինիներից բան չեն հասկանում. նրանք չափից ավելի երկար են ապրել «չոր օրենքի» պայմաններում, օրենք, որ միայն վերջերս է վերացրել Ռուզվելտը։

Ինձ հաճելի էր զբոսնել տախտակամածի վրա, մենք կնոջս հետ նաև սեղանի թենիս էինք խաղում. դրա համար սեղան կար տախտակամածի վրա։ Լյուքսով մեկնող հարուստ ամերիկացիները ցերեկը պառկում էին շեզլոնգներում, ծածկելով իրենց շոտլանդական շալերով, իսկ ընթրիքից հետո բուրք էին խաղում հատուկ դահլիճում, խմում բարում։ «Նորմանդիայի» վրա կային կինոդահլիճ, տիկնիկային թատրոն, պարադահլիճներ, քրիստոնեական եկեղեցի, հրեական աղոթարան։

Մեր խմբի մնացած ընկերները առաջին կարգում էին։ Ուստի խնդրեցի նրանց անցնել ինձ մոտ, բայց պարզվեց, որ մյուս կարգի ուղևորները իրավունք չունեն անցնել լյուքսերի բաժանմունքը։ Այն ժամանակ ես դիմեցի նավապետին, և մեզ համար բացառություն արեցին։

Նավապետն ինձ առաջարկեց դիտել նավը։ Ես հաճույքով համաձայնեցի, դիտեցի նավապետի կամրջակը, մեքենայական բաժանմունքը, առաջին և երկրորդ կարգերը։ Այնտեղ նեղվածք էր, բայց ընդհանուր առմամբ հարմար։

Մենք նավում էինք հանգիստ, ծովը հանդարտ էր, միայն մի օր ալեկոծվեց։ Այդ օրը ես կանգնած էի տախտակամածի վրա, նայում էի լեռնացող ալիքներին և հպարտանում այն մարդկանցով, որոնք ստեղծել են այդպիսի նավեր և ապացուցել, որ մարդը կարող է հաղթել տարերքին։

Երբ մինչև Նյու-Յորք մնում էր մոտ մեկ ժամվա ճանապարհ, ինձ կանչեցին հեռախոսի մոտ։ Զանգահարում էր ԱՄՆ-ում ՍՍՀՄ դեսպան Ա. Ա. Տրոյանովսկին։ Ես մոտեցա ռադիոհեռախոսին և ուրախությամբ լսեցի նրա ձայնը։ Նա ասաց, որ սովետական գաղութը դիմավորում է մեզ և հայտնեց, որ ծովափին մեծ թվով թղթակիցներ են հավաքվել, որոնք սպասում են իմ ժամանմանը և պատրաստվում են հարցազրույց ունենալ ինձ հետ։ Ես պատասխանեցի, որ մտադիր չեմ որևէ հարցազրույց ունենալ։

«Նորմանդիան» Նյու-Յորք հասավ առավոտյան։ Ցուրտ, արևոտ եղանակ էր։ Ա. Տրոյանովսկին և դեսպանության մի քանի աշխատակիցներ նավ բարձրացան։ Մենք քննարկեցինք այն հարցը, թե ինչպես վարվել նավահանգստում հավաքված թղթակիցների հետ. նրանց թիվը շատ մեծ էր։ Տրոյանովսկին ինձ համոզում էր, որ անհրաժեշտ է (ինչպես այդ ընդունված է Ամերիկայում) հարցազրույց ունենալ։ Ես հրաժարվում էի, քանի որ դա իմ առաջին արտասահմանյան ուղևորությունն էր և ես չունեի ժուռնալիստների հետ պրես-կոնֆերանսների փորձ, ես այդ փորձը ձեռք բերեցի միայն հետագա տարիներին։ Ես ասացի, որ երբ առաջին իսկ օրվանից ընկնեմ ժուռնալիստների հետ զրույցների ուղին, ապա Ամերիկայում գտնվելուս ամբողջ ժամանակ նրանք կխանգարեն ուղևորության գործարար բնույթին։ Բացի դրանից, ես գնում էի ոչ թե քաղաքական ելույթներ ունենալու համար, այլ իրոք ցանկանում էի ամբողջ ժամանակս նվիրել ամերիկյան սննդարդյունաբերության նվաճումներին առավել մանրամասն ծանոթանալուն, որոնք կարող էին պետք գալ մեր երկրի տնտեսական շինարարությանը։

Տրոյանովսկին պատասխանեց, որ ժուռնալիստներից ազատվել հնարավոր չէ և առաջարկեց, որ ինքը նրանց կհայտնի իմ գալու նպատակը։ Ես համաձայնեցի, և մենք մշակեցինք իմ անունից Տրոյանովսկու անելիք հայտարարության տեքստը։

Տրոյանովսկին դուրս եկավ նավահանգիստ, ժուռնալիստներին հաղորդեց իմ գալու նպատակը, որից հետո մենք գնացինք Նյու-Յորքի մեր հյուպատոսությունը։ Շուտով Տրոյանովսկու հայտարարության տեքստի լրիվ շարադրանքը հրապարակվեց ամերիկյան թերթերում։

«Դեսպանը բացատրեց,— գրում էր, օրինակ, «Նյու-Յորք թայմս» թերթը,— որ Միկոյանն իր ուղևորության ընթացքում զուգակցում է հանգստի նպատակները գործարար նպատակների հետ։ Ութ ինժեներներ, Միկոյանի գլխավորությամբ, հատուկ ուշադրություն են հատկացնելու մսի, ճարպի, պաղպաղակի և այլ մթերքների փաթեթավորման մեքենաներին ծանոթանալու հարցերին։ Միկոյանը... կայցելի մի շարք գործարաններ և, հնարավոր է, կգնի 5 միլիոնից մինչև 50 միլիոն դոլար գումարի սարքավորում մթերքների մասսայական արտադրության համար։ Միկոյանն ամենից շատ հետաքրքրվում է մասսայական արտադրության մեքենաներով, հայտարարեց դեսպանը։ Մենք ուզում ենք ունենալ լավ հաց, լավ պահածոներ. մենք ուզում ենք լրիվ և մանրամասն ծանոթանալ այդ բնագավառում ձեր մեքենաշինության զարգացմանը... Սննդարդյունաբերության կոմիսարն այստեղ է եկել նաև նրա համար, որպեսզի անհրաժեշտ սարքավորում գնի, որը կարողանար նրա համաքաղաքա-



ցիներին ապահովել բավարար քանակությամբ պաղպաղակով...»։

Հյուպատոսությունում Տրոյանովսկու հետ զրույցից ես իմացա, որ նա օգոստոսի 9-ին Մոսկվա ինձ հեռագիր է ուղարկել, որտեղ արտահայտել է իր նկատառումները իմ՝ ԱՄՆ գալու կապակցությամբ։ Մասնավորապես, նա ուզում էր օգտագործել իմ գալուստը՝ ամերիկյան պետական գործիչների հետ քաղաքական կոնտակտներ հաստատելու և սովետա-ամերիկյան հարաբերությունները բարելավելու նպատակով։ Իսկ ես այդ հեռագիրը չէի կարդացել, քանի որ օգոստոսի 9-ի երեկոյան մենք մեկնել էինք Մոսկվայից, իսկ Նյու-Յորք էինք հասել օգոստոսի 17-ի առավոտյան։ Ինչ-որ պատճառով արտգործժողկոմատը քննության չէր առել այդ հարցը և նույնիսկ կառավարությանը չէր զեկուցել այդ հեռագրի մասին։

ԱՄՆ-ում աշխատող մեր ընկերներն այդ նույն ժամանակ արդեն կազմել էին երկրում կատարելիք իմ ուղևորության ծրագիրը, նրա մեջ մտցնելով արդյունաբերության տարբեր ճյուղերի առանձին ձեռնարկությունների այցելությունը։ Քննարկեցինք և ճշտեցինք ուղևորության երթուղին, վճռելով, որ մենք պետք է լինենք ոչ միայն արևելյան նահանգներում, այլև Արևմուտքում, Կալիֆոռնիայում։

## ՄԻ ՔԱՆԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Համառոտակի կանգ առնեմ ընդհանուր բնույթի այն պայմանների մասին, որոնք նախորդեցին մեր ուղևորությանը։ Դեռ չէր մոռացվել այն ժամանակը, երբ արտասահմանյան մամուլում ՍՍՀՄ-ին մեղադրում էին համաշխարհային շուկայում դեմպինգային բնույթի մանյովրներ կատարելու մեջ։ Լինելով ներքին և արտաքին առևտրի ժողկոմ, 1930 թվականի նոյեմբերին, ես զրուցեցի Սովետական Միություն եկած ամերիկյան տնտեսագետ Ալբերտ Ջոնսոնի հետ մեր երկու երկրների այն ժամանակվա տնտեսական զարգացման մասին, մասնավորապես նաև մեր կարծեցյալ դեմպինգի հարցի վերաբերյալ։ Արտասահմանյան մամուլը լայն կամպանիա էր սկսել մեր էքսպորտի դեմ, և ես ստիպված էի բացատրել միստեր Ջոնսոնին, որ այդ հերթական շիրման կոչված է քողարկելու Սովետական Միության դեմ կատարվող հարձակումները, այն էլ զուտ քաղաքական բնույթի հարձակումները։ «Կապիտալիստական շրջաններն այդ կամպանիան օգտագործեցին որպես իրենց իսկական նպատակներն սքողելու և ժողովրդական մասսաների աչքից դրանք թաքցնելու միջոց,— ասացի ես Ա. Ջոնսոնի հետ ունեցած զրույցում։— Վերցնենք բուրժուական տնտեսագետների գիտական աշխատությունները կամ Ժենևայի կոնֆերանսի արձանագրությունները։ Դրանք բոլորը պնդում են, թե պատերազմից հետո համաշխարհային ճգնաժամը կամ համաշխարհային տնտեսության վերականգնման դանդաղ տեմպերը բացատրվում են նրանով, որ Ռուսաստանը, որպես խոշորագույն շուկա, դուրս է մնացել համաշխարհային ապրանքաշրջանառությունից։ Երբ Ռուսաստանում պահպանվեր կառավարման նախկին ձևը, և նա ներգրավվեր միջազգային ապրանքաշրջանառության մեջ, ապա համաշխարհային տնտեսությունն ավելի արագ կվերականգնվեր։ Այսպիսով, ժողովրդական մասսաների բոլոր թշվառությունները, աղքատությունը և կապիտալիստական կառավարությունների բոլոր ձախողությունները վերագրում էին մեզ, ասելով, թե մենք՝ բոլշևիկներս, Ռուսաստանը հանել ենք համաշխարհային շուկայից և դրանով իսկ կասեցրել համաշխարհային տնտեսության զարգացումը։ Մենք, իբր թե, կարծես թե պահում ենք ինչ-որ դռան բանալիները, հնարավորություն չենք տալիս բացելու այդ դուռը և լայնորեն զարգացնելու համաշխարհային էկոնոմիկան»։

Այնուհետև ես հիշեցրի միստեր Ջոնսոնին, որ Լլոյդ Ջորջը, օրինակ, գտնում էր, թե Սովետական Ռուսաստանը չի կարող օտարերկրյա ապրանքներ ներմուծել, թեև զգում է դրանց կարիքը, քանի որ արտահանելու բան չունի։ Իսկ երբ կառավարությունը և սոցիալական սիստեմը փոխվեն, ապա դա հնարավորություն կտա ավելացնել էքսպորտը, որն իր հերթին կավելացնի օտարերկրյա ապրանքների ներմուծումը Ռուսաստան։ Ահա այն փաստարկը, որի վրա գլխավորապես հիմնվում էր սովետական պետության դեմ մղվող քաղաքական պայքարը 20-ական թվականներին։

«Պնդում էին նաև,— ասացի ես այնուհետև,— թե առանց օտարերկրյա խոշոր փոխառությունների Սովետական Միությունը չի կարող վերականգնել տնտեսությունը և այն չի հասցնի նույնիսկ նախապատերազմյան չափերին, չխոսելով արդեն նրա հետագա ծավալման մասին։ Մենք այդ փոխառությունները չենք ունեցել, իսկ միևնույն ժամանակ չափազանց շատ բան ենք արել։ Մեզնից պահանջում էին, որ մենք վերադարձնենք ցարական հին պարտքերը, և դրա փոխարեն մեզ խոստանում այնպիսի փոխառություններ, որոնք, սակայն, շատ ավելի փոքր կլինեին, քան այն, որ մենք պետք է տայինք։ Մենք, իհարկե, չէինք կարող ընդունել այդպիսի առաջարկություն։ Առանց որևէ օտարերկրյա օգնության, մեր սեփական ուժերով մենք սկսեցինք վերականգնել տնտեսությունը և ոչ միայն հասանք նախապատերազմյան մակարդակին, այլև ապահովեցինք տնտեսության հետագա զարգացման արագ տեմպերը։ Մեզ հաջողվեց հասնել

պետք է ընդունեին շատ ավելի լայն մասշտաբ, մի բան, որը և պատահեց:

## ԴԵՍՊԱՆ ՏՐՈՅԱՆՈՎՍԿԻՆ

Այն փաստը, որ ես ԱՄՆ-ում ՍՍՀՄ դեսպանի պոստում գտա հատկապես Ա. Ա. Տրոյանովսկուն (Ճապոնիայում ՍՍՀՄ այժմյան դեսպան Օլեգ Տրոյանովսկու հորը), ինձ համար առանձնապես ուրախալի էր և հաճելի: Ա. Ա. Տրոյանովսկին— ԱՄՆ-ում սովետական առաջին դեսպանը— այնտեղ աշխատեց երեք տարի, ամերիկացիներին պատմելով ճշմարտությունը սովետական տերության մասին և շատ ջանք թափելով մեր երկրների միջև բարեկամական կապերն ամրապնդելու համար: Մենք նրա հետ կողք-կողքի աշխատել ենք Մոսկվայում մոտ մեկ տարի, երբ ես ներքին և արտաքին առևտրի ժողկոմ էի, իսկ նա ղեկավարում էր ՌՍՖՍՀ Պետառը՝ ապրանքների արտահանման ու ներմուծման արտաքին-առևտրական խոշորագույն կազմակերպությունը: Աշխատելով նէպի շրջանում, այդ կազմակերպությունը ոչ միայն սովետական ապրանքներ էր վաճառում, այլև մարզերում ուներ գրասենյակների ճյուղավորված ցանց, որոնք մթերում էին գյուղատնտեսական հումք և էքսպորտի համար պիտանի այլ ապրանքներ, դրանք գնելով գյուղացիներից, մասնավոր մանր առևտրականներից, կոոպերատիվ կամ պետական առևտրի ձեռնարկություններից: Այն ժամանակ, երբ մենք Տրոյանովսկու հետ միասին էինք աշխատում, մթերումների հարցերով զբաղվում էին մի քանի կոոպերատիվ կենտրոններ՝ Ցենտրոսոյուզը (սպառողական կոոպերացիա), Գյուղկոոպմիությունը (գյուղատնտեսական կոոպերատիվ միություն), նույնիսկ Պետբանկը, որը զուգահեռաբար հացի գնումներ էր կատարում: Այդ կազմակերպությունների միջև մրցակցություն էր տեղի ունենում, ընդ որում կոոպերատիվ կենտրոնները ջանում էին Պետառին դուրս մղել մթերումների շուկայից: Ուստի Տրոյանովսկին այդ հարցերով հաճախ էր դիմում իմ օգնությանը: Ես նրանից փոքր էի 14 տարով: Իր հմտությամբ Տրոյանովսկին բնավ չէր զիջում ամերիկյան բիզնեսմեններին: Նա հաջողությամբ էր կազմակերպում գործը, լավ էր ղեկավարում ապարատը, կատարելագործում էր նրա աշխատանքի մեթոդները, կապիտալիստներից սովորել էր առևտուր անել, այսպես ասած, ընդօրինակում էր կոմերցիայի ոգին: Այդ պատճառով մեր բոլոր գործարար հանդիպումներն օգտակար էին ինձ համար, քանի որ այն ժամանակ ես դեռևս լավ չէի գլուխ հանում առևտրի հարցերից: Ես հարգում էի Տրոյանովսկուն նրա գիտելիքների, ղեկավարելու հմտության համար: Նա ուղղակի, ընդունակ և գիտակ աշխատող էր: Մեզ համար գաղտնիք չէր, որ նրա գիտելիքները գերազանցում են իմին, թեև պաշտոնական դիրքով ես ավելի բարձր էի կանգնած:

1927 թվականի վերջին Տրոյանովսկին նշանակվեց սովետական դեսպան Ճապոնիայում: Այդ կապակցությամբ ՌՍՖՍՀ առևտրի ժողկոմատի կոլեգիան հարկ համարեց հատուկ նշել նրա հիանալի աշխատանքը արտաքին առևտրի բնագավառում, արձանագրության մեջ գրելով հետևյալը. «Ափսոսանք հայտնել ընկ. Տրոյանովսկու հեռանալու առթիվ, որը 4 տարվա ընթացքում հաջողությամբ ղեկավարում էր Պետառի աշխատանքը և կարողացավ բավականաչափ զարգացնել ու ամրապնդել Միության արտահանության-ներմուծման կարևորագույն կազմակերպությունը»:

Ալեքսանդր Տրոյանովսկին ծնվել է ազնվականական սպայական ընտանիքում: Ավարտելով կադետական կորպուսը և Կիևի համալսարանը, նա ծառայել է բանակում պորուչիկի աստիճանով: 1904 թվականին դառնալով ՌՍԴԲԿ անդամ, Տրոյանովսկին կատարել է կուսակցական աշխատանք, որի համար աքսորվել է, ապա տարագրվել Ռուսաստանից: Վերադառնալով հայրենիք, նա հարեց մենշևիկներին և մինչև 1921 թվականը հետևում էր նրանց հայացքներին: 1923 թվականին Տրոյանովսկին հեռացավ մենշևիկներից, հաստատուն կերպով կանգնեց բոլշևիկների պլատֆորմի վրա և մինչև կյանքի վերջը հավատարիմ մնաց լենինյան սկզբունքներին:

ԱՄՆ-ում իմ գտնվելու ժամանակ Տրոյանովսկին մի քանի շաբաթ ճանապարհորդում էր ինձ հետ: Մենք նրա հետ եղանք Նյու-Յորքում և Վաշինգտոնում, իսկ ապա Արևմուտքում, Կալիֆոռնիայում: Մենք նրա հետ է՛լ ավելի բարեկամացանք: Հանձին նրա ես տեսնում էի բազմագիտակ և հասուն մի դիվանագետի, որով կարելի էր պարծենալ: Մեր զրույցների ժամանակ Տրոյանովսկին ինձ պատմում էր ԱՄՆ-ում իր դիվանագիտական գործունեության մասին, տալիս էր ամերիկյան պետական ու քաղաքական գործիչների դիպուկ բնութագիրը, վերլուծում քաղաքական իրադրությունը երկրում:

Տրոյանովսկին դիվանագիտության բնագավառում բյուրոկրատ չէր, նա շփվում էր ոչ միայն քաղաքագետների հետ, որը, իհարկե, անհրաժեշտ էր նրա աշխատանքում: Նա մեկնում էր ԱՄՆ-ի տարբեր քաղաքները, հանդես էր գալիս ժողովներում ու համաժողովներում, պատմում էր Սովետական Միության, մեր պետության քաղաքականության, խաղաղության համար մղած մեր պայքարի մասին, բոլոր բնագավառներում ԱՄՆ-ի հետ հարաբերությունները բարելավելու մեր ցանկության մասին: Տրոյանովսկին հեղինակություն և հարգանք էր վայելում ամերիկյան գործարար և հասարակական շրջաններում: «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը իմ ԱՄՆ գալուց քիչ առաջ տպագրել էր Կոուլմեն Ջոնսի հոդվածը, որտեղ տրվում էր Վաշինգտոնում դիվանագիտական կորպուսի բնութագիրը: Ջոնսը ամենից շատ ուշադրություն էր հատկացրել Տրոյանովսկու անձնավորությանը:

«Վաշինգտոնում հավատարմագրված առավել աչքի ընկնող դիվանագետներից մեկը,— գրում էր նա,— Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության դեսպան Ալեքսանդր Տրոյանովսկին է: Նա կիրառում է ամերիկացիների հետ անձնական հանդիպումների մեթոդը, նպատակ ունենալով նպաստել փոխըմբռնմանը, բարեկամական կապերի հաստատմանը և կուլտուրական ու տնտեսական հարաբերությունների զարգացմանը... Լինելով 54 տարեկան, Տրոյանովսկին անցել է, թերևս, ավելի հարուստ կյանքի ուղի, քան Վաշինգտոնի դիվանագիտական կորպուսի մյուս անդամներից որևէ մեկը...»:

Տրոյանովսկու կինը՝ Նինա Նիկոլաևնան չափազանց բարեհամբույր ու հաճելի մարդ էր. իր որդի Օլեգի հետ նա հյուրասիրաբար դիմավորեց մեզ: Օլեգն այն ժամանակ 17 տարեկան էր և լավ էր սովորում ամերիկյան կոլեջում: Արտաքինով նա շատ նման էր հորը: Հայրը սիրում էր հումորը, կարողանում էր բարեսրտորեն սրախոսել, սրտանց քրքջում էր ուրիշների սրախոսությունների վրա: Նա քիչ էր խոսում, կարողանում և սիրում էր լսել:

Մի անգամ, երբ մենք հեռու էինք Վաշինգտոնից, Տրոյանովսկին ինձ ասաց, որ այսօր իր կնոջ ծննդյան օրն է, իսկ այդ օրը ինքը միշտ վարդեր է նվիրում նրան: Նինա Նիկոլաևնան մնացել էր Վաշինգտոնում, և Տրոյանովսկին ստիպված եղավ պատվիրել մի ինչ-որ ամերիկյան ֆիրմայի՝ վարդերի փունջ ուղարկել կնոջը շնորհավորանքի հետ միասին: Մեզանում այդպիսի պրակտիկա չկար, ուստի ես զարմացա: Նա ասաց, որ ԱՄՆ-ում այդ սպասարկումը շատ լավ է կազմակերպված: Ընկերությունը հուսալի և կանոնավոր է կատարում նման պատվերները, բայց, իհարկե, այդպիսի ծառայությունները թանկ արժեն, և դրանցից օգտվում են առավելապես հարուստ մարդիկ. հեռագրերի տեքստերը և հուշանվերները պատվիրվում են նշանավոր ամսաթվից նույնիսկ մեկ տարի առաջ:

Ինձ դուր եկավ նաև ամերիկյան այնպիսի սպասարկման կազմակերպումը, ինչպիսին ճանապարհին հեռագրեր հասցնելն է: Մենք գնացքով Չիկագոյից մեկնում էինք Սան-Ֆրանցիսկո: Կայարաններից մեկում Տրոյանովսկին ինձ համար հեռագիր ստացավ Վաշինգտոնից: Ես հետաքրքրվեցի, թե ինչպես է կազմակերպված նման ծառայությունը: Տրոյանովսկին բացատրեց, որ դա անում է հեռագրական գործակալությունը, որը կապված է երկաթուղային ընկերությունների հետ և այդպիսի ծառայությունների համար հատուկ վարձ է վերցնում:

Տրոյանովսկին— նա վախճանվեց 1955 թվականին— պետական մեծ գործիչ էր և մեր երկրի աչքի ընկնող դիվանագետը, որին սովետական դիվանագիտության պատմությունը երբեք չի մոռանա:

Երբ մենք քննարկում էինք ուղևորության ծրագիրը, Տրոյանովսկին հաղորդեց թե պետդեպարտամենտն ինձ առաջարկում է իր աշխատակից Վիլյարդին՝ որպես ուղեկցող անձ: Նա ասաց, որ դա, իհարկե, հետախույզ է, և ես պետք է վճռեմ՝ վերցնելու եմ նրան ինձ հետ, թե ոչ: Խորհրդածելով, ես հարցրի նրան, թե արդյոք նա գտնո՞ւմ է, որ այդ մարդը կօգնի մեզ մեր ուղևորության ժամանակ: Տրոյանովսկին պատասխանեց, որ նրա հետ ճանապարհորդելը անհամեմատ ավելի հեշտ կլինի, քանի որ պետդեպարտամենտի մանդատը օգնում է վերացնելու ճանապարհին եղած ամեն մի դժվարություն: Ես ասացի, որ այդ դեպքում եկեք վերցնենք հետախույզին, մենք քաշվելու բան չունենք, մենք մտադիր չենք որևէ դատապարտելի բան անել:

Եվ Վիլյարդը մեկնեց մեզ հետ: Սկզբում մենք աչքներս նրա վրա էինք պահում: Նա լռակյաց էր, քաղաքավարի, ճշտապահ, չէր փորձում մեզ ձանձրացնել: Նրա ներկայությունը գրեթե աննկատելի էր: Հետագայում, երբ մենք ընտելացել էինք միմյանց, նա մի անգամ մեզ հյուրասիրեց կոկտեյլով, որ պատրաստված էր նրա սեփական տնային ռեցեպտով:

Մենք անցանք Ամերիկան արևելքից արևմուտք և արևմուտքից արևելք և ոչ մի տեղ ո՛չ ամերիկյան ոստիկանությունը, ո՛չ ադմինիստրացիան մեզ համար ոչ մի դժվարություն չստեղծեցին: Մենք այցելեցինք այն բոլոր ձեռնարկությունները, որոնք մեզ հետաքրքրում էին, ոչ մի անգամ և ոչ մի տեղ չստանալով մերժում: Հասարակ մարդկանց, բանվորների, ընկերությունների, ծառայողների, դիրեկտորների և մեզ հետ շփվող բոլոր մարդկանց վերաբերմունքը չափազանց քաղաքավարի էր և սիրալիր: Մթնոլորտն այն ժամանակ բարյացակամ էր, վերաբերմունքը սովետական մարդկանց նկատմամբ չափազանց լավ, ավելի լավը չես երևակայի, և ոչ թե այնպես, ինչպես հիմա է, 35 տարի անց:

*(Շարունակելի)*

«США, Экономика, политика, идеология», № 10, 1971.

# Մեր մշակույթի ԱՄԲԻՈՆ



## ՀԱՅ ԴԱՍԱԿԱՆՆԵՐԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՊԱԹՈՍԸ

ՀՈՎՀ. Գ. ՂԱԶԱՐՅԱՆ

Հայ դասական գրողներն ունեցել են մի նվիրական ձգտում— ազնվորեն ծառայել ժողովրդին: Պետականությունից զուրկ, ցարական, սուլթանական բռնապետությունների քամահրանքներին ու հոշոտմանը մշտապես ենթակա հայ ժողովուրդը պատմական անհրաժեշտությամբ իր գրողին համարում էր ռահվիրա, ապավինում նրան: Իսկ գրողն իր կյանքը սերտորեն զուգորդում էր հասարակական կյանքին, հաստատ և ամենուր հանդես գալիս իբրև մեծ քաղաքացի՝ ժողովրդին ծառայելու իր ազնիվ առաքելությամբ: «Եվ մի՞թե կա ավելի բարձր ու վսեմ գործ,— ազդարարում էր Վահան Տերյանը Մեր պարտքը հոդվածում,— քան խաչակիր հայ ժողովրդին ծառայելը, նրա կյանքը, նրա պատիվը, նրա պայծառ հավատն ու հույսը փրկելը»:

Մեր դասական գրողները՝ իրենց մոլորություններով, շեղումներով հանդերձ, անդուլ մարտնչում էին ժողովրդի համար, մտահոգվում նրա ճակատագրով: Իրենց ողջ կարողությամբ ու տաղանդով, իրենց ողջ կոչումով ու նվիրվածությամբ նրանք ծառայում էին «զարկվա՜ծ... զըրկվա՜ծ» հայրենիքին: Այս վսեմ գիտակցությամբ ու խոր համոզվածությամբ են նրանք աշխատել ու ստեղծագործել՝ տոգորված քաղաքացիական ազնիվ պաթոսով, պատրաստակամ՝ մարտնչելու և ընկնելու ժողովրդի պաշտպանության դիրքերում: «...Ո՞ւր թողում այս անտեր ու անգլուխ ժողովուրդը,— իր ողջ ձայնով գոչում էր Գրիգոր Զոհրապը, երբ նրան զգուշացնում էին և համոզում փրկվել եղեռնից:— Չէ՛, փախչել չեմ կրնար. պարտքս է մինչև վերջ պատնեշին վրա կենալ» (Էջեր ուղևորի մը օրագրե, Իզմիր, 1922, Առաջաբան, էջ ԺՊ):

Այսպես, այս ոգով էին գործում մեր դասական առաջավոր գրողները. մինչև արյան վերջին կաթիլը մարտնչում և ընկնում էին «պատնեշին վրա», չհեռանալով «անտեր ու անգլուխ ժողովրդից»: Նրանք ունեին այն հաստատ համոզումը, որ գրողը, գիտնականը, «գիտությունն ու արվեստը»,— ինչպես



խորհում էր Զոհրապը,— ամեն վայրկյան կը նորոգեն, կը վերաշինեն այս աշխարհը» («Մասիս», 1898, թիվ 79):

Դեռևս սկսնակ Շիրվանզադեն 80-ական թթ., առաջին իսկ թղթակցություններում, ներկայացնելով Բաքվի բանվորության ծանր կյանքը, իր ատելությունն է արտահայտում բուրժուազիայի դեմ: «Որքան մոտիկ էի ծանոթանում այդ (բանվորների) կյանքին, այնքան ավելի ու ավելի նողկանք էի զգում դեպի հանքատերերն ու գործարանատերերը» (ԵԼԺ, հ. 8, 1951, էջ 72):

Շիրվանզադեն պարզ տեսնում էր բանվոր դասակարգի, աշխատավորության «ամենադառն ու ողբալի» կյանքը, աշխատավորություն, որը հարստահարվում էր ո՛չ միայն նյութապես, այլև բարոյապես ու ֆիզիկապես: «Մարդ քարացած սիրտ պետք է ունենա,— եզրակացնում էր գրողը,— որ անտարբեր մնա՝ տեսնելով վշտերը, տանջանքները, այն հալածանքը, որ կրում են գործարանում բանող մշակները իրենց թշվառ գոյությունը շարունակելու համար» (ԵԼԺ, հ. 9, 1955, էջ 17):

Այս ոգին դառնում էր տիրապետող ուժ, գրողին առաջնորդում դեպի ստեղծագործական նվիրական մաքառում: Մասնավոր սեփականության վրա կառուցված հասարակության անհաշտելի, խոր հակասությունը մարմնավորված է նրա Քաոս (1898) վեպում: «Ինչո՞ւ հարյուրավոր մարդիկ,— հարցնում է վեպի մի հերոսը,— աշխատում են մեկին կամ երկուսին կշտացնելու համար, ինչո՞ւ բնության բերքերը հավասար բոլորին չեն պատկանում: Ինչո՞ւ, օրինակ, ինքը պիտի այստեղ հանգիստ ճաշի, իսկ այնտեղ, նավթի ու կրակի միջավայրում հարյուրավոր մարդիկ պիտի նրա համար իրենց կյանքը վտանգի տակ պահեն գիշեր-ցերեկ» (ԵԼԺ, հ. 7, 1934, էջ 302):

Այսպես, ուրեմն, բուրժուական հասարակության դեմ բողոքում էր ո՛չ միայն բանվորը, այլև ինքը՝ խոշոր կապիտալիստ Ալիմյանի որդին՝ Միքայելը: Այսպիսին էր Շիրվանզադե-ռեալիստը: Նա իր և՛ հրապարակախոսական, և՛ գեղարվեստական երկերում դրսևորում էր ակնհայտ ժողովրդայնություն, ատելություն՝ տիրող հասարակության հանդեպ: Կարելի է հաստատ ասել, որ Շիրվանզադեի խոսքն ուղղված էր այն բոլոր տեսությունների, քաղաքական հոսանքների ու գործողությունների դեմ, որոնք բացառում էին բանվոր դասակարգի, աշխատավորության շահերը: Իր ամբողջ հոգով նա վճռականորեն դեմ էր բուրժուազիայի գաղափարախոս կուսակցություններին, նրանց ռեակցիոն նկրտումներին, դեմ էր այն ավանդապահներին, կրոնամոլներին ու սահմանափակ ազգայնամոլներին, որոնք անզոր էին տեսնելու հասարակական-պատմական զարգացման առաջընթաց շարժումը: «Պարբերական մամուլը,— գրում էր նա,— այսօր ներկայացնում է մի քաոս... անկարող է կազմակերպել հասարակության միտքը» (Նույն տեղում, էջ 168):

Ռեալիստ-գեղագետը վճռականորեն պահանջում էր մամուլը ղեկավարող, հասարակական մտքին ընթացք տվող տաղանդավոր ու բանիմաց հրապարակախոսություն, հասարակական առաջավոր մտքի բարոմետր, հակադրվելով նրանց, ովքեր մամուլը դարձնում էին անհատական հաշիվների մաքրման, մանր ու մանրատված հարցերի պղտոր ասպարեզ:

Այդ առումով հետաքրքրական է Շիրվանզադեի Տենդենցիա և կուսակցական շահեր (1898) հոդվածը, որի մեջ նա բարձր է գնահատում Պուշկինի, Լերմոնտովի ստեղծագործական տենդենցը, ընդգծում նաև, որ «Նեկրասովը ո՛չ միայն տենդենցիոզ գրող է, այլև գեղարվեստական» (Նույն տեղում, էջ 179):

Գրողն ուրեմն, ամբողջ գիտակցությամբ պաշտպանում էր հասարակա-
կան զարգացման առողջ տենդենցը, մերժելով, սակայն, նեղ կուսակցական-
ազգայնական այն միտումները, որոնք կամա թե ակամա դեմընթաց էին
պատմական զարգացմանը: «Ի՞նչն է իսկապես բանաստեղծի տենդենցիան,—
որոշակի հարցադրում էր Շիրվանզադեն և տալիս խորիմաստ մեկնաբանու-
թյուն»: Իսկ ի՞նչ էր նա հասկանում բանաստեղծի բարձր իդեալ ասելով: «Ի՞նչ
կասեին այն հայ բանաստեղծին,— շարունակում է Շիրվանզադեն,— որ մի
կողմ թողած բուն ազգային կամ հասարակական տենդենցիան, սկսեր ոգևոր-
վել հոգաբարձուական ընտրություններով, երեցփոխանական հաշիվներով,
տիրացուների խնդիրներով, ուսուցիչների տեղափոխություններով և այլ այդ-
պիսի մանր-մունր հարցերով...» (Եժ, հ. 10, 1962, էջ 180):
Շիրվանզադեն, ինչպես երևում է քաղվածքներից, բացահայտորեն ու բա-
ցառապես ծառանում էր ռեակցիոն հոսանքների դեմ, որոնք անկարող էին ար-
տահայտել աշխատավորության շահերը, պաշտպանել հասարակական զար-
գացման առաջընթաց տենդենցը: Մինչդեռ, նա համոզված էր, որ գրողը կոչ-
ված է հենց դրա համար և պարտավոր է հանդես գալ իբրև բուն ժողովրդի
շահերի, հասարակական պատմական զարգացման տենդենցի պաշտպան ու
արտահայտիչ: Նա համոզված էր, որ գրողն ի վիճակի է դառնալու հասարա-
կության առաջավոր նկրտումների թարգմանը: «Այո՛,— շարունակում է նա,—
կռվեցե՛ք, պարոննե՛ր, ձեր տիրացուների հետ որքան կարող եք, արձակեցե՛ք
թնդանոթներից ծտերի դեմ, բայց հասկացեք այն տարրական բանը, որ բա-
նաստեղծը, նույնիսկ զուտ տենդենցիոզ բանաստեղծը, եթե նա իսկապես իր
ազգի, իր ժողովրդի ժամանակակից բարձր ձգտումների և իդեալների թարգ-
մանն է, նա չի կարող ձեր ողորմելի կերակրով կշտանալ, ձեզ հետ միասին
կռվել և ձեզ նման մի լաթի համար պառավի աղաղակներ բարձրացնել: Մեր
իդեալը ավելի վսեմ պիտի լինի, նրա դրոշակը ավելի բարձր, նրա գաղա-
փարները ավելի ընդարձակ» (Նույն տեղում):
Շիրվանզադեն վճռականապես և խոր համոզվածությամբ հանդես էր գա-
լիս իբրև իր ազգի, ժողովրդի վսեմ ձգտումների ու իդեալների թարգման. նա
ձգտում էր բարձր պահել նրա դրոշակը՝ իբրև արդարության, ազատության,
ազգային արժանապատվության, ազգային գոյության պաշտպանության դրո-
շակ՝ ընդդեմ այն բոլոր կուսակցությունների ու մութ ուժերի, ժողովրդի ոգուն
խորթ այն միտումների, որպիսիք օբյեկտիվորեն անզոր էին արտահայտելու
պատմական առաջընթացը, ժողովրդի կենսական շահերը:
Այդպիսին էր Շիրվանզադեն 80—90-ական թթ., 900-ական թթ. սկզբին.
նա անդուլ մաքառում էր քննադատական ռեալիզմի լիակատար հաղթանակի,
պատմական ճշմարտության բացահայտման համար, գրական ծանր ճակատա-
մարտերում նվաճելով դասական ռեալիզմի նոր բարձունքներ, ռեալիզմին հա-
ղորդելով խոր բովանդակություն:
Շիրվանզադեն տեսնում էր հասարակության խոր, անհաշտելի հակասու-
թյունները՝ «աշխատավոր դասակարգը» մի կողմից, «քարսիրտ բուրժուա-
ներ»-ին մյուս կողմից, հակառակ բուրժուազիայի կամքի տեսնում էր բան-
վոր դասակարգի հզորացող ուժը: Գիտական խորությամբ ու արվեստագետի
մեծ ուժով Քաոսում նա թափանցում է արդյունաբերական քաղաքի խորքը,
ճշմարտացի ու կուռ տրամաբանությամբ, համոզիչ կերպարների ու պատկեր-
ների միջոցով ներկայացնում պատմական այն ճշմարտությունը, որ ատելու-



թյունն առաջանում է ոչ թե ազգային տարբերությունից, այլ բացառապես
հարկադրանքից ու բռնությունից, արհամարհանքից ու մարդկային արժանա-
պատվության ոտնահարումից, տնտեսական-հասարակական կառուցվածքից
ու կեցությունից: Մյուս կողմից նա ցույց է տալիս, թե ինչպես բանվորական
բազմազգ կոլեկտիվում դրսևորվում է մարդկային հարաբերությունների այն-
պիսի բարձր որակ, երբ իսպառ չքանում է ազգային ատելությունը, ստեղծվում
են ազգերի միասնություն, փոխադարձ համագործակցություն, որը և հենց ունի
ինտերնացիոնալ, սոցիալիստական բովանդակություն:
Ուրեմն ոչ թե ազգն ու ազգային տարբերությունն են մարդկանց դժբախ-
տության պատճառը, ինչպես մտածում էր Ալիմյան-հայրը, այնուհետև որդին՝
Սմբատը, սկզբում նաև Անտոնինա Իվանովնան, այլ բռնությունը, ինչպիսի
համոզման վերջում հանգում է Անտոնինա Իվանովնան, տնտեսականը, տըն-
տեսակարգը, ինչպես ճիշտ եզրակացության է հանգում և Միքայել Ալիմյանը՝
բանվոր-անհատին դիտելով իբրև կյանքի արարիչ:
Բանվորական բազմազգ կոլեկտիվն է, կոլեկտիվի ստեղծարար ոգին, ու-
ժը, նկատում է Շիրվանզադեն, որ իր մեջ կրում է մարդկային լավագույն
հատկանիշները: Այն է պատրաստ և ի վիճակի պաշտպանելու ո՛չ միայն իր,
այլև ուրիշի, այլազգի մարդու, ողջ մարդկության շահերը: Շիրվանզադեն թեև
չի ներկայացնում դասակարգային պայքարը, բայց ստեղծում է բանվորի այն-
պիսի անհատականացված ու կենդանի կերպարներ, Բաքվի նավթարդյունա-
բերական կյանքն արտացոլող բանվորական կոլեկտիվի մասսայական
վառ տեսարաններ, որոնք հատկանշում են բանվոր դասակարգի այն պո-
տենցիալը, հրաբխային անկասելի խորտակիչ ուժերը, որի վրա նստած էր
բուրժուազիան:
Ազգային ատելությունը Շիրվանզադեն չէր համարում ինքնածին: Այն,
ինչպես տեսանք վեպում, նա դիտում էր իբրև բռնության հետևանք: Ազգային
հարաբերությունների մեջ բնածինը, բնականը նա համարում էր ժողովուրդ-
ների փոխադարձ սերը, փոխօգնությունը, համագործակցության անկասելի
ձգտումն՝ իբրև նրանց կյանքի, ազգային մշակույթի զարգացման ու կատա-
րելագործման հավաստի ու հավիտենական գործոններ: Պատմական այդ ճըշ-
մարիտ հայեցողությամբ իսկ Շիրվանզադեն ստեղծեց իր Ջնուդի ականջը
(1906) հայտնի պատմվածքը՝ ռուսական առաջին հեղափոխության օրերին:
Մեծ գեղագետը ցարական բովանդակ Ռուսաստանը համարում էր դժոխք,
գովերգում նրա դեմ ոտքի ելած ըմբոստ «ազգերն ու դասակարգերը»: Նրա
հերոսը պատմում է, թե ինչպես Վարշավայում պայթող հեղափոխության թըն-
դյունն արձագանքվում է Լեհաստանի գյուղերում, ուր ...ժողովուրդն արթնա-
ցել էր հարյուր տարվա թմնավոր նիրհից և ականջ էր դնում հյուսիսին (տե՛ս
ԵԼԺ, հ. 1, 1930, էջ 289): Ինչպես Լենինն էր գրում. «Ամբողջ երկրով ծայրից-
ծայր անցած մասսայական գործադուլների հորձանքներն էին միայն, որ
...զարթեցրին գյուղացիության լայն մասսաներին լեթարգիական քնից» (Եր-
կեր, հ. 23, էջ 320—321):
Ակնհայտ է, որ Շիրվանզադեն, ամենից առաջ, պահանջում էր քաղաքա-
կան ազատություն՝ ընդդեմ ազգային բռնությունների, և այդ ազատությունը
նա տեսնում էր արդեն ռուսական առաջին հեղափոխության մեջ:
Արդարև, քաղաքական ազատության էին ձգտում մեր դասական գրողնե-
րը: Այդպիսին էր նաև Սիամանթոն, որի ցասման ու հատուցման՝ ազգային-

ազատագրական զգայացունց և փոթորկահույզ պոեզիան ռուսական առաջին հեղափոխության օրերին հասավ իր զարգացման բարձունքին՝ Զա՛րկ (1905) բանաստեղծությամբ։ Մեծ գեղագետը հեղափոխության մեջ էր տեսնում նաև կովկասյան ժողովուրդների շղթաների «զայրագին փշրումը» և պատմական բախտով կապված այդ «ավերակյալ և արցունքոտ» ժողովուրդներին միասնական պայքարի կոչում թագակիր ցարի դեմ, հեղափոխության մեջ տեսնելով ողջ մարդկության «ոսկեղեն դարագլուխը»։

*Զա՛րկ, վասնզի Ազատություն ու ամեն Արև Քու հարվածիդ կայծերեն պիտի ծնանին.*
*Զա՛րկ, Քու անթառամ սիրույդ և ատելությանդ չափին խորությանը համեմատ.*
*Զա՛րկ, զա՛րկ, ահավասիկ հորիզոնները կը կապուտնան, ահավասիկ Առավոտները*
*կը ճեղքվին,*

*Զա՛րկ, ազատաբեր հարվածիդ շռինդը Մասիսեն ի Տավրոս և մինչև հայրենիքին*
*խորերը կը թնդա։*
(Ընտիր երկեր, 1967, էջ 41—42)։

Պատմական-գրական այս փաստերի վկայակոչմամբ իսկ հավաստվում է, թե ինչպես ռուսական առաջին հեղափոխության իրադարձությունները, հիրավի, խոր ակոս էին բացում մեր գրականության մեջ, գրողներին տոգորում հեղափոխության հաղթաղափոխական բարձր խոհերով ու զգացումներով, հեղափոխության հաղթանակի հանդեպ ունեցած անսասան հավատով։ Պատմական ճշմարտություն պետք է համարել Վ. Փափազյանի՝ «Գրողը... կարապետն է եղել հեղափոխությունների» թևավոր արտահայտությունը (տե՛ս «Արշալույս», 1905, № 57)։

Դժվարին, երբեմն ծանր անցումներով մեր դասական գրողները քայլ առ քայլ գալիս էին դեպի հեղափոխությունը։ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունն ավելի պարզություն ու որոշակիություն մտցրեց նրանց հայացքների մեջ, նրանց համար անառարկելիորեն պարզ դարձավ, որ Հոկտեմբերյան հեղափոխությունն է կենսագործում հայ ժողովրդի ազատագրումը, հեղափոխություն, որ ղեկավարում, իրագործում էին բոլշևիկները։ Պատմական այդ ճշմարտությունն է արտահայտված Շիրվանզադեի 1920-ի հուլիսի 2-ի հայտնի նամակում՝ ուղղված Մաքսիմ Գորկուն։

«Մեծարգո Մաքսիմ Գորկի, գրում եմ Ձեզ Ամերիկայից։ Թերթերից ես իմացա, որ Կովկասը գրեթե գրավված է բոլշևիկների կողմից։ Ես հավատում եմ, որ սովետական կառավարությունը կհաջողվի խաղաղություն հաստատել անմտորեն իրար հետ թշնամացած ծայրամասերի ժողովուրդների մեջ և ենթարկել նրանց մի ընդհանուր օրենքի՝ սիրո, եղբայրության, ճշմարտության և արդարության օրենքին» (տե՛ս Գ. Հովհնան, Մ. Գորկին և հայ կուլտուրան, 1951, էջ 139)։

Շիրվանզադեի հույսերը լիապես արդարացան. Հայաստանը նվաճեց իր ազատությունը և ստեղծեց ազգային լիակատար վերածնության հնարավորություն։ Մեծ գեղագետը 1926 թ. վերադարձավ Սովետական Հայաստան՝ իր երախտագիտության ու հիացմունքի խոսքն ուղղելով կոմունիստական կուսակցությանը, նրա առաջնորդ Լենինին։ «Ես խոնարհում եմ իմ ալեհեր գլուխը Լենինի հանճարեղ ուսմունքի առջև,— հուզմունքով գրում էր նա,— որն սպառիչ կերպով լուծել է ազգային հարցը...» («Խորհրդային Հայաստան», 1932, № 79)։

Պատկառելի հասակում Շիրվանզադեն, պատանեկան խանդավառությամբ, սկսեց ստեղծագործել Սովետական Հայաստանում, իր տաղանդը ներդնելով սոցիալիզմի շինարարության գործում։ Նրա սովետական շրջանի ստեղծագործությունը նշանավորվեց նաև Կյանքի բովից հուշագրության ավարտմամբ ու վերամշակմամբ։ Այդ երկում ռեալիստ գեղագետը հանգեց XX դարի մեծագույն ճշմարտությանը՝ սոցիալիստական իդեալին։ «Հասարակական իրավակարգերը պիտի արմատապես փոխել,— գրում է Շիրվանզադեն,— ...միայն սոցիալիզմը կարող է մարդկային զազրելի բնազդները սանձահարել»։



Ավետիք Իսահակյանի ստեղծագործական ոգու դրամատիզմի ակունքը ո՛չ միայն կյանքի ու մահվան հավիտենական բախումն էր, բնությանը ներդաշնակվելու և դրան չհասնելու հակասական, սուր զգացմունքը, որը հարուցում էր մշտական տագնապ, այլև հայ ժողովրդի՝ սխրանքներով ու ողբերգությամբ լի ազգային-սոցիալական կյանքը, համամարդկային տառապանքը, սիրո ու կարոտի մշտական, անշեջ զգացմունքը կյանքի հանդեպ։

Դեռևս պատանեկան տարիներին, հայրենի Շիրակում մեծ արվեստագետը տեսնում էր ծով թշվառություն՝ կոտորած ու ավեր, արյուն ու արցունք, ժողովրդի անդուլ մաքառումները սուլթանիզմի ու ցարիզմի բռնի տիրապետության դեմ, ու սիրտը լցվում էր ցավով, ցասմամբ։ Նա խորհում էր իր տարաբախտ ժողովրդի, մարդու, մարդկայինի մասին, այն մասին, որ բովանդակ հողագնդի վրա իջել է «ծանր մղձավանջային գիշեր...»։ Եվ ո՛չ միայն հայը, այլև «Բովանդակ աշխարհը լաց ու կոծի մեջ է, բոլոր ժողովուրդները լծի տակ են առնված, ուժեղը լափում է թույլին... դասակարգերի արյունոուշտ հակասություն, տնտեսական վայրագ անարխիա, անագորույն կռիվ՝ ամենքը ամենքի դեմ, ամենուրեք ոճիրներ, եղեռններ, նախճիրներ...

Ի՞նչ անել, մարդկությունը ինչպե՞ս ազատել այս դժոխքից» (Երկեր, հ. 4, 1959, էջ 244—245)։

Բանաստեղծը ելք էր որոնում։ Նա դեգերում էր ուսմունքից ուսմունք, տարվում փիլիսոփայական, գեղագիտական, սոցիոլոգիական այլազան սիստեմներով, հաճախ՝ հակասական ու տարամերժ։ Նա մերթ տոգորվում էր լավատեսությամբ, դառնում մարտնչող ու ոգեկոչող, մերթ մատնվում հուսախաբության, բացասում կյանքը, բայց միշտ մնում իր ժողովրդի հետ, ժողովրդի համար, նորանոր ուժեր քաղում նրանից, նրա կենսափիլիսոփայությունից։ Միայն հոկտեմբերյան մատույցներում է նա ազատվում տանջալից մտորումներից, հանգում սոցիալիստական գաղափարախոսությանը։

Իր անցած բարդ ու հակասական, տառապագին ուղին հիանալի ուրվագծում է ինքը՝ բանաստեղծը։ «Պատանի հասակից,— գրում է նա տարիներ անց, Սովետական Հայաստանում,— ինձ մշտապես հուզել է, մտալլկել է աշխարհիս մեջ գոյություն ունեցող չարիքը, մարդկությանը տառապեցնող չարիքները՝ աղքատություն, տգիտություն, բռնություն, շահագործում, ոճիրներ։ Ինձ տանջել է հայ աշխատավոր ժողովրդի դառն վիճակը՝ Սուլթանի և ցարի դաժան լուծերի տակ, և այդ չարիքները վերացնելու գործը, փրկության միջոցները։

Ինչո՞վ չեմ տարվել, ի՞նչ փիլիսոփայական, էթիկական, հասարակագիտական սիստեմներով՝ ազատագրելու տառապող մարդկությունը։

Եղել եմ տոլստոյական, նիցշեական, Գերմանիայում ուսանող ժամանակս՝ սոցիալ-դեմոկրատ։ Հուսահատված՝ դարձել եմ անիշխանական, պեսիմիստ։ Տարվել եմ Բուդդայով։ Ոգևորվել եմ հայկական մարտական ազգայնությամբ, դաշնակցական ո՛չ երկրորդական գործիչ՝ աշխատել եմ անձնվիրաբար, բանտեր եմ նստել, աքսորվել, փախել հայրենիքից։

Ըմբոստացել եմ կապիտալիզմի դեմ, հասարակության դեմ, ամեն ինչի
դեմ։ Եվ, վերջ ի վերջո, երկար խորհելուց, կշռելուց, դատելուց հետո, վերստին
եկել-կանգնել եմ սոցիալիզմի վրա, և տարիներ են անցել, որ կանգնել եմ այդ
փրկության լաստի վրա» (Նույն տեղը, էջ 390—391)։

Այդ ամենը զարգացման ընթացքի մեջ իր ողջ հակասականությամբ և մեծ
ուժով արտացոլվել է խոշորագույն բանաստեղծի և՛ պոեզիայում, և՛ արձա-
կում, սկսած 90-ական թվականներից մինչև կյանքի արևամուտը։ Այսպես,
ռուսական առաջին հեղափոխության տարիներին նա առաջինը հայ գրակա-
նության մեջ ստեղծեց գյուղացի հեղափոխականի կերպարը։ Եթե Շիրվանզա-
դեի հերոսը՝ Այգեկմանը (Ջհուդի ականջը) պատմում է հեղափոխության մա-
սին, ապա Իսահակյանը պատկերում է այն իր Շաւրո Վալիշվիլի (1906)
պատմվածքում։ Նա ստեղծում է վրաց, հայ, ու ապստամբ գյուղացիների գլուխն
անցած հեղափոխականի հմայիչ կերպարը, անմիջականությամբ ու խանդա-
ղատագին արտահայտում 1905 թ. գյուղացիական հեղափոխական ընդվզում-
ները։ «1905-ին էր, հավիտյան անմոռանալի այդ թվականը, երբ անծայրածիր
Ռուսաստանի վրա, նրա մի եզրից մինչև մյուսը, հեղափոխության դրոշն էր
ծածանվում, որի տակ հավաքվում էին բոլոր իրավազուրկները, բոլոր տանջ-
վածները, բոլոր ազատասերները» (Երկեր, 1955, էջ 183)։

Գյուղացիական հեղափոխական շարժման ղեկավարի կերպարը բանաս-
տեղծը կերտում է պոետական գեղեցիկ գույներով։ «Քարակուռ բարձունքի
վրա կանգնել էր մի կրակոտ երիտասարդ՝ ձախ ձեռքին բարձր բռնած կարմիր
դրոշակը, որի վրա փողփողում էին «Ազատություն, եղբայրություն, հավա-
սարություն» նշանաբանները... Հիմա ձեզանից ո՞վ կկամենա կռվել և արյուն
թափել հողի և ազատության համար,— դիմում է նա իր շուրջը խռնված
ապստամբ մասսաներին.— կամեցողը թո՛ղ գա, կանգնի այս դրոշակի տակ։
— Մենք բոլորս կկռվենք, մենք բոլորս պատրաստ ենք մեռնելու. սուրբ
է մեզ համար ազատության դրոշակը...— Մի մարդու նման որոտաց ժողո-
վուրդը» (Նույն տեղը)։

Այս կերպարը նոր էր հայ գրականության մեջ։ «Ռուսական գյուղում,—
գրում է Լենինը,— Երևան եկավ մի նոր տիպ— երիտասարդ գիտակից գյուղա-
ցին... Նա գյուղական ընկերներին բացատրում էր քաղաքական պահանջների
նշանակությունը, նա կոչ էր անում պայքարելու խոշոր հողատեր-ազնվական-
ների դեմ...» (Երկեր, հ. 23, էջ 321)։

Ռեակցիայի տարիներին, երբ արդեն փոխվում էր իրավիճակը, հեղափո-
խական կերպարին փոխարինում է Աբու Լալա Մահարին՝ իր մռայլ և գրեթե
ամեն ինչ բացասող հոգեբանությամբ։ Ռեակցիան ներկայանում էր բանաս-
տեղծին իբրև ամեն ինչ ամայացնող հասարակական մեծ չարիք, հարուցելով
ամենախռովահույզ զգացումներ ու խոհեր։ Բայց ահա Հոկտեմբերյան սոցիա-
լիստական հեղափոխության օրերին ծնվում է հայ ժողովրդական էպոսից
առնված Սասմա Մհերի վիպական կերպարը։ Պատմության խորքերից եկած
նոր հերոսն արտահայտում էր իր ժողովրդի վսեմ երազանքները, ողջ մարդ-
կության գեղեցիկ իդեալները, հանդես գալիս իբրև «աշխարհանեղաշրջման և
աշխարհավերակառուցման պատգամախոս»։

Հեղափոխությունը բանաստեղծին ներշնչում էր իրական ազատության,
ազգային վերածնության ռեալ հույսեր. հայ ժողովրդի փրկությունը նա տես-
նում էր սոցիալիստական հեղափոխության մեջ. «Մեծ հավատ ունեմ... փրկ-



վեցին հայերը»,— վճռականապես ազդարարում էր նա տակավին 1917 թվա-
կանին Ցոլակ Խանզադյանին ուղղած իր մի նամակում. «Սուրբ Սարգսի պես
հասավ հեղափոխությունը,— այնուհետև հավաստում էր նա 1918-ին» (տե՛ս
ԳԱԹ, Իսահակյանի արխիվ, № 20, 71)։

Իսկական գրողը, ինչպես երևում է Իսահակյանի կյանքի և ստեղծագոր-
ծության ողջ ընթացքից, որպես բարոմետր, զարմանալի զգայուն ու կենսա-
թրթիռ է հասարակական կյանքի հանդեպ, մտահոգված իր ժողովրդի ազա-
տության, ազգային վերածնության բախտով, անդուլ որոնում է հասարակա-
կան գործուն ուժեր, այդ ուժերը ղեկավարող կուսակցություն, որը բերելու է
ռեալ ազատություն։

Թումանյանը 1917—1920 թթ. խորապես զգում էր այլազան կուսակցու-
թյունների՝ մենշևիկների, մուսավաթականների, դաշնակների քաղաքականու-
թյան ու գործողությունների բախտախնդիր բնույթը և հակադրվում։ Թեև
նրանք խոսում էին ժողովրդի, նույնիսկ սոցիալիզմի անունից, բայց էապես
խորթ էին ժողովրդի ոգուն, ատում էին սոցիալիզմը։ «Մեյդանը լիքն են կեղծ ու
այլանդակ քրիստոնյաներով ու կեղծ սոցիալիստներով,— ասում էր բանաս-
տեղծը,— այսպես կոչված գայլադեմ սոցիալիստներով և սոցիալիզմի գաղա-
փարագարներով» (ԵԺ, հ. 6, էջ 242)։

Բանաստեղծը, ահա, սրանցից էր վախենում. վախենում էր կեղծ սոցիա-
լիստներից, բախտախնդիր դաշնակներից։ Նա պաշտպանում էր մարդու աշ-
խատանքի ու վաստակի արդար բաշխման գաղափարը, գտնելով, որ այն «էն-
քան սուրբ է ու վսեմ» (Նույն տեղում, էջ 241), թեև իրեն չէր համարում սո-
ցիալիստ։ Բանաստեղծն այդ պատճառով էլ կտրուկ մերժում էր «Ժողովրդի
ձայն» օրաթերթի խմբագրության հրավերը, մերժում «զինվորագրվել են» նրա
կոչ-բնորոշումը, գտնելով, որ այն իր տեղը չի, ինչպես և իր տեղը չի եղել
«Հորիզոնը», թեև մի ժամանակ խմբագրել է այն։ Անհուն նվիրվածությամբ
Թումանյանը զինվորագրված էր իր ժողովրդին և ո՛չ «Հորիզոնին» կամ «Ժո-
ղովրդի ձայն» օրաթերթին։ «Մենք ջարդված, տանջված, ցրված մի ժողովուրդ
ենք,— ասում էր նա,— մեզ հարկավոր է խաղաղություն, կուլտուրական կյանք
և մի պայման, որ մեր ազգային ինքնորոշման դեմ հարվածներ չլինեն։ Ով որ
հային կտա էդ պայմանները— տված կլինի ամեն բան» (ԵԺ, հ. 6, էջ 180)։

Եթե Հայաստանն ազատագրելու դրոշի տակ դաշնակներն սքողում էին
բուն ճշմարտությունը՝ դասակարգային սուր հակասությունների, սոցիալական
ռեալ հակամարտությունների առկայությունը մի ազգի շրջանակներում, գըտ-
նելով (ինչպես ռուս գրող Բալմոնտը), որ հայրենիքը, իբր, միացնում է «վա-
ճառականին ու գյուղացուն, բանվորին ու բանաստեղծին, զինվորին ու գենե-
րալին», ապա Թումանյանը բոլոր չարիքների պատճառը տեսնում էր հենց
մարդկանց սոցիալական հակադիր շահերի, մասնավոր սեփականության, բըռ-
նության մեջ (Թագավորն ու չարչին, 1917), այդ ամենին հակադրում Ռուսաս-
տանում արդեն ստեղծված սոցիալիստական հայրենիքը։

1917—1920 թվականներին Անդրկովկասում արագ փոխվում էին իշխող
կուսակցությունները, և այդ փոփոխությունները ժողովրդին բերում էին նորա-
նոր աղետներ, փորձություններ ու զոհաբերություններ, մարդկանց հոգին լըց-
նում մահաշունչ տագնապով։ Առանձնապես ահաբեկված էր հայ ժողովուրդը,
որովհետև նրա մի հատվածն արդեն ոչնչացվել էր Արևմտյան Հայաստանում,

մյուսը 1918 թվականից անջատված էր Ռուսաստանից, գտնվում էր դաշնակ-
ների իշխանության տակ, անպաշտպան, ենթակա դարձյալ թուրքական ներ-
խուժման, հոշոտման, ոչնչացման։

Թումանյանը դատապարտում էր մենշևիկներին, դաշնակներին, մուսա-
վաթականներին՝ իբրև կեղծ սոցիալիստներ, որոնք մարտնչում էին սոցիա-
լիստական հանրապետության դեմ, ձգտում հավերժացնել մասնավոր սեփա-
կանության վրա կառուցված հասարակարգը։

Մեծ բանաստեղծի հոգին զայրույթով ծառանում էր ընչաքաղցության
դեմ, սեփականատիրոջ չարախնդության, գայլային վերաբերմունքի, կամա-
յականության, բռնության դեմ։

Անբուն կկուն ուղղված է ահա, այդ կեղծ սոցիալիստների դեմ, որոնք սե-
փականությունը համարում էին աստվածադիր կարգ, սեփականատիրոջ իրա-
վունքները՝ անսահմանափակ։

Չե՞ս իմանում, որ առանց ինձ
Զագ չըպիտի դուրս գա ձվի՞ց...

սաստում է գայլը կկվին։

Անբուն կկուն անտուն հայն էր։ Բանաստեղծն իր Անբուն կկուն դարձրել
է քաղաքական սուր սատիրա՝ «ուղղված Անդրկովկասում իշխող սեյմի, կեղծ-
սոցիալիստական ֆրազներով բուրժուա-նացիոնալիստական իրենց էությունը
քողարկող կուսակցությունների դեմ» (Թումանյան, Ուսումնասիրություններ և
հրապարակումներ, հ. 1, 1964, էջ 58)։

Թումանյանն անշեղ ու սրբազան նվիրումով էր գալիս դեպի բոլշևիկները,
Թումանյանն անշեղ ու սրբազան նվիրումով էր գալիս դեպի բոլշևիկները,
խորապես հավատում կոմունիստական կուսակցության ազատագրական առա-
քելությանը, նրա գործողությունները, որոշումները համարելով պատմակա-
նորեն միակ ճշմարիտը։ Սերգեյ Գորոդեցկուն ուղղած իր բաց նամակում
(1918) նա խոսում էր հենց բոլշևիկների մեծ խիզախումների, ռուս ժողովրդի
ազատագրական մեծ ու ազնիվ առաքելության մասին։

Թումանյանը, պատմական ճշմարտության իր խոր ըմբռնմամբ, ողջ գոր-
ծունեությամբ ու ստեղծագործությամբ պաշտպանում էր բոլշևիզմը։ Թուման-
յանը մեծ խորհուրդ էր տեսնում Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի
մեջ։ Այդ խորհուրդը մարդ-անհատի փրկությունն էր, փոքր ժողովուրդների
ազատագրությունը. «Մեծ պատերազմի հաղթությունը,— ասված է նրա գրա-
ռումներից մեկում,— եղավ ռուսական բոլշևիզմը։ Նա եղավ էն ցնցումը, որ
նոր հոգեբանություն ու նոր կյանք է առաջ բերելու։ Նոր ճամփի վրա է գցում։
Հնի խորտակումն է... իմպերիալիզմի և կապիտալիզմի դեմ բողոքել են բոլո-
րը— ցրիվ և դժգոհ են եղել բոլորը— սա միանգամից էդ զայրույթը հավաքեց
և զարկեց։ Եվ ստիպում է [նոր] մտածել ու նոր ճամփա բռնել...» (ԵԾ, հ. 6,
էջ 249)։

Թումանյանը պարզորոշ տեսնում էր հաղթանակի ծանր ուղին, որն ան-
խուսափելիորեն տանում էր դեպի սովետական իշխանություն։ Ծանր փորձու-
թյունից դուրս գալու, նոր կյանք սկսելու, զարգացնելու միակ պայմանը Թու-
մանյանը համարում էր խաղաղությունը, մարդ զաղանի անօրինակ չարագոր-
ծությունների դադարեցումը, ազգային ինքնության, մարդ-անհատի պոտեն-
ցիալի բացահայտման ու զարգացման նոր պայմանների ստեղծումը։ Նա ունեւ
այդ խոր համոզումն ու հավատում էր դրան։ Բանաստեղծի լավատեսության
հիմքը բացառապես բոլշևիկյան կուսակցության վերջնական հաղթանակի հան-



դեպ ունեցած հավատն էր։ Հակառակ այն ժամանակվա խավարամիտ ուժերի՝
դաշնակների, մուսավաթականների, մենշևիկների, որոնց գործողությունները
բացառապես ուղղված էին Սովետական Ռուսաստանի, բոլշևիզմի դեմ, Թու-
մանյանը պարզ տեսնում էր կովկասյան ժողովուրդների կողմնորոշումը դեպի
Սովետական Ռուսաստանը։ Նա համոզված էր, որ ժողովուրդները, ի վերջո,
կգնան այդ ճանապարհով, ազատագրության միակ ռեալ ճանապարհով։ «Կով-
կասյան ժողովուրդները,— ասում էր նա,— հատկապես հայերն ու թուրքերը,
պարզ տեսնելու և խոստովանելու են իրենց ընդհարումների ամբողջ անմտու-
թյունը և հակառակ բոլոր մութ ուժերի ջանքերին մոտենալու և կապվելու են
իրար հետ։ Նրանց մոտիկությունը սկսվելու և կատարվելու է աշխատավոր
հասարակ ժողովրդի ձեռքով։ Կովկասյան սոցիալ-դեմոկրատիան,— այնուհե-
տև հավաստիացնում էր նա,— մեծ դեր է կատարելու սրա մեջ» (ԵԺ, հ. 4,
1951, էջ 315—316)։

Թումանյանը, ահա, հաստատուն կանգնած էր այդ պատմական ճշմար-
տության ուղու վրա, Սովետական Ռուսաստանի և նրա բոլշևիկյան կուսակցու-
թյան գործունեության մեջ տեսնելով ժողովուրդների փրկությունը՝ ի հակա-
դրություն դաշնակների «անկախ հանրապետության»։ «Եթե անկախությունը
թոկ է դառնալու հայությունը խեղդելու համար,— գրում էր Թումանյանը,—
չենք ուզում։

Եթե անկախ Հայաստանը դառնալու է մի փոքր վանդակ ամեն կողմից
դռները փակած և միակ դուռն էլ, որ բաց է— բաց է տաճիկ ասկյարի հա-
մար, չենք ուզում» (ԵԺ, հ. 4, էջ 249)։

Թումանյանի միակ իդեալն էր՝ «ռուսը— նոր կոմունիզմը» (նույն տե-
ղում, էջ 250), նրա մեջ էր տեսնում այն ուժը, որին կարող էր հավատալ,
ապավինել «ամեն մի ժողովուրդ ու մարդ», որին հավատում ու ապավինում
էին նաև հայ ժողովուրդը, հայ դասական գրողներն ու ողջ առաջավոր մարդ-
կությունը։ ...Դարավոր մաքառումներից հետո, համաշխարհային թոհ ու բոհից,
լայնածավալ ալեկոծությունների և աղետների ծովից գերագույն ճիգերով բարձ-
րանում է ազատ ու անկախ Հայաստանը»։

«Հայաստանի ազատ հողի վրա նա շինելու է իր ազատ ու առատ տունը,
Հայկական բարձրավանդակի վրա զարգացնելու է իր ազգային հանճարը և իր
խոսքն է ասելու աշխարհքին» (ԵԺ, հ. 4, էջ 427, 432)։

Այսպես, ուրեմն, հասարակության պատմական զարգացման նախանձա-
խնդիր հայ դասական գրողները՝ տոգորված քաղաքացիական ազնիվ պաթո-
սով, ստեղծեցին նվիրական ավանդներ, հայ գրականությունը— պոեզիան, ար-
ձակը, դրամատուրգիան, հասցրին արվեստի բարձր չափանիշների. Նրանց
ստեղծագործությունները դարձան սովետահայ գրականության զարգացման
խթանը և հարուստ զինանոցը։

շարք երկրներ և այլն)։ Չպետք է մոռանալ, որ համաշխարհային պատերազմ կամ լոկալ միջադեպեր սանձազերծելու իմպերիալիստների փորձերը չեն բացառված նաև ապագայում։ Դրա համար կուսակցությունը պահանջում է աչալրջություն ցուցաբերել պատերազմի հրձիգների մեքենայությունների հանդեպ։

ՍՄԿԿ XXIV համագումարում Լ. Ի. Բրեժնևը հայտարարեց. «Վիետնամի Դեմոկրատական Հանրապետությունը կարող է համոզված լինել, որ թե՛ զինված պայքարում և թե խաղաղ աշխատանքում ինքը կարող է այսուհետև ևս ակնկալել Սովետական Միության եղբայրական աջակցությունը»։ Լենինյան կուսակցության համագումարի բարձր ամբիոնից ասված այս խոսքերի մեջ արտահայտված է մեր հաստատ և անփոփոխ քաղաքականությունը։ Մենք անշեղորեն վարել ենք ու կվարենք այդ կուրսը։ Վիետնամի մարտնչող ժողովրդին աջակցելը սովետական մարդիկ իրենց սրբազան պարտականությունը, իրենց ինտերնացիոնալ պարտքն են համարում։

Սովետա-վիետնամական անխախտ բարեկամության և եղբայրության հետագա ամրապնդման գործին է ծառայում ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Ն. Վ. Պոդգոռնու գլխավորած սովետական կուսակցական-կառավարական պատվիրակության՝ Վիետնամի Դեմոկրատական Հանրապետություն կատարած այցը, որը տեղի ունեցավ 1971 թվականի հոկտեմբերի 3—8-ը։

«Պատերազմի, այսպես կոչված, «վիետնամացումը», այսինքն՝ հանուն Վաշինգտոնի վիետնամցիներին վիետնամցիների ձեռքով բնաջնջելու պլանը, ագրեսիան Կամբոջայի ու Լաոսի վրա տարածելը՝ այս ամենը Ամերիկային դուրս չի քաշի Հնդկաչինում մղվող կեղտոտ պատերազմի ճահճուտից, չի սրբի այն խայտառակությունը, որի մեջ այդ երկիրը գցեցին նրանք, ովքեր սանձազերծեցին ու շարունակում են ագրեսիան» (կուսակցության XXIV համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումից)։

Խոսելով Հնդկաչինում ծավալված ագրեսիան Վաշինգտոնի կողմից ընդլայնելու մասին, անհրաժեշտ է ընդգծել հետևյալ փաստը. ինտերվենցիան Կամբոջայի ու Լաոսի դեմ սանձազերծվել է հօգուտ ԱՄՆ-ի այն ծայրահեղ ռեակցիոն շրջանների, որոնք չեն դադարում ամերիկյան իմպերիալիզմի «ռազմական հաղթանակի նվաճումներ» պահանջել Հարավ-Արևելյան Ասիայում։ Այդ լույսի տակ հստակորեն երևում է ԱՄՆ-ի պաշտոնական ներկայացուցիչների այն պնդումների ստահոդությունը, թե Հնդկաչինից ամերիկյան զորքերի մասնակի դուրսբերումը նախատեսող «վիետնամացումը» իրենից ներկայացնում է «խաղաղության ճանապարհ» երկրագնդի այդ շրջանում։ Սպիտակ տան այժմյան վիետնամական քաղաքականությունը, որն արտացոլում է խոր ներքին ճգնաժամը բուն ԱՄՆ-ում, վկայում է այն մասին, որ Միացյալ Նահանգները անկարող են հասնել իրենց գլխավոր նպատակին՝ ընկճել ազգային ազատագրական շարժումը Հնդկաչինում։ Անտարակույս է, որ ոչ մի խորամանկ ստրատեգիա ամերիկյան ագրեսորներին չի կարող փրկել պարտությունից։

ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը մեր ժողովրդի համար ապահովում են կայուն խաղաղություն։ Սովետական Միությունը միակ խոշոր պետությունն է, որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո չի պատերազմել։ Մեր ժողովուրդը բարձր է գնահատում խաղաղության բարիքները, որոնք կուսակցության ու կառավարության իմաստուն քաղաքականության արգասիք են։ «Մենք գիտենք, մենք չափազանց լավ գիտենք,— նշում էր Վ. Ի. Լենինը,— թե ինչպիսի անասելի թշվառություններ է բերում բանվորների ու գյուղացիների համար պատերազմը։ Ուստի մենք պետք է ամենազգույշ և շրջահայաց ձևով վերաբերվենք այս հարցին» (հատոր 33, էջ 162)։

Գրեթե կես դար առաջ արտասանած այս խոսքերն առանձնահատուկ նշանակություն են ստանում այժմ, երբ ստեղծվել է ավերումների չլսված ուժ ունեցող հրթիռամիջուկային զենք։

Խաղաղության ամրապնդման համար անհրաժեշտ են առաջադիմական բոլոր ուժերի հզորության անընդհատ աճ ու կատարելագործում։ Սովետական Միության տնտեսական և քաղաքական հզորությունը, էկոնոմիկայի ու կուլտուրայի ասպարեզում ձեռք բերած վիթխարի նվաճումները նպաստում են խաղաղության պահպանմանը, ՍՍՀՄ-ի և սոցիալիստական բոլոր երկրների համագործակցության միջազգային դիրքերի հետագա ամրապնդմանը։ Իմպերիալիստները լավ են հասկանում միջազգային պրոլետարիատի համերաշխության ամբողջ ուժը։ Հենց դրա համար էլ սոցիալիզմի ուժերի դեմ, հեղափոխական շարժման դեմ իրենց պայքարում նրանք հույսը դնում են նացիոնալիզմի վրա։ Նրանք ձգտում են այդ ճանապարհով տարանջատել, մասնատել կոմունիստական շարժումը, հեղափոխական հիմնական ջոկատները հակադրել միմյանց։

ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած՝ մեր կուսակցության միջազգային գործունեության ծրագրի մեջ ի մի են ձուլված սովետական ժողովրդի ազգային շահերը և նրա ինտերնացիոնալիզմը։ Խաղաղության սովետական ծրագիրը հաստատում է լենինյան արտաքին քաղաքական կուրսի անխզելի հետևողականությունը։ Այդ քաղաքականության սկզբունքները մշակվել և գրվել են Վ. Ի. Լենինի կողմից։ Ծրագիրը կոմպլեքսա-



յին բնույթ է կրում, նրա մեջ օրգանապես շաղկապված են սովետական արտաքին քաղաքականության մերձավորագույն խնդիրները և հեռանկարային նպատակները։ Այդ ծրագրին հատուկ են հակաիմպերիալիստական մարտական ոգին, դասակարգային հստակ կողմնորոշումը և, միևնույն ժամանակ, ռեալիստական, կոնստրուկտիվ մոտեցումը բանակցությունների ու համագործակցության մեթոդներով լուծելու հասունացած միջազգային պրոբլեմները։ Ինչպես միշտ, մենք հաստատ ենք մնում պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սոցիալական տարբեր հասարակարգ ունեցող երկրների խաղաղ գոյակցության սկզբունքներին։ Միջազգային ասպարեզում մեր գործողությունների հիմքում ընկած են ոչ թե կոնյունկտուրային կարգի ժամանակավոր, անցողիկ նկատառումներ, այլ սկզբունքային ստրատեգիական կուրսը, որը խարսխվում է համաշխարհային զարգացման օրինաչափությունների գիտական վերլուծության վրա։

Վերջին ամիսների իրադարձություններն ամբողջովին հաստատեցին մեր կուսակցության XXIV համագումարի կողմից միջազգային դրությանը տրված գնահատականի ճշտությունը և խաղաղության մեր ծրագրի արդյունավետությունը։ Այդ ծրագիրը հաջողությամբ իրագործվում է։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը մի շարք կարևոր քայլեր են ձեռնարկել համաշխարհային քաղաքականության բոլոր հիմնական ուղղությունների և պրոբլեմների առթիվ։

Սոցիալիստական պետությունների ղեկավար գործիչների՝ անցյալ տարվա օգոստոսին Ղրիմում կայացած հանդիպումը ծառայեց սոցիալիզմի երկրների միասնության ու համախմբվածության հետագա ամրապնդմանը։ Բարեկամության ու համագործակցության պայմանագրեր կնքվեցին Եգիպտոսի և Հնդկաստանի հետ։ Որոշակի դրական արդյունքներ են ձեռք բերվել ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման շուրջ վարվող սովետա-ամերիկյան բանակցություններում։ Ամբողջ աշխարհը, խաղաղասեր բոլոր ուժերը գոհունակությամբ ընդունեցին միջուկային հինգ տերությունների կոնֆերանս հրավիրելու և բոլոր պետությունների մասնակցությամբ զինաթափման պրոբլեմներին նվիրված համաշխարհային կոնֆերանս անցկացնելու, Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերը և սպառազինությունները կրճատելու, մանրէաբանական զենքն արգելելու, ստորգետնյա միջուկային փորձարկումները դադարեցնելու վերաբերյալ և սովետական մյուս առաջարկությունները։

Սոցիալիստական երկրների միջև բարեկամության և բեղմնավոր համագործակցության նպատակներին ծառայեցին ընկեր Բրեժնևի՝ վերջին ամիսներին կատարած այցելությունները Հարավսլավիա, Բուլղարիա, Հունգարիա, Գերմանական Դեմոկրատական Հանրապետություն, ինչպես նաև ընկեր Ա. Ն. Կոսիգինի այցը Կուբայի Հանրապետություն։ Վերջին ժամանակաշրջանում բանակցություններ տեղի ունեցան մի շարք ազատագրված երկրների՝ Եգիպտոսի, Ալժիրի, Հնդկաստանի, Սոմալիի և այլ, ինչպես նաև մի շարք կապիտալիստական երկրների պետությունների ու կառավարությունների ղեկավարների հետ։

Այս բոլոր միջոցառումների նպատակն է եղել Սովետական Միության և ամբողջ սոցիալիստական համագործակցության միջազգային դիրքերի ամրապնդումը, տարբեր սիստեմների պատկանող երկրների խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականության հետևողական կիրառումը, ազգային ազատագրության ուժերի պաշտպանությունը։ Դրանք գործուն ներդրում են խաղաղության, ժողովուրդների անվտանգության, ազատության ու առաջադիմության ասպարեզում։

Անցյալ աշունն իր հետ բերեց մյուս երկրների ականավոր պետական գործիչների և սովետական ղեկավարների մի շարք կարևոր միջազգային հանդիպումներ։

Արևմտյան Եվրոպայի երկրներից մեկը, որը բազմակողմանի համագործակցություն և արդյունավետ կապեր է հաստատել Սովետական Միության հետ, Ավստրիան էր։ Այդ երկրի արտաքին գործերի մինիստրության գլխավոր քարտուղար Վ. Վոդակը, երկար ժամանակ հանդիսանալով Ավստրիայի դեսպանը Մոսկվայում, «Վեստ-Օստ ժուռնալ» հանդեսի համարներից մեկում հրապարակել է մի հոդված, որի մեջ հիշեցնում է, որ վերջին վեց տարիների ընթացքում Ավստրիայի ու ՍՍՀՄ-ի միջև կնքվել է «չորս չափազանց կարևոր միջպետական համաձայնագիր, որոնցից երեքը՝ տնտեսական հարաբերությունների ոլորտում»։ Ավստրիան,— ընդգծում է Վ. Վոդակը,— արևմտյան առաջին երկիրն էր, որը գործողության ռեկորդային ժամկետով պայմանագիր կնքեց ՍՍՀՄ-ի հետ։ Ըստ այդ պայմանագրի ՍՍՀՄ-ը 20 տարվա ընթացքում Ավստրիային պետք է մատակարարեր սովետական գազ և փոխարենն ստանար գազամուղների խողովակներ ու այլ սարքավորումներ»։ «Այդ որոշման խելության լավագույն վկայությունը,— ավելացնում է հոդվածի հեղինակը,— հանդիսանում է Սովետական Միության կողմից նույնպիսի երկարաժամկետ համաձայնագրերի կնքումը Իտալիայի ու ԳՖՀ-ի հետ»։

ՍՍՀՄ-ի ու Իտալիայի միջև էկոնոմիկական ու գիտատեխնիկական համագործակցության միջկառավարական համաձայնագիրն ստորագրվեց 1966 թվականի ապրիլին։

1966 թվականին Սովետական Միությունն իտալական ՖԻԱՏ ֆիրմայի հետ գլխավոր համաձայնագիր կնքեց Վոլժսկի ավտոգործարանի նախագծմանն ու կառուցմանը համագործակցելու մասին, գործարան, որը տարեկան արտադրելու է ավելի քան 600 հազար մարդատար ավտոմոբիլ: «Ժիգուլի» մակնիշը կրող մեքենաներն արդեն երթևեկում են Սովետական Միության ճանապարհներով:

Սովետական Միության և Ֆրանսիայի միջև բարեկամական լայն համագործակցություն սկսվեց այն բանից հետո, երբ 1966 թվականի ամռանը ՍՍՀՄ այցելեց ֆրանսիական պետության այն ժամանակվա ղեկավար, գեներալ դը Գոլը: Այդ այցի առթիվ Մոսկվայում ստորագրված դեկլարացիային համապատասխան ստեղծվեց գիտատեխնիկական համագործակցության մշտական գործող խառը հանձնաժողով: Վերջինիս հանձնարարվեց պլանավորել արդյունաբերության, առևտրի ու գիտության բնագավառներում երկկողմանի կապերի զարգացումը և հետևել նշված պլանների իրագործմանը:

Անցած հինգ տարվա ընթացքում ձեռք են բերվել մեծ արդյունքներ: Մերձմոսկովյան Սերպուխով քաղաքում, երկու երկրների գիտնականների ու մասնագետների համատեղ ջանքերով, ստեղծված է միջուկային մասնիկների աշխարհում ամենախոշոր արագացուցիչը՝ հագեցած ֆրանսիական պղպջակավոր խցիկով: Նույնպես համատեղ մշակվեց գունավոր հեռուստատեսության ՍԵԿԱՄ սիստեմը, որն այժմ ընդունված է ոչ միայն Սովետական Միության ու Ֆրանսիայի, այլև բազմաթիվ այլ երկրների կողմից: Մեր լուսնագնացի վրա տեղակայվել ու գործում է ֆրանսիական լազերային արտացոլիչը, որի օգնությամբ երկու երկրների գիտնականներ կատարում են կարևոր փորձեր: Ֆրանսիական պետական ավտոմոբիլաշինական «Ռենո» խոշորագույն ֆիրման մասնակցում է «Մոսկվիչներ» արտադրող գործարանի ընդլայնմանն ու վերասարքավորմանը:

ՍՍՀՄ-ը և Ֆրանսիան սոցիալական տարբեր կարգ ունեցող երկրներ են: Բայց դա նրանց չի խանգարել մերձավոր դիրքեր գրավել միջազգային անհրաժեշտ հարցերում: Ֆրանսիան, ինչպես և ՍՍՀՄ-ը, դատապարտում է ԱՄՆ-ի ագրեսիան Հնդկաչինում և իսրայելական ագրեսիան՝ Մերձավոր Արևելքում: Նա, ինչպես և մեր երկիրը, հանդես է եկել բոլոր ռազմական բլոկների լիկվիդացման օգտին և նույնիսկ դուրս է եկել հյուսիսատլանտյան պակտի ռազմական կազմակերպությունից: Սովետա-ֆրանսիական հարաբերությունները դարձել են տարբեր հասարակական կարգ ունեցող երկրների խաղաղ գոյակցության ու փոխադարձ շահավետ համագործակցության վառ օրինակ:

Սովետա-ֆրանսիական հարաբերությունների հետագա բարելավման և առհասարակ միջազգային ամբողջ կյանքի նորմալացման գործում առաջնակարգ նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության անդամ Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի վերջերս Ֆրանսիա կատարած այցը, նրա բանակցությունները պրեզիդենտ Ժ. Պոմպիդուի հետ: Այդ այցի շնորհիվ հաստատվեց և խորացավ ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի ընդհանուր մոտեցումը միջազգային կյանքի բազմաթիվ հրատապ պրոբլեմների և ամենից առաջ՝ եվրոպական գործերի նկատմամբ: ՍՍՀՄ-ի ու Ֆրանսիայի համագործակցությունն ամենատարբեր բնագավառներում զարգացման նոր հեռանկարներ ստացավ: Այցի ամբողջ մթնոլորտը, ընդունված համապատասխան փաստաթղթերը, ամբողջ աշխարհում առաջացած լայն արձագանքները վկայում են, որ այցի արդյունքները բարեբար և տևական հետևանքներ կունենան միջազգային լարվածության թուլացման և Եվրոպայի անվտանգության ամրապնդման, համաշխարհային խաղաղության ամրապնդման համար:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը լիովին հավանություն տվեցին Ֆրանսիա կատարած այցի ժամանակ ընկեր Բրեժնևի գործունեությանը, այց, որը միջազգային խոշոր նշանակություն ունեցող գործողություն է:

Արդեն ավելի քան երկու ամիս է անցել ընկեր Բրեժնևի Ֆրանսիա կատարած ուղևորությունից հետո: Սակայն այցի, նրա ժամանակ կայացած բանակցությունների արդյունքները շարունակում են մնալ միջազգային հասարակայնության ուշադրության կենտրոնում: Ինչպես սոցիալիստական երկրների, այնպես էլ ամբողջ աշխարհի մամուլը, հեռուստատեսությունը և ռադիոն բարձր են գնահատում այդ իրադարձությունը:

«Լ. Ի. Բրեժնևի ուղևորությունը միջազգային լարվածության մեղմացման գործի հաջողությունն է»՝ այսպիսի խորագիր է տվել իր հոդվածներից մեկին Փարիզի «Յումանիտեն»: Թերթը գրում է, որ ստորագրված փաստաթուղթը սահմանում է բոլոր բնագավառներում սովետա-ֆրանսիական համագործակցության նոր, զգալի զարգացման հիմունքները: «Եթե ավելացնենք,— շարունակում է թերթը,— որ Սովետական Միությունն ու Ֆրանսիան առաջարկում են վերջ տալ աշխարհի բաժանմանը հակադիր դաշինքների, ապա չափազանցություն չի ասել, որ այցի հիմնական արդյունքները կանխավետում են այն համաձայնագիրը, որը կարող էր ձեռք բերվել



եվրոպական պետությունների՝ անվտանգության ու համագործակցության հարցերին նվիրված խորհրդակցությունում»:

Ամերիկյան «Վաշինգտոն սանդի սթար» լրագիրը գրել է Լ. Ի. Բրեժնևի Ֆրանսիա կատարած այցի շնորհիվ «Եվրոպայի մայր ցամաքում նոր դարաշրջանի հնարավոր սկզբի» մասին: Խաղաղության, համագործակցության և անվտանգության ձգտումը, որով ներթափանցված են սովետա-ֆրանսիական փաստաթղթերը, նշել է թերթը, ըստ երևույթին, հետզհետե ավելի կիշխի եվրոպական երկրների փոխհարաբերություններում: Լոնդոնի «Թայմս» թերթը գրում է. «Փարիզում ստորագրված սովետա-ֆրանսիական փաստաթղթերը բարձր մակարդակի վրա են դնում Ֆրանսիայի և Սովետական Միության քաղաքական համագործակցությունը»: Շվեդիայի հայտնի «Սվենսկա դագբլադետ» թերթը ընդգծում է, որ «համաեվրոպական խորհրդակցության շուտափույթ հրավիրման հարցում Ֆրանսիայի և Սովետական Միության միասնությունը մի ամբողջ շարք միջազգային պրոբլեմներում արդյունավետ համագործակցելու երկուստեք համաձայնությունը վկայում է երկու երկրների փոխհարաբերությունների կայունության մասին»:

Եվրոպայի մայր ցամաքում իրավիճակի նորմալացման ճանապարհին կարևոր քայլ հանդիսացավ Արևմտյան Բեռլինի մասին համաձայնությունը, որն իրականացվեց չորս տերությունների՝ Սովետական Միության, Ֆրանսիայի, ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունների ջանքերով: Արևմտյան Բեռլինի հարցը երկար տարիների ընթացքում հանդիսացել է միջազգային լարվածության վտանգավոր աղբյուրներից մեկը: Այդ համաձայնությունը լուրջ ներդրում է Եվրոպայում խաղաղության ապահովման գործում: Մոսկվան, Փարիզը, Վաշինգտոնը և Լոնդոնը հաշվի են առնում Եվրոպայում ստեղծված քաղաքական իրադրությունները: Եվ դա, որ շատ անհրաժեշտ է, լիովին համապատասխանում է ԳԴՀ-ի անկախության, սուվերեն իրավունքների ու շահերի հարգման պահանջներին: Եվրոպայի և ամբողջ աշխարհի անվտանգությունը պայմանավորող բազմաթիվ պրոբլեմների լուծման համար բարենպաստ հեռանկարներ է բաց անում քաղաքական կլիմայի բարելավումը Սովետական Միության և ԳՖՀ-ի փոխհարաբերություններում:

Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները հաստատակամորեն պայքարում են Եվրոպայի անվտանգության ու համագործակցության հարցերին նվիրված համաեվրոպական խորհրդակցության հրավիրման համար: Մեր այդ դիրքավորումը ըմբռնում և պաշտպանություն է գտնում ոչ միայն մայր ցամաքի, այլ երկրագնդի շատ երկրներում: Ողջամտորեն դատող բոլոր մարդիկ գտնում են. ներկայումս պայմաններ են ստեղծված, որ պետությունների համաեվրոպական խորհրդակցությունը հրավիրվի արդեն 1972 թվականին:

Բոլոր հիմքերը կան հուսալու, որ այսուհետև ավելի կբարելավվեն նաև սովետա-արևմտագերմանական հարաբերությունները: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի և ԳՖՀ-ի ֆեդերալ-կանցլեր Վ. Բրանդտի միջև վերջերս Ղրիմում տեղի ունեցած զրույցի ժամանակ եզրակացություն արվեց այն մասին, որ լայն հնարավորություններ կան ամենաբազմազան բնագավառներում փոխադարձ շահավետ համագործակցության կազմակերպման ու մշտական աճման համար: Դա կհամապատասխաներ ՍՍՀՄ-ի ու ԳՖՀ-ի միջև 1970 թվականի օգոստոսի 12-ին կնքված պայմանագրի ոգուն:

Դրական լայն արձագանք գտավ նաև ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինի Կանադա կատարած ուղևորությունը, որը տեղի ունեցավ 1971 թվականի հոկտեմբերին: Այցի ժամանակ կայացած սովետա-կանադական բանակցությունները և ստորագրված փաստաթղթերը հույս են ներշնչում, որ Մոսկվան և Օտտավան զգալիորեն կբարելավեն բարի-դրացիական հարաբերությունները ինչպես առևտրատնտեսական, այնպես էլ մշակութային և քաղաքական ասպարեզներում:

Ակտիվորեն է զարգանում Սովետական Միության բեղմնավոր համագործակցությունը Հյուսիսային Եվրոպայի երկրների, մասնավորապես Դանիայի ու Նորվեգիայի հետ: Համագործակցության հետաքրքիր ձև է գտնվել Սովետական Միության և Ֆինլանդիայի ներկայացուցիչների միջև տեղի ունեցած բանակցությունների ընթացքում:

Ընդլայնելով տնտեսական ինտեգրացիան եղբայրական սոցիալիստական երկրների հետ, Սովետական Միությունը միաժամանակ պատրաստակամություն ու ձգտում է հայտնում համագործակցել նաև մյուս երկրների հետ՝ անկախ նրանց հասարակական կարգից: Նա գտնում է, որ այդպիսի համագործակցությունը միայն օգուտ կարող է բերել, քանի որ չի ուղղված ինչ-որ մեկի դեմ և նպաստում է կայուն խաղաղության համար նախադրյալների ստեղծմանը: Դա հենց այն է, ինչը կոչվում է հեռավոր նշանառության քաղաքականություն:

Նոյեմբերի 22—23-ին տեղի ունեցած ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը լսեց և քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը կուսակցության XXIV համագումարից հետո Կենտրոնական կոմիտեի միջազգային գործունեության մասին: Պլենումը միահամուռ հավանություն տվեց և լիովին պաշտ-

պանեց Կենտկոմի քաղբյուրոյի կատարած աշխատանքին՝ համագումարի առաջ քաշած արտաքին քաղաքական ծրագրի կենսագործման ուղղությամբ: Պլենումի հավանությանն արժանացավ Կենտկոմի քաղբյուրոյի կոնստրուկտիվ դիրքավորումն ու նրա գործնական քայլերը, որոնց նպատակն է նպաստել Հնդկաչինում և Մերձավոր Արևելքում իմպերիալիստական ագրեսիայի վտանգավոր օջախների վերացմանը, Հինդուստանում կոնֆլիկտի խաղաղ կարգավորմանը, ամրապնդել Ասիայի՝ երկրագնդի այդ խոշորագույն շրջանի խաղաղությունն ու անվտանգությունը:

Պլենումը նշեց, որ քաղբյուրոն հետևողականորեն վարում է ՍՄԿԿ XXIV համագումարի գիծը՝ Չինական Ժողովրդական Հանրապետության հետ ունեցած հարաբերություններում և լիովին համաձայնեց քաղբյուրոյի դիրքավորմանը դրանց հետ առնչվող գործնական հարցերը լուծելիս: ՍՍՀՄ-ը իրականացնում է ՉԺՀ-ի հետ միջպետական հարաբերությունները բարելավելու կուրս: Ընդ որում մենք այսուհետև ևս կմերկացնենք մաոյականների հակասովետական քաղաքականությունը, նրանց հակալենինյան, նացիոնալիստական գաղափարախոսությունը, պաշտպան հակահարված կհասցնենք Սովետական Միության ազգային շահերի, սոցիալիստական համագործակցության և համաշխարհային կոմունիստական շարժման միասնության ու համախմբվածության դեմ Պեկինի ոտնձգություններին:

1971 թվականի նոյեմբերի 30-ից մինչև դեկտեմբերի 1-ը Լեհաստանի մայրաքաղաքում տեղի ունեցավ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությունը, որը քննարկեց անվտանգության ու համագործակցության հարցերին նվիրված համաեվրոպական խորհրդակցության նախապատրաստման հարցը:

Մեծ արձագանք գտան նաև ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինի Դանիա և Նորվեգիա կատարած այցերը, որոնք տեղի ունեցան դեկտեմբերի սկզբներին: Սովետա-դանիական և սովետա-նորվեգական բանակցությունները և համատեղ կոմյունիկեները, անշուշտ, դրական դեր կկատարեն Հյուսիսային Եվրոպայում խաղաղության և անվտանգության ամրապնդման համար:

Սովետական Միությունը գործադրում է բոլոր ջանքերը, որպեսզի սոցիալիստական մյուս երկրների հետ միասին ապահովի սոցիալիզմի և կոմունիզմի շինարարության բարենպաստ, խաղաղ պայմաններ: Միաժամանակ նա մերկացնում և վիժեցնում է իմպերիալիստական ուժերի ագրեսիվ գործողությունները: Մեր ժամանակի ոգին պահանջում է վերջ տալ ռազմական կոնֆլիկտներին: Այդ է ՍՄԿԿ XXIV համագումարի կողմից ընդունված խաղաղության ծրագրի էությունը:

1971 թ. դեկտեմբերի 19-ին ՍՍՀՄ արտգործմինիստրությունը հայտարարեց, որ Հնդկաստանի և Պակիստանի միջև «ծագած կոնֆլիկտի պայմաններում ՍՍՀՄ-ն իրենից կախված ամեն ինչ անում էր, որպեսզի անհապաղ դադարեցվեր արյունահեղությունը և վերահաստատվեր խաղաղությունը՝ հաշվի առնելով ժողովուրդների օրինական իրավունքները»: «Այսպիսով, այժմ անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծվում Հինդուստանի թերակղզում զինված կոնֆլիկտն իսպառ վերացնելու և կոնֆլիկտի հետ առնչված պրոբլեմների արդյունավետ քաղաքական կարգավորման համար»:

Ս. Կ. ՊԱՊՅԱՆ



Адрес редакции,— Ереван-33, Барекамутян 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 03270 Պատվեր 2045 Թղթի չափսը $70 \times 108^1/_{16}$: Տիրաժ 13750 Գինը 25 կոպ.:

Ծավ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 22/XII 1971 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ընտիր երկեր: *Երեք հատորով: Հատոր 3, Մ.,* «Политиздат», *1971, 856 էջ:*

*Այս հատորում զետեղված են Վ. Ի. Լենինի՝ 1918 թ. հոկտեմբերից մինչև 1923 թ. մարտը գրած հոդվածները և այլ երկեր:*

ՏՐՈՒՇ Մ. Ի. և ՋՈՒՍՈՒԲԵԿՈՎ Ս. Ջ.— Խաղաղության համար մղվող պայքարի գաղափարները Լենինի ժառանգության մեջ: *Ալմա-Աթա,* «Казахстан» *հրատ., 1971, 320 էջ:*

ՀԵԳԵԼ Գ. Վ. Ֆ.— Տրամաբանության գիտությունը: *Երեք հատորով, հատոր 2, Մ.,* «Мысль» *հրատ., 1971, 248 էջ:*

ՄԻԿՈՅԱՆ Ա. Ի.— Պայքարի ճանապարհով: *Առաջին գիրք, Մ.,* «Политиздат», *1971, 592 էջ:*

*Կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործչի հիշողությունների այս գիրքն ընդգրկում է 1895—1920 թթ.:*

Համաշխարհային փիլիսոփայության անթոլոգիա: *Չորս հատորով: Հատոր 3, XVIII դարի վերջի և XIX դարի առաջին կեսի բուրժուական փիլիսոփայությունը: Մ.,* «Мысль» *հրատ., 1971, 760 էջ:*

Միջազգային բանվորական շարժումը. *1970, Մ.,* «Политиздат», *1971, 496 էջ:*

*Առաջին անգամ հրատարակվող նման տեղեկատուն պատրաստել է ՍՍՀՄ ԳԱ միջազգային բանվորական շարժման ինստիտուտը, օգտագործելով ՍՍՀՄ կենտրոնական վիճակագրական վարչության, ՄԱԿ-ի և նրա հաստատությունների, արհմիութենական և հասարակական այլ կազմակերպությունների հրապարակումները, առանձին պետությունների վիճակագրական տվյալները, պարբերական մամուլի նյութերը:*

ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆ Ջ. Գ., ԳԱԲՈՒՋՅԱՆ Վ. Մ., ՂԱՐԻԲՅԱՆ Գ. Ա., ԱՂՈՒՋՈՒՄՑՅԱՆ Վ. Մ. և ՋՈՒՐԱԲՅԱՆ Ս. Շ.— Քաղաքատնտեսության ձեռնարկ *(մենաշնորհային կապիտալիզմ): Ուսումնական ձեռնարկ ԲՈՒՀ-երի համար:* «Լույս» *հրատ., 1971, 564 էջ:*

ՍՈՒՁԿՈՎ Մ. Ե.— Քրեստոմատիա նորագույն պատմության: *Մասն առաջին 1917—1945: Ձեռնարկ ուսուցիչների համար:*

Հասարակական շարժման և պատմագրության պատմության խնդիրները: *Մ.,* «Наука» *հրատ., 1971, 472 էջ:*

*Հոդվածների այս ժողովածուն նվիրված է ակադեմիկոս Մ. Վ. Նեչկինայի 70-ամյակին. այստեղ քննարկվում են Ռուսաստանի հասարակական մտքի ու հասարակական շարժման պատմության հարցերը:*

ԵԼԻՍԵԵՎ Պ. Տ.— Գեղարվեստական գրականությունն օգնում է ՍՄԿԿ պատմությունն ուսումնասիրողներին: *Մ.,* «Моск. рабочий» *հրատ., 1971, 144 էջ:*

ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների օրենսդրական հիմունքները: *Մ.,* «Юридич. литература» *հրատ., 1971, 374 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված են՝ ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների հողային, ջրային, առողջապահության, աշխատանքի և այլ օրենսդրությունների հիմունքները:*

ՊՈՒԼԱՏՈՎ Հ. Պ.— Կոմունիզմը, պետությունը, կուլտուրան, անհատականությունը: *Կոմունիզմի կառուցումը և համաժողովրդական սոցիալիստական պետության կուլտուր-դաստիարակչական ֆունկցիան: Տաշքենդ,* «Узбекстан» *հրատ., 1971, 242 էջ:*

ՎՈՐՈՇԻԼՈՎ Կ. Ե.— Պատմվածքներ կյանքի մասին *(Հուշեր): Մ.,* «Политиздат», *1971, 368 էջ: Գիրք առաջին:*

Դիվանագիտական բառարան: *Երեք հատորով: Հատոր 1,* А—И, *Մ.,* «Политиздат», *1971, 612 էջ:*

ԳԻՆԸ 25 Կ.:



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳՈՒՐԱԼԸ ՆՈՐ ՇԻՆԱՆՅՈՒԹ Է

*Չեխոսլովակիայի գիտությունների ակադեմիայի տեսական և կիրառական մեխանիկայի ինստիտուտն ստեղծել է գուրալ նոր շինանյութը, որը կազմված է մանրացված պլաստիկ ռետինի շաղախից (օրինակ՝ մանրացված հին ավտոդողերից) և կարծր, ջերմակայուն պլաստմասսայից։*

*Գուրալը կարելի է օգտագործել իբրև ճանապարհների, մայթերի, կառամատույցների, սպորտհրապարակների, արտադրամասերի հատակի ծածկույթ։ Վերջինս ճկուն է, երկարակյաց։ Այդ շինանյութը կարելի է օգտագործել նաև որպես մեկուսիչ և վիբրացիայից պաշտպանող նյութ։*

*Գուրալը համարյա գրանիտի չափ ամուր է և նրա պես ուշ է մաշվում։*

## ԴՐԱՄԱՐԿՂԻ ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԱՊԱՐԱՏ

*«Սինկո» և «Շարպ» ճապոնական ֆիրմաների մասնագետներն ստեղծել են դրամարկղային ապարատ, ուր չկան մեխանիկական հաշվիչ սարքեր։ Դրանց լիովին փոխարինում են ինտեգրալ սխեմաները, որոնց շնորհիվ հնարավոր դարձավ, գործող դրամարկղային մեխանիկական ապարատների համեմատությամբ, կրկնապատկել հաշվումների արագությունը և 10-ով պակասեցնել ստեղների թիվը։*

*Ապարատը կատարում է բազմապատկում (նույն արժողության անդորրագրերի գրանցման համար). այն ո՛չ միայն գումարում է վաճառված տարբեր ապրանքների արժեքը, այլև տպագրում դրանց քանակը (խանութի բաժինների գործունեության վերահսկման համար)։*

## ՀԶՈՐ ԷՔՍԿԱՎԱՏՈՐ

*Ուրալմաշ գործարանի աշխատակիցները պատրաստել են* ЭГК—5 *մակնիշի նոր, հզոր էքսկավատոր, որի շերեփն ունի* 5 մ$^3$ *տարողություն։ Հերթափոխային բանող սարքավորումը հնարավորություն է ընձեռում այդ ունիվերսալ մեքենան օգտագործելու ինչպես լեռնային բացօթյա աշխատանքներում, նույնպես և խոշոր շինարարական օբյեկտներում։ Ագրեգատի արտադրողականությունը մեկ ժամում հասնում է մի քանի հարյուր խորանարդ մետր հողի կամ քարաշերտի։ Մեքենավարի հարմարավետ խցիկը մեկուսացված է ձայնից և ջերմությունից, դրա շնորհիվ էքսկավատորը կարելի է օգտագործել ծայր հյուսիսում և տրոպիկական վայրերում։*

*Մեքենայի մոնտաժումը հանքում զգալիորեն քիչ ժամանակ է խլում ուրալյան հայտնի էքսկավատորի համեմատությամբ, որի շերեփի տարողությունը 4,5 խորանարդ մետր է։ Մեկ մեքենայի տարեկան տնտեսական արդյունավետությունը 13 հազար ռուբլի է։*

*Թողարկված է նոր, հզոր էքսկավատորի առաջին պարտիան։*

## ՆՈՐ ՀԱՄԱՁՈՒԼՎԱԾՔ

*Մետաղյա նոր համաձուլվածքը, որը հալվում է Ցարենգեյի 500° ջերմության դեպքում և օգտագործվում է պլաստմասսաների համար շտամպներ պատրաստելու նպատակով, ստեղծվել է «Ինտերնեշնլ բիզնես մաշինս» ամերիկյան ֆիրմայում։ Համաձուլվածքի 78 տոկոսը ցինկ է, 22-ը՝ ալյումին և ունի բարձր ջերմահաղորդականություն։ Նրա շտամպների վրա պլաստմասսայե դետալները պատրաստվում են երեք անգամ ավելի արագ, քան պողպատյա շտամպներն օգտագործելիս։*

## ԾԽԵԼՈՒ ՀԵՏԵՎԱՆՔԸ

*Հարյուր հազար նորածինների ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ծխող մայրերից ծնվածների քաշը 200 գրամով պակաս է չծխող մայրերից ծնված երեխաներից։ Ուսումնասիրություններից պարզվել է նաև, որ ծխող կանանցից ծնվում են զգալիորեն շատ թերաճ երեխաներ։*

## ՄԱՏՐԻՑԱՆԵՐ՝ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ

*«Նեյլոպրինտ» պլաստմասսայի թիթեղը, որից պատրաստվում են լրագրերի տպագրական մատրիցաներ, արտադրում է «ԲԱՍՖ» արևմտագերմանական ֆիրման։ Մեկ միլիմետր հաստությամբ պլաստմասսան ֆոտոզգայուն նեյլոնի շերտից է՝ մետաղյա աստառով։ Պատճենվող տեքստը լուսանկարում է «նեյլոպրինտի» վրա՝ ուլտրամանուշակագույն ճառագայթներով, այնուհետև մակերեսից սրբելով հեռացվում են չլուսավորված տեղամասերը, և մնում է ուռուցիկ դրոշմանկարը։ Պողպատյա աստառը հնարավորություն է ընձեռում մատրիցան ծալելու և հարմարեցնելու ռոտացիոն մեքենային։*